# ՀԱՅԿԱԿԱՆ
# ԲԱՌԱՔՆՆՈՒԹԻՒՆ

---

ՈՒՂՂՈՒԹԻՒՆՔ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՑ

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ՆԱԽՆԵԱՑ

ԵՒ ՆՇԱՆԱԿՈՒԹԵԱՆ ԲԱՌԻՑ ԻՆՉ

---

ԳՐԵԱՑ

ՆՈՐԱՅՐ Ն. ԲԻՒԶԱՆԴԱՑԻ




ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Պ. ՔԻՐԻՇՃԵԱՆ
ՊԵՐԱ. ՇԻՇԼԻ ՓՈՂՈՑ ԹԻՒ 5
— 1880 —

# ԱԶԴ

Առաջիկայ մատենիկս նուիրեմ անոնց որ ախորժելով պարապին յընթերցումն մատենագրութեանց մերային նախնեաց, —յուսումն եւ ի մշակութիւն հայ լեզուի։

Ոչ սակաւ մթութիւնք եւ աղաւաղութիւնք գտանուին ի գիրս եւ ի թարգմանութիւնս մեր հին մատենագրաց, սկսեալ յԵզնկայ, ի Խորենացւոյ, յԱստուածաշունչ գրոց, յԱգաթանգեղէ եւ յՈսկեբերանէ մինչեւ ի մատենագիրս խոնարհագոյն դարուց. եւ այս՝ երկու պատճառաւ. կամ յանհմտութենէ գաղափարողաց ձեռագիրս, եւ կամ յոչ ուղիղ իմանալոյ նոցին իսկ նախնեաց զօտարալեզու բնագիրս։ Մատենկանս Առաջին մասին մէջ ուղղեմ շատ անհարազատ ընթերցուածներ՝ ծնունդք թերավարժ գրչաց՝ որ անչքեն, աղօտացնեն կամ բոլորովին խանգարեն զլեզու եւ զմիտս մատենագրին, թողլով այլում ժամանակի զուղղութիւնս վրիպակաց թարգմանութեան, որ խոր հմտութեան եւ երկարագոյն քննութեանց կարօտանայ։

Իսկ յԵրկրորդում մասին ի քննութիւն առնլով հինգ հայերէն լեզուի բառարաններ որ ծանօթ են ազգիս, քան բառից նշանակութեան մասին ներկայացնեմ իմ դիտողութիւնքս, մերթ ամենեւին նոր մեկնութիւն եւ նշանակութիւն տալով, եւ մերթ ջնջելով ոչ միայն նշանակութիւնը այլ եւ նոյն իսկ բառին գոյութիւնը։

Հարկ չէ ըսել որ այս ամենայն գրեալ է ըստ իմ սեպհական առանձին տեսութեանցս եւ գիւտերուս։ Շնորհակալ եմ այն բանասիրաց որ ընդունին եւ հաստատեն ինչ որ ես առաջարկեմ երկբայանօք եւ իբրեւ լոկ կարծիս եւ թուիս. շնորհակալ եմ մանաւանդ անոնց որ ուղղեն իմ վրիպակներս։ Այլում իմիք չեմ հետամուտ ի բազում ամաց հետէ, բայց եթէ սրբելոյ զՀայ դպրութիւնս եւ զՀայ բարբառ յամենայն օտար, կեղակարծ եւ անուղիղ իմացուածոց. եւ որք ինձ նման՝ վառեալ սովին ցանկութեամբ՝ աջակցին իմ աշխատութեանս կամ դիւրացնեն զայն որով եւ է օրինակաւ, անոնց անուանքն անջնջելի պիտի դրոշմին ի միտս իմ եւ ի սիրտ։

Պերա, 23 մարտ 1880

# ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՌԱՔՆՆՈՒԹԻՒՆ

---

## ՄԱՍՆ Ա.

### ՈՒՂՂՈՒԹԻՒՆՔ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՑ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ՆԱԽՆԵԱՑ

---

## ԳԼՈՒԽ Ա.

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆՔ

---

### ՅՕԴՈՒԱԾ Ա.

#### ՎՐԻՊԱԿՔ Ի ՆՄԱՆՈՒԹԵՆԷ ՆՇԱՆԱԳՐԱՑ

*Հին գրչագրաց մէջ քանի մը նշանագրաց նմանութիւնն պատճառ եղած է որ անհմուտ գաղափարողք բառ բառի հետ շփոթեն կամ բոլորովին օտար բառեր ընթեռնուն, որով երբեմն խօսքին իմաստն կ'այլափոխի կամ չհասկցուեր ու չափ կը մթանայ։*

*Նմանաձեւ նշանագիրք գլխաւորապէս ասոնք են. Ա և Ու.—Գ և Դ.—Մ և Ս.—Մ և Տ.—Ց և Ց։ Սկսիմ մի ըստ միոջէ իւրաքանչիւրէն օրինակներ յառաջ բերել։*

#### Ա *եւ* ՈՒ

*Ամիէդ, ուղղելի Ումիէդ. բայց տորին հայերէնի որ կը նշանակէ յուսադրել, սիրտ տալ, Ումէտ կամ Ումէդ (պարսկերէն էմէդ) բառէն, որ է յոյս։ «Որ հոգս ունի՝ փարատէ զհոգսն և անհոգացո, և որ վախեալ է և երկիւղ ունի՝*

ՈՒԺԻԿԷ և աներկիւղացս»․ Մխ․Հերացի, Ջերմանց մխիթարութիւն․ Ը․ էջ 15։ Ըստ իս ուղղելի է ՈՒԺԻԿԷ․ իսկ տպագիրն կ'ուղղէ ՈՒԺՀԷ, որու կը հետեւին Նոր Հայկազեանն* և Առձեռն Բառարանն, որ կը գրեն ԱԺՀԵՍ, և կը մեկնեն․ «անահ և անվեհեր կացուցանել․ ամրքելով սրտապնդել․ զօրացնել որ չվախնայ»։ Նոր Հայկազեանին մէջ կայ և կրաւորական ԱԺՀԻՍ, որ կը մեկնուի՝ համարձակիլ, յանդգնիլ, անաաստել․ «Մի 'ի սկզբան միանգամայն զամենայն ծանրալուր (ծանրանուր?) և դժուարակիր բեռինս վարուց ի վերայ ՈՒԺՀԵԼՈՑՆ հոսեսցեն»․ Յ․ Մանդ․ Ճառք, Ե․ էջ 47․ բայց տպագիրն ունի ՈՄԱՅԵԼՈՑՆ։

Ահաւասիկ ՈՒԺԻԿ և ՈՒԺԻՔ բառերուն երեք վկայութիւնք․

«Օրերս ի մահ մօտեր է,
կենացս ՈՒԺԻԿ հատեր է,
Մարմինս յուժոյ թափեր է»․

Քօթնայ Խլաթեցի, Տաղ․

այսինքն՝ կենաց կամ ապրելու ՅՈՅՍ կտրուած է։ —«Եւ թէ երակն (հիւանդին) քան զմկան ագի բարակ լինի՝ ուժն ի հատանել է․ ապա թէ քան զմկան ագի հաստ է՝ ՈԺԻԿ կա հիւանդին»․ Բժշկարան ԺԳ դարու։ —

«Ինձ ՈՒԺԻՔ կայր և կուման վանց քո գալուստ,
Ակն ունէր սիրտս ու մընար քո սուրբ տեսուստ ,
Նա բերին թուխտ մի գըրած յանկարծ մահու,
Թէ մու կարդա, եղբայր, ու տես որ չեմ գալու»․

Տաղ ախրական․

ՈՒԺԻԿ բառն թերեւս սոյն նշանակութիւնք ունի նաեւ Գր․ Մագիստրոսի ԾԴ նամակին հետագայ հատուածին մէջ․

* Գործոյս ընթացից մէջ Նոր Հայկազեան կ'անուանեմ այն բառագիրքը որ տպագրեալ է ի Ս․ Ղազար յամին 1836-1837 երկասիրութեամբ Աւետիքեան-Սիւրմէլեան-Աւգերեան վարդապետաց, և կը կոչուի «Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի», առ ի զանազանել յայն բառագրոց զոր Մխիթար Աբբահայր և իւր աշակերտք հրատարակած են յերկուս հատորս ի Վենետիկ ի տպարանէ Անտոնի Բոռթոլի յամին 1749 (Ա հատոր) և 1769 (Բ հատոր) և որ կը կոչուի «Բառգիրք Հայկազեան լեզուի»։

«Մի՛ տրեք այլ (չարժիր) այսր անդր՝ կամ սպառնալեօք կամ ողոքօք»։ Իսկ խոտորջրեցւոց արդի բարբառոյն մէջ Ողոք կը նշանակէ մխիթարանք, և Ողոք տալ՝ մխիթարել։

Առոյտն, Առուոյտն. ծաղիկ մը լեռնական։ Առոյտն կը գրուի յԱգաթանգեղի Պատմութեան, ձե. էջ 481. «Շուշանն և առոյտն և յասմիկն, անթառամն և սմբակն». իսկ ուրիշ ամէն տեղ կը գրուի Առուոյտն, որ թուի ուղղագոյն. «Եղեւ գժտութիւն երբեմն ի մէջ լեռնականաց և դաշտականացն ծաղկանց, զի հօրոտն և մօրոտն և առուոյտն և այլք այսպիսիք ոչ տանէին պարսաւանացն դաշտականաց՝ արքայածաղկին, կակաչին և այլոց նմանեաց». Մխիթար Գոշ, Առակք. Լ. – «Ջվարդ, զմերուշան, զառուոյտն». Յով. Երզընկացի, մեկն. քերականի. – «Վարդենի, մանուշակ, զաֆրան, մնթուր, առուոյտն». Գիրք վաստակոց. մխ. էջ 142. – «Ալ շապհո. առուոյտն». Բժշկարան ԺԳ. դարու. – «Առուոյտն ծաղիկն հալողի ներկին կ'ասեն. թուրքն տօփրաք պէլի կ'ասէ». Քիմիաբանութիւն, ձեռագիր որ կը պահուի յԱզգային Մատենադարանին Բարիզի։

Գոմարէթ, թուի ուղղելի Գումարէթ. կը նշանակէ զօրագլուխ կամ զօրապետ, ինչպէս կը ցուցնէ կարգ բանին։ «Ապա յետ այսորիկ գայր Դանուն ոմն գումարէթ սպարապետ կրացն գնդին մանուէլեան զօրացն». Փ. Բիւզանդացի, Ե. լէ. էջ 243։ Հ. Արսէն. Բագրատունի կ'ուզէ կարդալ գումարէթ, անշուշտ ստուգաբանելով ի գում արմատոյն, յորմէ կը ծագին Գումար և Գումարեմ բառք, և այնպէս կը գործածէ շատ տեղ Հայկ Դիւցազներգութեան մէջ.

«Գումարէթ զարհուրելի թաւամազ լանջքն փառնաւալ».
Բ. տող 215.

«Գրնդապետք և գումարէթք բոլոր սպայիւք հարեալ խօշիւն». Է. տող 667.

տես անդ և Թ. տող 353. ԺԳ. տող 109. ԺԷ. տող 1205։

Առձեռն Բառարանի երկրորդ տիպն կը գրէ . «Գոմաղէփ . գնդապետ , զօրապետ . բայց աւելի ուղիղ կ'երեւայ Գոմաղեփ» ։

Խողք , ուղղելի Խոռղք . կը նշանակէ աղտ , աղտեղութիւն ։ «Առանց պաճուճանաց պարտի լինել կուսանն , ընդ աղբ և ընդ խողք գալ» . Ոսկեբ . Ա. Տիմ . Ը . Ցորդ . էջ 69 . ի ծանօթութեան կ'ըսուի թէ ուրիշ օրինակի մէջ խողք գրուած է ։ Այս խողք բառս կը գտնուի նաեւ ի բառն Աղբախողք , որ երկու տեղ կը յիշուի ի գիրս Փիլոնի Եբրայեցւոյ . «Քանզի յայս կուտեալ է խիխաւար և աղբախողք և աղբոց բազմութիւն , յորս սորել սուզանել սիրէ» . Ցաղագս յառաջախնամութեան , Բ . էջ 115 . — «Աւել ածելով զաղբախողսն ի բաց տանին , խնամ տանելով մաքրութեան» . վասն քահանայից Ահարոնեանց ։

Այլ է և Խողք , այսինքն Հաղբ , որոգայթի լար կամ չուան ։

Խառնըմբրոյ , Խառնըմբռոյ ։ «Մինչեւ յանկարծակի և յական թօթափել ամենայն ինչ լինիցի , և ի մի վայր ապա խառնըմբրոյ ժողովիցին» . Ոսկեբ . Եփես . Գ . էջ 694 ։ Թէպէտ և խառնըմբրոյ կարդալը խօսքին իմաստին չի վնասեր , բայց Ոսկեբերանի Մատթէի և Յոհաննու մեկնութեանց մէջ խառնըմբռոյ գրուած ըլլալով , թուի թէ հոս ալ նոյնպէս կարդալու է . «Ընդէ՞ր թողէք զքաղաքս և զտունս , և դառն եռուք խառնըմբռոյ դիմեալ ամենեքեան յանապատն» . Մատթ . Բ . ժբ . էջ 557 . — «Համագունդ խառնըմբռոյ առհասարակ ամենեքեան ի վերայ դիմեն» . Յոհ . Ա . ա . էջ 579 ։

Խառն ի խառն , Խառն ի խուռն ։ «Քանզի ոչ եթէ խառն ի խառն ընթանան , այլ կարգաւ օրինաւորք են՝ ըստ դրական թուոց մասանց մարմնոյն» . Եղիշէ , յԵրեւումն Տեառն . էջ 318 ։ Ուրիշ տեղ չեմ գտած խառն ի խառն , այլ միշտ խառն ի խուռն ։

Մուլ մանուկ, ուղղելի Մուլմանակ, որ է արաբերէն մուսլիմ, մուսլիման, գղ. Musulman ։ «Բայց երիցս երանելի ամն երի-տասարդ հասակաւ, ինքն տաճիկ, և ազգաւ պարսիկ. ելեալ զհետ սիրոյն Քրիստոսի հաւատոցն, եկն յարեցաւ ի Պատրիկն Անձեւացի, և խնդրէր առնուլ զսէրունական կնիքն . . . իսկ վահրամ տեսանէր զնա մերձ առ սպան-դանոցն, այն ինչ սուր ի վերայ բերեալ դահճին, ձայնէ բարձր և ասէ. Դու, մուլ մանուկ, ընդէ՞ր մեռանիս զուր և տարապարտուց. և նորա ճիչ բարձեալ ասէ. Քրիստոնեայ եմ. և նա ևւս պնդէր և ասէր. Մի՛ մեռանիր, մուլ մանուկ ես»․ Թ. Արծրունի, Գ. Դ. էջ 157. կարդա մուլմանակ ։ Նոյն գրոց մէջ այս բառս գրուած է նաեւ մուլ մանակ և մուլմանակ. «Յայնժամ իսկ և իսկ արագապէս թլփատեալք եղեն մուլ մանակ»․ Գ. Զ. էջ 177. – «Թողեալ զհաւատսն որ ի Քրիս-տոս, մուլմանակ դեն ստացեալ»․ Դ. Է. էջ 270 ։

Շուփ, Շափ ։ «Յորոյ վերայ ոչ քան զշափ ժամանակս ա-ւազակք ի վերայ հասեալ էին՝ օտարք ի հեռաստանէ»․ վարք Հարանց, Հ. Ա. էջ 229 ։ Ուղղելի կարծեմ շուփ ։

Ոյդ, Թուի ուղղելի Այդ ։ Այս բառս չեմ գիտեր թէ նախնեաց որ մատենագրութեան մէջ կը գտնուի, բայց կը յիշուի Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ. «Ոյդ. Պլուտոն՝ դժոխքի չաստուածը» ։ Ես կարծեմ թէ կարդալու է Այդ, համեմատ յունականին Աիդէս, զոր Հ. Արսէն Բագրատունի փոխած է ի Հայդէս Հոմերի Իլիականին թարգմանութեան մէջ.

«Զի երեք ի Զրուանայ եմք հարազատք, Ռէայ ծը-
նունդք,
Արամազդ և ինքնըս ես, երրորդ Հայդէս սանդարա-
պետ»․ ԺԵ. տող 188 ։

Պղուտոն, ուղղելի Պլուտոն (դիք դժոխոց) ։ «Իդնատիոս

տաէ. Որո՞ց աստուածոց. կարծեմ եթէ եգիպտացւոցն հրամայես ինձ զոհել, եզին և քաղի և կատուի . . . կամ պարսկականն հրոյ, կամ ծովային ջրոյ, և կամ սանդարապետին Պղուտոնի, կամ Հերմեայ գողախիժի». Վկ. սուրբ իգն. Անտիոքայ հայրապետի, Յոփերք Հայկականք, (Ս. Ղազար, 1861) ԻԲ. էջ 151. կարդա Պղուտոնի.

Ցուամ, թուի ուղղելի Ցամ. կը նշանակէ փտութիւն, նեխութիւն. «Քանզի և բազում իսկ հասակակիցք կնոջ ուրուք սիրեցելոյ՝ թերեւս գեղեցկագոյն իսկ քան զնա յառաջագոյն մեռեալք, յետ միոյ և երկուց աւուրց հոտին, և ցուամ և թարախ և որդունս ծնանին». Ոսկեր. Մատթ. Բ. Թ. Ցորդ. էջ 529. Թերեւս ուղիղ ընթերցուածն ըլլայ ցամ, վասն զի նախնեաց քերթողական բառերուն կարգը կը յիշուի. «Ցամ, հոտ», և «Ցամոտել, հոտել».

Գ եւ Դ

Գաճարը, թուի ուղղելի Դատարայ. կը նշանակէ հոյն կամ զողալ պտղոյն ծառը, որ կ'ըսուի նաեւ Հոյնի. գղ. Cornouiller. տճ. քըզըլճըք աղաճը. Սրբոյն Բարսղի կեսարացւոյ վեցօրէին Ե գրոց 101 էջը կը կարդանք. «Եւ կաղնեաց և քաճարից պտուղ՝ ճաշակս գղտորահամս ունին». բայց ընտիր ձեռագրի մը մէջ, զոր գտայ ի մատենադարանի ԹԹ. Անտոնեան Հարց յՕրթաքէօյ, և որու վրայ երկարօրէն պիտի խօսիմ՝ վեցօրէին քննութեան մէջ, գրուած է դատարայից. նոյնպէս ի լուծմունս ինչ վեցօրէին գտած եմ. «Դատարայից պտուղ. լծ. դարխենի ծառն է». Թէպէտ և յոյն բառն Բարսղի բնագրին չի նշանակեր դարխենի, այլ հոյնի, ինչպէս վերն ըսի. Մխիթար Աբբահօր աշակերտաց Հայկազեան Բառագրոց երկրորդ հատորոյն մէջ կը գրուի Գաճարը. նոյնպէս Նոր Հայկազեանն և Առձեռն Բառարանն կը գրեն Գաճարը. նոյնպէս և Հ. Սրապիոն Էմինեան իւր Գաղ-

Գերերէն-Հայերէն-Ֆռանկերէն բառագրոց մէջ Cornouiller բառին դիմաց: Հ. Արսէն Բագրատունի ալ Գոհուր կը գրէ ի Թարգմանութեան Մշակականացն Վիրգիլեայ.

«Զի տանձի փոխաբուսեալ խընձոր անբուն բերէ պտուղ,
Եւ գոհուրք ապառաժուտ ի կարմրորակ շիկնի շըլոր».

Բ. տող 33:

Ո՛չ է և Գաւարս (պարսկերէն կէաւէրս), տեսակ մը դեղին կորեակ մեծ հատերով. «Գարին և կորեակն, գաւարսն և ոսպն». Ագաթ. ձե. էջ 483:

Գետաղիմ կամ Գրետաղիմ, Դրդաղիմ. կ'երեւի թէ իմաստն ըլլայ՝ խեղճ ողորմելի հագնիլ կամ թափառիլ: «Ի գրգլիս պատեալ, երիթացեալ, գետաղեալ, բրդգզեալ, քանզի միշտ ի բանտի մեռանէր (Պօղոս)». Ոսկեբ. Բ Տիմ. Դ. Յորդ. էջ 210.- «Պահք են և գրետաղեմն և գձձեղն առանց լուանալոյ և օծանելոյ». Յ. Մանդ. Ճառք, Գ. էջ 36. -«Գէմքն դեղնեալ (աղքատին) և թոշնեալք, և ամենայն մարմինքն գետաղեալք և երիթացեալք թափառի». Նոյնն, Ե. էջ 52: Իսկ յՈսկեբերանի Եսայեայ մեկնութեանն կը գրուի Դրդաղիմ. «Անգեօղք և անքաղաք ընդ ամենայն աշխարհ շըջին (Հրէայքն), ընդ ամենայն տեղերս դրդաղեալ թափառականք». որմէ կ'առնու և Դաւիթ քահանայ իւր Եսայեայ մեկնութեան մէջ. «Զմնաւ ածիցէ զքաղաքին կործանումն և զցրումն խաչահանուացն, թէ որպէս դրդաղեալ թափառին տակաւին եւս ընդ տեղերս»: Առձեռն բառարանի երկրորդ տպագրութեան մէջ Գետաղեմ և Գրդաղեմ կը յուղարկուին ի Գրետաղեմ. կարօտ է քննութեան:

Գեղնման, Գեղանման, Գեղնմանութիւն: Նոր Հայկազեանն որ միայն գեղնման կը յիշէ ի ստորեւ Գեղ բառին, այսպէս կը մեկնէ զայն. «Գեղնման. Նման գեղով իւիք. նմանութիւն ուրուական նկարեալ. օրինակ. պատկեր. ստուեր»:

«Քանզի ՃԵՂՋՆՄԱՆ են օրէնքն. այս զի ամենայն աւետիքն երկրաւորք ՃԵՂՋՆՄԱՆ են հանդերձելոյն բարեաց, և ոչ եթէ կերպարանք կատարեալք էին նոքա, զի թերի էին». Եփ. րեմ, մեկն. Եբր. (Ս. Ղազար, 1836) ժ. էջ 218. այն է բանն Առաքելոյ. «Քանզի ՍՏՈՒԵՐ հանդերձելոց բարեացն ունէին օրէնքն, և ոչ զնոյն կերպարանս իրացն». Եբր. ժ. 1։ Նոյն բառն նոյնպիսի իմաստով կը գրուի ԴԵՂՋՆՄԱՆ և ՃԵՂՋՆՄԱՆՈՒԹԵԱՆ Ոսկեբերանի մեկնութեանց թարգմանութեան մէջ. «իբրև մանկաւոյ այնպէս տայր նոցա հրաման. ՏԵՂՋՆՄԱՆՍ ստուերագիրս գրել, որպէս և մեք զալփաբետսն զառաջինն». կողոս. Դ. Ցորդ. էջ 569. –«Որպէս ի ՏԵՂՋՆՄԱՆՈՒԹԵԱՆ նկարէ գրէ ոք թագաւոր նշմարանօք, մինչչեւ զերանգսն խառնեալ իցէ՝ ասեմք թէ զթագաւորի պատկեր գրեալ է». փիլիպ. ժ. էջ 461։ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ ԴԵՂՋՆՄԱՆ բառն կը յուղարկուի ի ՃԵՂՋՆՄԱՆ. բայց թերեւս ՃԵՂՋՆՄԱՆԸ յուղարկել ի ԴԵՂՋՆՄԱՆ ուղիղ ես ըլլայ։

ԴԵՐՄԱԿ (ԱԼԵՒՐ)։ Ներելի՞ է կարծել թէ այս բառիս հարազատ ընթերցուածն ըլլայ ԴԵՐՄԱԿ, վասն զի արաբերէն լեզուի մէջ ԴԷՐՄԷՔ, որ ըստ օրինաց տառադարձութեան հայ լեզուի կը փոխուի ի ՏԵՐՄԱԿ, կը նշանակէ ազնիւ ՝ալիւր յար և նման մերս ՃԵՐՄԱԿՈՅ. «Եւ այս ռոճիկք էին Սողոմոնի ի միում աւուր. երեսուն քոռ նաշհոյ, և քառասուն քոռ ԱԼԵՐ ՃԵՐՄԱԿՈՅ, և տասն եզն ընտիր, և քսան կով արօտականն». Գ. Թագ. դ. 22։ ԴԵՐՄԱԿ կը գտնուի նաեւ ուրիշ գրոց մէջ. «Ձգորեանն ետ քեզ Աստուած միայն, և դու ազգս ազգս ինչ հնարիս հնարել անտի, զնաշիհն և զխորակն և զՃԵՐՄԱԿՆ և զծաղսն և զկտ:ապսն». Ոսկեր. փիլիպ. ժ. Ցորդ. էջ 469. – «Եւ ի նմին եհաս և մաքսաւորն (Պետրոս)՝ բարձեալ գրաստու հաց ՃԵՐՄԱԿ ճաշոյ իւրոյ համար . . . իբրև եդ.ին զՃԵՐՄԱԿ հացն ի կշիռն, հաւասարեաց կշիռն, և ասեն պայծառազգեստքն ցմաքսաւորն. Երթ յաւել ի ՃԵՐՄԱԿԴ յայդ». Վարք Հարանց, Հ. Ա. էջ 271, 272. – «ԴԵՐՄԱԿ

հաց փշրեալ խառնէ և ուտէ»։ Մխ. Հերացի, Ջերմանց մխիթ. եր. էջ 48։

Գօօյն կամ Գօօն կամ Գրօն տալ, Դօօյն կամ Դօօն տալ։ Այս երկու ոճերս որ սաէպ կը գործածուին ի գիրս Նախնեաց, մի և նոյն նշանակութիւնը ունին, այսինքն բաղմաւթեամբ դիմել կամ յարձակիլ, խուռն ընթանալ։ Կ'երեւի թէ հարազատ ընթերցուածն է Դօօյն կամ Դօօն տալ, վասն զի սանսկրիտ լեզուի մէջ, ինչպէս հաղորդեց ինձ Ց. Հ. Ստեփանոս վ. Եպզրճեան, հետամուտ սանսկրիտ լեզուի, դրու կամ դրօ կը նշանակէ ընթանալ, ճեպով ընթանալ, փախչիլ. իսկ դրուտը կամ դրօտը կը նշանակէ ընթացք։

Գրոքնոթքէլօն, Դրոքնոթքէլօն. կը նշանակէ ըստ Նոր Հայկազեանին «նիշ գունոյ գծագրեալ և դրոշմեալ հաստատութեամբ ի վերայ իրիք ի ընէ կամ արուեստիւ որպէս երակ ինչ», և կամ աշխարհաբար բացատրութեամբ՝ խարելով կամ այրելով եղած նշան մը։

«Սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն (Սմբատ)՝ որպէս դրոքնոթքէլօն ի վերայ ոսկւոյ և ի մէջ մարգարտոյ ծագէր»։ Մ. Խորեն. Բ. ծբ. քանի մի օրինակք կը գրեն Գրոքնոթքէլօն։ Մագիստրոսի Ղ թղթոյն մէջ գրուած է. «Որպէս Գրոքնոթքէլօն չարամանաբար մակ ոսկւոյ մածեալ ՚մատիտմամբն»։ Իսկ Պլատոնի Տիմէի տրամախօսութեան մէջ (Ս. Ղազար, 1877) կը գրուի Դրոքնոթքէլօն. «Եւ բազում անգամ վերստին հարցանելովս, իբրու նշանակք ինչ դրոքնոթքէլօնով (ձեռագիրն ունի դրոքնութքէլօնով) անջինջ գրոյ յարատեւականք եղեն առ իս բանքն»։ էջ 89։ Հ. Սրապիոն Էմինեան գաղղիերէն Émail և Smalt բառերուն դիմաց կը գրէ Գրոքնոթքէլօն. տե. Բնէ։ Քննելի է ծագումն և ուղղագրութիւն բառիս։

Գանդուքցուցանել (զզանգակ)։ Թուի ուղղելի Գանգաքցուցանել, այսինքն (զանգակ) հնչեցնել, զարնել։ «Ոչ զանգակ

նիւթոյ պղնձոյ դանդալեցուցեալ, և ոչ քար ընդ վերդս սալի առանց քաղցրութեան առ նոյն զարկուցեալ»։ Գր. Նարեկացի, ղբ։ Թուի թէ կարդալու է գանգալեցուցեալ, ինչպէս կը գրուի Ոսկեբերանի Ա. Տիմոթեայ մեկնութեան ԺԴ ճառին յորդորակին մէջ, երես 124. «Ցորժամ հաւ զառաջինն խօսեցի, ոչ որպէս աստ՝ ի տունս խորդան ծառայք, դուրք փակեալ, և ամենեքին նման մեռելոց կան ծանրարթունք, և պահպանն միայն զզանգակն գանգալեցուցանէ»։

Դրօնդար, ուղղելի Դրօնգար։ Սեբէոսի Պատմութեան 182 երեսը կը կարդանք. «Եւ զորդի նորա զանդրանիկ, որում անունն էր Սմբատ, կարգեաց արքայ ի պատիւ հօր իւրոյ, տուեալ նմա զիշխանութիւնն բնիկ տանուտէրութեանն ասպետութեան, և արար զնա դրօնդար զօրաց իւրոց»։ կարդա դրօնգար, այն է լատին բառն Drungarius, անուն իշխանութեան ի Ստորին կայսերութեան։ Տես Dronge և Drongaire Պէշըրէլի գաղղիերէն լեզուի ընդարձակ բառագրոց մէջ*։

Ղանգանոն, ուղղելի Ղանդանոն։ «Եւ լինի ի նմա (ի Կիպրոս) ղանգանոն ի ցօղոյ անկեալ զխոտով, կուռի ի թաւիչ վարուցս և ի մօրուս քօշից»։ Մ. Խորեն. Աշխարհագր. էջ 603։ Այսպէս կը գրեն երկու օրինակք, ինչպէս նաև Նոր Հայկազեան և Առձեռն Բառգիրք, փոխանակ գրելու ղանդանոն կամ լանդանոն, որ է յոյն բառն լա՛դանոն, գղ. Ladanum, տեսակ մը խէժ-ռետին (gomme-résine) որ լտ. cistus ըսուած տնկոց տերևներէն և ճիւղերէն կը ծորի։ Այս ղանգանոն վրիպակ գրութիւնն աւելի թիւրելով եղած է Աղանգանոյն ի Հայկազեան Բառգիրս Մխիթար Աբբահօր աշակերտաց. իսկ

* Սեբէոսի Պատմութեան նոր տպագրութեան մէջ, զոր հրատարակած է Պ. Քերովբէ Պատկանեան, (Պետերբուրգ, 1879) ուղղեալ է նոյնպէս դրօնգար. «Դրօնգար, և ոչ դրօնդար, որպէս էր ի տպագրին և ի ձեռագիր օրինակի մերում, է յն. դրունգա՛րիոս, Drungarius զինուորական պատիւն առ Բիւզանդացիս, այսինքն պետ վաշտի, Du Cange». էջ 202։

Ս․ Ղազարու տպագրին դրած ւտռան բառն ինձի Նորագոյն կը թուի և ընթերցուած յետին դարուց գրչագրաց։

Փլէգոնեաւ, թուի ուղղելի Փլէգոնեաւ։ «Գրէ և Փլէգոնեաւ. Ամենայն թագաւորաց հուժկու եղեալ պարթեւն Արտաշէս, և ոչ միայն գլխագացիս վանեալ և զկրիտաս կապեալ, այլ յելլեսպոնտոս և ի Թրակէ զտարերացն փոխեաց զբնութիւն»․ Մ․ Խորեն․ Բ․ ժգ։ Կայ Փլէգոնեաւ, պատմիչ յոյն Բ դարու, ծնեալ ի Տրալլա քաղաք Լիւդիոյ․ թերեւս առ այս պատմիչ կ'ակնարկէ Խորենացին։

## Մ եւ Ս

Ս․ Ղազարու վանաց Ագաթանգեղի Պատմութեան առաջին տպագրութեան մէջ գրուած էր Մոփողըցւոց ժողովք, էջ 624, որ յերկրորդ տպագրութեան ուղղուեցաւ Սոփողըցւոց ժողովք, ինչպէս արդէն նոյն գրոց իտալերէն թարգմանութեան մէջ (Ս․ Ղազար, 1843) գրուած էր Satala յէջ 177։ Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութեան մէջ երկու տեղ կը յիշուի Սոփող․ իսկ ի Սեբէոսի Պատմութեանն էջ 125 ։ Այս քաղաքս կը գտնուէր ի Փոքր Հայս։ — Մ․ Խորենացւոյ Պատմութեան Ա գրոց ԺԹ գլխուն մէջ Վաշտակար անունն թուի թէ աղաւաղ ընթերցուած մ'է եւ պէտք է գրել զատ զատ Վաշամ, Կար, երկու անուն, ինչպէս կը գրեն Յոհան կաթողիկոս Պատմիչ, «Ամբակ, Առնակ, Նորայր, Վաշամ, Կար», (տպ․ Էմին, Մոսկուա, 1853, էջ 14) եւ Գրիգոր Մագիստրոս։ Տես ի ծանօթութեան մեծադիր Պատմութեան Խորենացւոյ։ Նոյն Պատմութեան Բ գրոց Է գլխուն մէջ Ոեփծուղ բառը պէտք է ուղղել Մեփծուղ, ինչպէս կ'ակնարկուի յիտալերէն թարգմանութեանն (Ս․ Ղազար, 1843) էջ 111․ «Այլ առաջինն հաստատ ի զարմից թագաւորացն առաջնոց, որպէս եւ այժմ ի Վրաց աշխարհին, որ Ոեփծուղն կոչի»․ կարդա Մեփծուղ, որ վրացերէն Մեփէ (թագաւոր) եւ Ծուղ (զարմ) բառերէն բարդեալ կը նշանակէ՝ արքունի զարմ։ — Մեծին Աղեքսանդրի Պատմութեան մէջ «Ղեւկիպպոս Լէոնացի» ուղղեալ է Լէմնացի, էջ 15։

Յիշեմ ուրիշ քանի մ'օրինակներ։

Անհաւ պատմութեան, ուղղելի Անհամ պատմութեան։ «Արդ կապեալ պապանձեցին որ զանհաւ պատմութիւնն ստեղծանեն յանհանճար մտացն իւրեանց, և կամին իւրեանց անգէտ գիտութեամբն հասու լինել անհասից»․ Բրս․ վեց․ Բ․ էջ 28։ Ուղղելի է անհամ պատմութեան, ինչպէս կը գրուի արդէն Անտոնեան Հարց ընտիր օրինակին մէջ, և ինչպէս ուրիշ ամէն տեղ կը գրուի ի վեցօրէին․ «Ցաւալին անհամ պատմութեանցն որ յանկ են ի ստութիւնն նոցա»․ Գ․ էջ 47․ — «Բայց մեզ չէ ինչ դանդաղելի երկրորդել զանհամ պատմութեանս նոցա»․ Զ․ էջ 117․ — «Անհամ և ստայօդ պատմութեամբք»․ անդ․ էջ 121․ — «Հարկ իմն համարիմ երկրորդել զանհամ պատմութեանս նոցա»․ անդ․ էջ 122․ — «Անհամ և սնոտի պատմութեան»․ անդ․ էջ 134։

Բաւ, Բամ։ Հինգերորդ դարու նախնեաց մատենագրութեանց մէջ ուրեք ուրեք կը գտնուի բաւ իբր նոյնանիշ բամ և բայ շաղկապից։ Ոմանք կարծեցին թէ բամ, բաւ, բայ պակասաւոր բայ մը կայ․ (տես Հ․ Թադէոս Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք ի մատենագրութեանց նախնեաց, Վիէննա, 1866, էջ 427, ծան․ 1․) բայց մ և ւ նշանագրաց ամենամեծ նմանութիւնը գիտնալով, կրնանք թերեւս կարծել՝ աւելի ստուգութեամբ որ բաւ գրուածն կարդալու է բամ։ Ահաւասիկ երկու օրինակք բաւ գրութեան․ «Դու ոչ արարեր նոցա ողորմութիւն և ոչ իւիք, ծերոց ծանրացուցեր զանուրս յոյժ, և ասացեր բաւ՝ մինչեւ յաւիտեան կացից իշխան»․ Ոսկեբ․ մեկն․ Ես․ — «Բայց զի դու չես յաշխարհէս յայսմանէ, զի քեզէն իսկ ասացեր բաւ՝ յերկրէն յաշխարհէն ծնեալ եմք, լեալք թագաւորք ի բնութենէ»․ Փ․ Բիւզանդացի, Ե․ լէ․ էջ 241։

Մեղանք, ուղղելի Սեղանք։ «Ի ժամանակի յորում յիշեսցեն որդիք նոցա զմեղանս իւրեանց, և զանտառս իւրեանց ի վերայ ծառոց վարսաւորաց և ի վերայ բլրոց բարձանց»․ Երե-

միա, ժէ. 2. կարդա զՍեյլան, ինչպէս կը գրուի ուրիշ Թարգմանութեանց մէջ։

Մեֆինքս, ուղղելի Սեֆինքս։ «Առաջ այս մեր Սփինքս, յորում կապեալ ծրարեցաւ հրաշալորի խառնուած, գործելով ի մէջ ժողովրդոց խռովութիւն, զոր Իդիպոս տայան բազում հոգս հոգացեալ»։ Պատմ. Աղեք. էջ 68. Բազմավէպին 1877 տարուան Ա Պրակին մէջ, յորում հրատարակեալ է իսմենիայ երգն բաղդատութեամբ ընդ յունին, կը գրուի նոյնպէս Սփինքս, էջ 18. կարդա Սեֆինքս, գղ. Sphinx.

Շերամ, Շերամս։ Այս երկու ընթերցուածներէն ո՞ր է ուղիղն. Ստեփանոս Ռօշքայ կամենիցացի, որ ժէ դարու վերջը կամ ի սկիզբն ԺԸ ին յօրինած է Հայերէն-Լատիներէն ընդարձակ բառարան մը, Շերամ կը գրէ. ահաւասիկ երկու վկայութիւնք իւր բառարանէն. «Շերամ. որդն որ զապրշում գործէ. լտ. Bombyx. Շերամ առնէ զապրշում. Աշխ. լա».–«Ապրէշ. որդն փոքրիկ յորմէ ի վերջ ամիսս լինի շերամն, որ է ապրիշմագործ ճճին. լտ. Necydalus. Յապրիշէ լինի շերամն. Քաղ.»։ Մխիթար Սեբաստացի աշակերտաց Հայկազեան բառագրոց երկրորդ հատորոյն մէջ գրուած է յէջ 224. «Շերամս. է որդն ապրշմի, զոր յատկապէս կոչեմք շերամ. զսա Լատինք կոչեն Bombyx, և Յոյնք սէրէ, յորմէ ծագի շերամն»։ Մեր ձեռքը գտնուած նախնեաց մատենագրութիւններէն միայն սրբոյն Բարսղի Վեցօրէին մէջ կը յիշուի այս բառս Շերամս գրութեամբ. «Քանզի յայնմ զեռնոյ որ կոչի շերամս, այսինքն կերպասաբեր, գանձէ զվաստակս նոցա ի հանդերձս կակուղս և ի սպասս ազնըւականս»։ Ը. էջ 177. շերամ գրուած է նաեւ Անտոնեան Հարց ընտիր ձեռագրին մէջ։ Նոր Հայկազեանն կ՚ըսէ ի բառն Շերամս թէ ըստ յետնոց կը կոչուի Շերամ, և Անծին և Մեսրոպու բառերուն մէջ ալ շերամ կը գրէ։ Բարսղի Վեցօրէին հին ձեռագրաց մէջ քննելու է այս բառիս գրութիւնը։

## Մ եւ Տ

Բարսղի Վեցօրէին մէջ, Դ. էջ 74, ձեռագրին Ատղանմեան գրածն ուղղեալ է Ատղանտեան։ — Նոյնպէս Ոսկեբերանի Ճառից հատորոյն մէջ, էջ 584, Սաւրոս կամ Տաւրոս վրիպակ գրութիւնն ուղղեալ է Մաւրոս։ — Մ. Խորենացւոյ Պատմութեան Գ գրոց ԼԿ գլխոյն մէջ կը կարդանք. «Եւ էր տեսանել իբրեւ զպարիսպ ինչ, յորոց յոլովք ի ջղեայ եւ ի կաշեայ պահպանակաց զգեստուն զկարծրութեան վիմաց բերէին երեւոյթս. եւ ի վերայ նոցա անխալամ գէսք նշանք արձակեալք իբր զսաղարթ ինչ հովանաւոր ծառոց». անխալամ գէսք կը նշանակէ առանց խալամի կամ առանց գլխու մազերը որ զարդ են զօրաց (գլխաւորապէս հեծելոց) սաղաւարտներուն։ Ստեփաննոս Կամենիցացի մ եւ տ նշանագրաց նմանութենէն խաբուելով, իւր Հայերէն–Լատիներէն բառարանին մէջ Խորենացւոյն անխալամ բառը կը կարդայ անխալատ, եւ կը մեկնէ. «Անխալատ. անսխալ, որ ոչ ունի զխալատ*. անխափան. լտ. Inerrans, infallibilis». որչափ կ'օտարանայ կը փոխուի խօսքին իմաստն մէկ գրոյ սխալ ընթերցմամբ։ — Սեբէոսի Պատմութեան Կ. Պօլսոյ տպագրին 8 երեսը գրուած է. «Սա ծնաւ զԲագամ եւ զԲագարամ, եւ Բագարամ ծնաւ զԲիւրամ, եւ Բիւրամ ծնաւ զԱսպատ». Պ. Քերովբէ Պատկանեան իւր նոր տպագրութեան մէջ, երես 6, կ'ուղղէ Բագարատ, Բիւրատ, ամենայն իրաւամբք, ինչպէս կարծեմ։

Ցիշեմ ուրիշ քանի մ'օրինակներ ալ։

Ամենէն, ուղղելի Ատենէն. Ամենակալ, ուղղելի Ատենակալ։ «Ցոյս հատուցման ի խոստացեալ աւետիսն Քրիստոսի, և ի դատաստանացն ամենէն անշէջ հրոյն՝ յիշատակօք յաւիտենականն չարչարանօք սպառնալով անաչառական, դալըստեամբն որդւոյն Աստուծոյ Ցիսուսի Քրիստոսի». Փ. Բիւզանդացի, Դ. դ. էջ 74։ Ուղղելի է ատենէն, ինչպէս կ'ընէ Հ. Արսէն Այտընեան իւր «Քննական քերականութիւն արդի

* Արաբերէն ղալաթ բառն է, որ կը նշանակէ սխալ, վրիպակ։

հայերէն լեզուի». (Վիէննա, 1866) բազմահմուտ գրուածին մէջ, երես 64, ծան. 1. «Բուզանդայ այս հատուածը՝ ի դատաստանացն ամենքն անշէջ հրոյն եւյլն, սխալ օրինակութիւն կ՚ենթադրենք փոխանակ ամենքն, ձեռագրաց Ս և Փ գրերուն մեծ նմանութեանը պատճառաւ»։ Այսպիսի շփոթութիւն մը կայ նաև Վահրամ վարդապետի՝ ԺԳ դարու մատենագրի ի Ցարութիւնն Քրիստոսի ճառին մէջ, յորում ամենակալ բառն ամենակալ կարդացուած է։ Դատաւորաց գրոց Ե գլխոյն 10 թուահամարին մէջ կ՚ըսուի. «Հեծեալք յերիվարս ի միջօրէի, և սպիտակաց, երթեալք յատեանս ամենակալաց». լսենք Վահրամայ տուած մեկնութիւնը. «Ի հզօր և ամենակալ թագաւորաց և բռնաւորացն յատեանս . . . յիրաւի ամենակալք ճանաչին առաքելականն խումբ . . . միայն մեր իբր ամենակալ իմն են, յամենայնի զօր իմանալն կարեն՝ զնոսին ըմբռնեն . . . յատեանս ամենակալացն, այս է Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, երեք անձանց և միոյ աստուածութեանն, վասն որոյ և ամենակալաց ասաց և ոչ ամենակալք». տես ի Նոր Հայկազեանն ի բառն Ամենակալ։

Գէյզէրտէր, ուղղելի Գէյզէրտէն, այսինքն սեւերես։ «Մեկնի այսպէս առակս. զի գէյզէրտէր են ոգւով ազգ Պարսից, և եկեալ առ քահանայս՝ շպայծառութիւն կամին ուսանել ոգւով»։ Մխ. Գոշ, Առակք, ճլե։ Կարդա գէյզէրտէն, ինչպէս կ՚ըսուի նոյն առակին սկիզբը և վերջը. «Ճայեկ առ սագ աղերսէր, եթէ գէյզէրտէն գոլով ես՝ ի բնաւից պարսաւիմ, և դու այդքան սպիտակ և պայծառ լինելով, աղաչեմ զի ուսուսցես ինձ նման քեզ սպիտականալ . . . և նա յանձն ոչ առնոյր զազգի մոռանալ զձայն, և մնաց նոյնօրինակ գէյզէրտէն»։ Գէյզէրտէն բառը Մխ. Գոշ կը գործածէ նաեւ իւր «Վասն ճշմարիտ և հաճոյ սպասաւորելոյ մարմնոյ և արեան Տեառն» խրատական գրուածին մէջ. «Զօրութեան տաճար ոգւոյս լցի աւազակօք ախտից, մերձենալով յոգիս պղծութեան գէյզէրտէն տեսլեամբ»։

Այլ է և Գիշերապահ, դէտ կամ պահապան գիշերոյ. «Եւ քանզի առանց գիշերապահոյ էր քաղաքն, մտեալ ի ներքս՝ սուր ի վերայ առն եդեալ անողորմ կոտորեցին զա-մենեսին». Ար. Լաստիվ. Ժե. եՋ 61։

Զեղջուլ, ուղղելի Զերծուլ. Զեղջել դառնալ, ուղղելի Զերծել դառնալ։ «Եթէ հայրն յորդւոյն արարածս ոչ խնայեաց՝ այնու զի ի ձեռս չարին մատնեաց, որդին՝ զհայրն զիա՞րդ ոչ զընդայ-ցէ։ Առ տկարութեա՞ն ինչ թէ առ չարակամութեան։ Եթէ առ տկարութեան չզեղջէ, ապա ոչ այժմ թագաւորել է նմա, և ոչ ի վախճանի՝ որպէս ասենն՝ յաղթել կարէ». Եզնիկ, էՋ 125։ Ամենայն բառագիրք զեղջուլ կը կարդան և կը մեկնեն՝ խնայել, ի գութ շարժիլ, վտանգէ ազատել, և նոյն իսկ Հ. Արսէն Բագրատունի կը գործածէ Զեղջուլ իւր գրուա-ծոց մէջ, ինչպէս ի Թարգմանութեան Պոսիւէի դամբանա-կանին ի Հենրիկէ Աննա. «Եւ այնչափ չզընդայ ընդ նոսա (Աստուած), զի զեղջել պարտ բաշխի տալ զնոսա ի խրատ այլոց». էՋ 54. բնագիրն կ՚ըսէ. «Et il les épargne si peu qu'il ne craint pas de les sacrifier à l'instruction du reste des hommes»։ Ես կարծեմ թէ կարդալու է «Եթէ առ տկարու-թեան չզերծուցէ», և կ՚իմանամ՝ «թէ որ տկարութեան պատճառաւ չի կրնար հաստատուն, ամբողջ, անվտանգ պահել իւր արարածները». տես և յէՋ 7, ուր կ՚ըսէ նոյնպէս Եզնիկ. «Որ ոչ այնու միայն զարմանալի է, զի ածն ի չգոյէ ի գոյ զչգոյսն, և եցոյց յոչնչէ յինչ զչէսն, այլ զի և անարատ և անխախտ պահէ զլեալսն», ինչպէս որ կ՚ըսէ Ոսկեբերան ալ իւր Եսայեայ մեկնութեան մէջ գրեթէ մի և նոյն բառե-րով. «Նոյնպէս և Աստուծոյ մի՛ միայն ընդ այն զարմանայցես, զի զանչափ մեծութիւն մարմնոյ երկնից ի չգոյէ ի գոյ ած և եցոյց, այլ զի յետ երեւեցուցանելոյն հաստատուն և անարատ պահէ»։ Զեղջուլ նշանակուած է նաեւ ի լուսանցի մեկնու-թեան Մատթէի Ոսկեբերանի, ուր օրինակն կըդնէ զերծուլ. «Յորժամ զամենայն թողեալ և չուրջ դայցես տակաւսա

ժողովել, զփոխոցն զվաչխա չերեզէ, վաճառացն նուէրս յաճախել». Ա. Ժե. Յորդ. էջ 229։ Ընտիր չեմ համարիր նոյն գրոց ի ճառին Յորդորակին մէջ, երես 331, չեմուզ պահել գրութիւնը, քանի որ ի լուսանցին կը նշանակուի չեմեզ (կարգա չերեզ) և բարիզեան օրինակն ալ յայտնապէս կը գրէ չերեզէ. «Եւ եթէ ցանկանայցես եւս ընչից, անդր փոխեա, ուր մարթիցի չեմուզ (կարգա չերեզ) յամուր բերդին պահել, ուր չիցէ ինչ որ գամագիտ կարիցէ լինել»։ Նոյնպէս խոտելի կարծեմ Ոսկեբերանի Ա Տիմոթեայ մեկնութեան ԺԴ ճառին յորդորակին մէջ, երես 122, չեմեզ պահէն գրուածը, մինչդեռ ուրիշ օրինակ և Նոր Հայկազեանն կը դնեն չերեզ պահէն. «Ցոգիս սերմանես, ուստի ոչ ոք ինչ կարիցէ առնուլ, այլ պինդ ունին և չեմեզ (կարգա չերեզ) պահեն բազում հաւատարօք և մեծամեծ փութով»։ Տես նաեւ Ոսկեբերանի Եբրայեցւոց թղթին մեկնութեան Դ ճառին մէջ, երես 478, «պահել չերեզ և անարատ». Նոյնպէս ի գիրս Պիտոյից՝ երկու տեղ. «Մինչ այս ամեթ և չերեզ պահեսցէ կարգ». Դ. ա. էջ 387. «Միշտ ի յարձակմանէ զրկողացն մարտակից եղեալ իւրոցն մանկանց ամենայնիւ չերեզ պահէ». Ժ. բ. էջ 562։ Փիլոնի Լինելութեան գրոց մեկնութեան մէջ ալ (Ս. Ղազար, 1826) կ'ըսուի, Բ. Ծդ. էջ 134. «Քանզի անչերեզեալք են և անհաստատք և դողդոջուք մեր կամքս»։ Ոսկեբերանի մեկնութեանց Թարգմանիչն ուրիշ տեղ փոխանակ չերեզ պահելու կ'ըսէ յամրէ պահել չերեզութեամբ, յամուր չերեզով պահել, հաստատուն պահել, անարատ պահել։

Լեբեթ, ուղղելի Լեբետոն։ «Եւ իմ տեսեալ զի ի վաղուց հետէ վախճանեալ էր նա, հանեալ զԼեբետոնն զոր ունէր՝ պատեցի կիտովս զմարմին սրբոյն». Վարք Հարանց, Հ. Բ. էջ 464։ Նոր Հայկազեան և Առձեռն Բառագիրք ոչ ուղիղ ընթեռնուն Լեբեթ. իսկ ծագումն բառիս ոչ է յարաբականէն լըպաս կամ ի պարսկականէն լըպուշ, որպէս կը համարի Նոր Հայկազեանն, այլ թուի ի յունէն. Պեշըրէն իւր ընդարձակ

*գաղղիերէն բառարանին մէջ կը գրէ* Lebéton, Lébéton *կամ* Lébétonaire *և կը մեկնէ.* «espèce de tunique sans manches que portaient les solitaires de la Thébaïde», *այսինքն՝ պատմուճան առանց թեզանեաց զոր կը զգենուին միայնակեացք Թեբայիդայ ։*

Խրամ, *ուղղելի* Խրար *։ Մարութայի ի վկայսն Արեւելից ճառին մէջ գրուած է յերես* 95. «*Հալածումն քրիստոնէից բորբոքէր, նեղութիւնն զօրանայր, գաւազանն սաստկանայր,* Խրամ *յորդորէր, եկեղեցիք տապալէին*». *կարդա* Խրար*, ինչպէս քիչ մը վարը կ'ըսէ, էջ* 97. «*փախեաք ի* Խրարուէ *ծերոց և թաքեաք ի գաւազանէ իմաստնոց*». Գաւազան *և* Խրար *բառերը երկու տեղ ի միասին կը յիշէ ։*

*Այլ է և* Խրամ*, յորմէ կ'ելնեն բառքն խրամակարկատ, խրամահատ, խրամապահ, և այլն ։*

Կարակէ կերակրոց*, ուղղելի* Կամակէ կերակրոց*, այսինքն ախորժելի կամ համեղ կերակուրներ ։ «Արտամերժեալ ի բաց ընկեցեալ* շնորակ կերակրոց*, *մեկնէր հեռանայր եւս ի հասարակ կերակրոյ՝ ի հացէ և յըմպելոյ ջրոյ, սակաւապիտութեամբ լոկ բանջարով զհարկաւոր պէտսն վճարեալ». Ցոհ. կթ. էջ* 100. *Նոր Հայկազեանն եւս կը կարդայ* շնորակ կերակրոց *և կը մեկնէ* ունայնութեան. *բայց ես կը կարդամ* շնամակ կերակրոց*, և Ցոհան կաթողիկոսի խօսքը կ'իմանամ այսպէս. «ոչ միայն ախորժելի կամ համադամ կերակրոց չէր մօտենար, այլ և ոչ հասարակ հացի և ջրոյ» ։* Կամակ կերակուր *ածականօրէն գործածած է Ցոհ. Երզնկացի իւր Մատթէի մեկնութեան մէջ. «*Կերակուր *ախորժ և* կամակ *անձանց և տեառն իւրեանց ընծայեալ» ։*

Ցէմար կուսանէ*, ուղղելի* Տարակուսանէ *։ «Արդ զի՞նչ առնիցես եղկելիդ և թշուառականդ զդառնութիւնդ սաստիկ*

* *«*Շնորակ կերակրոց*» կը գրուի և Երուսաղեմի տպագրին մէջ* (1867), *էջ* 229.

յիմար կուսանացն յաւուր չարաչար քո վախճանիդ, յորժամ պահանջիչք ողւոյդ քո անողորմք եկեալ ահագին կերպարանօք ի վերայ քո հասանիցեն փութանակի տագնապաւ զոգիդ քո յափշտակել ընդ մարմնոյն». Ց. Մանդ. Ճառք, ԺԹ էջ 146։ Ի ծանօթութեան կ'ըսուի թէ ուրիշ օրինակաց մէջ գրուած է տարակուսանացն. այս է ըստ իս հարազատ ընթերցուածն, վասն զի յիմար կուսանք հոս բան չունին։ Անշուշտ օրինակի մը մէջ տարկուսանաց գրուած է, և ընդօրինակողին մէկն մարկուսանաց կարդալով ուզեր է ուղղել յիմար կուսանաց։

Ջամոալ, ուղղելի Ջապոալ։ «Իշխան օմն Վրվէռ անուն՝ սոցին Ջամոալ կանանցս եղբայր կամարար եղեալ». Ար. Լաստիվ. ԻԳ. էջ 102. կարդա Ջապոալ։

Ռետին, ուղղելի Ռեհին։ «Եւ առեալ ընդ իւր յընչից իւր որչափ կամեցաւ, և ծալեալ ծրարեալ՝ ռետին ետ ցաղջիկն ասելով. Լծակից իմ և քոյր, առ զսա աւանդ քեզ». Վարք Հարանց, Հ. Ա. էջ 143։ Ուղղակի կարդալու է ռեհին, իբրեւ ռեհոն կամ ռէհոն, որ կը նշանակէ գրաւական, գղ. Arrhes, Gage, իտ. Caparra. տճ. ... «Ռեհոն չտան, և զգինքն չվճարեն». Մխ. Գոշ, Դատաստանագիրք. — «Առնու առհաւատչեայ, այսինքն ռեհոն». անդ. — «Առնու ի գնողէն ռեհոն». անդ. — «Կորուսանէ միայն զոր ինչ ռեհոն ետ». անդ։

Այլ է և Ռետին, յն. ռետինէ, լտ. Resina, գղ. Résine, արբ. ...., որ է շոճիէն (գղ. pin), եղեւինէն (գղ. sapin), հերձիէն (գղ. lentisque), բեւեկնիէն (térébinthe) ծորած դիւրավառ և իւղոտ նիւթն։

Տոծալ, ուղղելի Մոծալ։ «Ի տոծկէ և ի մժխկաց կերակրին ի խնամոցն Աստուծոյ՝ մինչ ի դառնալ ծնողացն». Վարդան, մեկն. Սաղմոսաց։ կարդա ի մոծկէ կամ ի մոծակէ, ինչպէս կը գրուի ուրիշ տեղ. «Մուն. մանր տիզ կամ մոծակ, որ է

մժեղ ». Երեմիա Մեղրեցի. – «Պիծակ. մոծակ կամ մժեխ». Նոյնն. – «Մժղուկ ճանճ. ճեղք». Բժշկարան Ասարայ Սեբաստացւոյ. այն է գր. Orme ըսուած ծառն։

## Յ եւ Ց

Նոր Հայկազեանին մէջ յիշուած Ցոպրան, Ցոփինոսեմ եւ Ցոփինգինիոս բառերն ըստ ստուգագոյն քննութեանց ուղղեալ են Յոպրան, Յոփինոսեմ եւ Յոփինգինիոս Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ։

Յիշեմ քանի մ'ուրիշ օրինակներ։

Զօրայն ճեղչեցին, ուղղելի զԱրայն Գեղչեցին։ «Եւ ղաշիկ արաբեալ յայնկոյս քան զվանտուպ, ի տեղւոջն արձանաշար քարակարկառ գոգաձեւ միջոցի երկուց բլրակաց որ հայի յներիվարաց արկման (?) դաշտն ի վերայ Լեզւոյ գեղջն, ուր զօրայն ճեղչեցին առասպելաբանեն ապիանած? վերայն (վիրացն?) ապանելոցն (?) ի մանկանցն Շամիրամայ». Թ. Արծր. Գ. ժը. էջ 242. կարդա՝ ուր զԱրայն Գեղչեցին։ Թ. Արծրունի անշուշտ կ'ուզէ ըսել. «ուր կ'առասպելաբանեն թէ Շամիրամայ որդիներէն սպանեալ Արայն Գեղեցիկ բժշկուած է իւր վէրքերէն»։ Երանի թէ ընտրելագոյն ձեռագիր մը պարզէր ուրիշ քանի մի յայտնապէս աղաւաղեալ ընթերցուածներ, որ այս հետաքրքրական հատուածս կը մթացնեն։

Համայց և յայց, ուղղելի Համարեցայց։

«Քանզի պատեհ համայց և յայց նախ դիտմամբ
Զօդտակարան քո արարածոց
Ոչ յեղուլ ամենազգի շփոթմամբ».

պատառիկ Պիսիդեայ վեցօրէին հրատարակեալ բաղդատութեամբ ընդ յունին ի Բազմավէպ, 1875, էջ 124. ի ծանօթութեան կ'ըսուի. «խառնակ է բանդ»։ կարդա համարեցայց։

Ցուցակնիչ, Ցուցանակիչ։ Նոր Հայկազեանն մի և նոյն նշանակութիւնը կուտայ այս երկու բառերուս ալ, այսինքն տեւել, հասնիլ, դիմանալ. յայտնի է թէ երկուքէն միոյն ընթերցուածն խանգարեալ է։ «Ցասաւշ քան զՀրեղէն պայազատութիւնք ազգաց մի ըստ միոջէ ի տանուտէրութիւ համարոյ ձգեալ յառաջնեցան»։ Եւս. Քր. (Ս. Ղազար, 181[illegible]) Հ. Ա. էջ 108. — «Մակեդոնացւոց իշխանութիւնն մինչեւ ի Հռովմայեցւոց վախճան առնլոյ՝ ցուցանակեցոյ զայս ձեւ օրինակի»։ անդ. էջ 326։

Ցանկագոյն, Թուի ուղղելի Յանկագոյն։ «Թէ ընդէր, վասն զի ի Քաղդէացւոց և յԱսորեստանեաց մատենից ցանկագոյն են մեր իրք, ի յունականէն կամեցաք մեք ցուցանել»։ Մ. Խորեն. Ա. բ. Նոր Հայկազեանն ևս կը կարդայ ցանկագոյն, և ցանկ բառէն կը ստուգաբանէ առաւելագոյն, յաճախագոյն. բայց թերեւս ուղղագոյն ըլլայ կարդալ յանկագոյն ըստ այլոց ձեռագրաց, և յանկ բառէն ստուգաբանել՝ աւելի յարմար, աւելի պատշաճ, աւելի մերձաւոր, այսինքն թէ «Քաղդէացւոց և Ասորեստանեայց մատեանքն աւելի պատշաճ կամ աւելի մերձաւոր են մեր աշխարհին մէջ հանդիպած անցից, քան թէ յունականքն»։

Ցասանէջեն, Թուի ուղղելի Ցասանէջէն, այսինքն Ցօնէջէն։ «Եւ արդ առս զմոլորութիւն աղջկանն (դստերն Հերովդիայ), և զկատաղութիւն լկտւոյն. որում շնորհակալն պարտ էր լինել, զի վրէժս թշնամեաց նորա պահանջէր մարգարէն (Յոհ. Մկրտիչ), — քանզի ըստ օրինացն մեծ թշնամանք են որդւոց, եթէ մարք ի տայգերաց ցասանէջեն, — իսկ նա գործակից եւս լեալ, և ընդ նմին զմեղքեննեայս և զորոգայթս սատանայի կազմէր, և պարգեւս սատանայական հայցէր»։ Ոսկեբ. Մատթ. Բ. իգ. էջ 685։ Ինձի կ'երեւի թէ փոխանակ ի տայգերաց ցասանէջեն կարդալու պէտք է կարդալ ի տայգերաց յասանէջէն, Ցօնեմ կամ Ցօսեմ կամ Ցօսում բայէն որ կը

# ՅՕԴՈՒԱԾ Բ

## ՎՐԻՊԱԿՔ

## ԾԱՆՕԹ ԿԻՑ ԲԱՌԵՐՈՒ ԱՆԴԱՄՆԵՐԸ ՄԷԿՄԷԿՈՒ ՀԵՏ ՇՓՈԹԵԼԷՆ ԿԱՄ ՄԻՈՅՆ ԳԻՐԸ ՄԻՒՍԻՆ ՏԱԼԷՆ

Ձեռագրաց ընդօրինակողք երբ որ հայերէն լեզուի քաջ տեղեակ չեն ըլլար, նոր տեսակ սխալ մ'ալ կը գործեն յաճախ, որ է՝ երկու քովէ քով գտնուած բառերուն անդամները իրարու հետ շփոթել, կամ գիր մը որ նախընթաց բառին մասն է յաջորդին գլուխը կապել, յաջորդին ալ առաջին գիրը նախընթաց բառին վերջը կցել առանց ամենեւին յարմարութեան, որմէ յառաջ կուգան զգալի խանգարմունք մտաց բանին, կամ այնպիսի բառեր որ լեզուին մէջ գոյութիւն չունին։ Ոսկեբերանի Մատթէի մեկնութեան մէջ կայ այսպիսի վրիպակ մը, զոր ուղղած է Նոր Հայկազեանն ի բառն Նպաստ. «Ոչ ոք զոր սիրէ, նպաստ վաշխի տայցէ» գրուած է սոյն դրոց Գ հատորոյն 9 երեսը. ուղիղն պիտի ըլլայ «Ոչ ոք զոր սիրէն պարտբաշխի տայցէ»։ Պարտբաշխի տալ զոք կը նշանակէ դղ. Sacrifier կամ livrer quelqu'un։ Ահաւասիկ ուրիշ օրինակներ ալ։

Անփոփոխ անուն, ուղղելի Անփոփոխ նոմոսն։ «Ո՞ւր է ծննդեանն անփոփոխ անունն, և ո՞ղտանել կարէ զհաստատութիւն մարդկան ծննդեանն, անյայտ սերմանցն սերմանեցելոյ». Փիլոն, Յղ. Յառաջախնամութեան, Ա. էջ 40. լատիներէն թարգմանութիւնն Հ. Մկրտչի Աւգերեան կը դնէ. «Ubi est natalitiorum *nomen* immutabile?» կարդա անփոփոխ նոմոսնն, այսինքն անփոփոխ կանոն, օրէնք։

Ծիրանոտ և ոսկեհուռն, ուղղելի Ծիրանոտ եւս ոսկեհուռն։ «Իսկ գիշակեր հաւուցն որ յորսոյ կեան. և ծիրանոտ և

սարքեատար տուած»։ Բրս. վեց. Ը. էջ 161։ Նոր Հայկազեանն կը կարծէ թէ Սարքեատար գոյական բառ է և կը նշանակէ «ճապուռն, մագիլ սուր, սայրք եղնգանց»։ Նոյնպէս Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութիւնն կը դնէ. «Սարքեատար կամ Սարքետար. թռչնոց ըղունկին ճանկերը»։ Իսկ ես վեց տարի առաջ հաղորդած էի իմ կարծիքս բարեկամներէս ոմանց որ փոխանակ ծիրանատ և սարքեատար բառերուն պէտք է կարդալ ծիրանատ եւ սրքետար, և վերջօրէին խօսքը իմանալ այսպէս. «Իսկ գիշակեր թռչնոց որ որսով կ'ապրին, յափշտակիչ ճիրաններ ալ տրուեցան», սրքետարը համարելով ածական ծիրանատ բառին և ստուգաբանելով սրքանէմ և ատանամ բայերէն, վասն զի գիշակեր թռչունն ճիրանը նետելով կ'առնու կը յափշտակէ իւր որսը։ Ոչ սակաւ ուրախացայ Մնատոնեան Հարց ընտիր ձեռագրին մէջ իմ կարծեացս համաձայն ծիրանատ եւ սրքետար որոշ որոշ գրուած տեսնելով։ Սրքետար բառին կազմութեան նման է նաեւ Տարքետար և Հաքետարէն բառերուն կազմութիւնն։ Ըստ Ստեփանոսի կամենիցացւոյ և ըստ Նոր Հայկազեանին՝ Առեատնէ կամ Առեանտոոնեան բառն ալ, որ կը նշանակէ կին կամ աղջիկ յափշտակել և փախչիլ, կը ստուգաբանի առած և անկած ի փախուստ։

Մողնըքար, Գձար. ուղղելի Մողնի, Բարքձար։ Գաղիանոս բժշկապետի բառերուն հաւաքում մը գրած են նախնիք այբուբենական կարգաւ, յորում կը յիշուին զանազան տնկոց, թռչնոց, անասնոց, հիւանդութեանց և անդամոց անուանք, գործ՝ ինչպէս կը թուի՝ ԺԱ կամ ԺԲ դարու. այս բառերուս մէջ կը յիշուի. «Մողնըքար. Գձար», յորմէ Նոր Հայկազեանն ալ կ'առնու կը գրէ. «Գձար. թուի որպէս ռմկ. կճատ, մոմպատ»։ Նոյնպէս Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ կը գրուի. «Գձար. կճատ, մոմպատ, կամ կակղցած մոմ»։ Բայց ոչ է այնպէս. փոխանակ «Մողնըքար, Գձար» կարդալու պէտք է կարդալ «Մողնի, Բարքձար»։ Բարքձար,

որ Թուր պըրս. պէրկի-մէր, է դղ. Galbanum ըսուած խէժն, որ հայերէն կ'ըսուի նաեւ Քաղբան կամ Ջարհոտ, տճ. ջանըը։ Անհաւասիկ քանի մի վկայութիւններ, յորս մողրն և բարֆմոր կը մեկնուին քաղբան. «Ալ կինա. չարհոտ կամ մողրն». Բժշկարան ԺԳ դարու. – «Բարկմոր. քաղբանի». անդ. –«Մողրին+ (մաղթ ինք ?), որ է ղամնի». Բժշկարան. –«Հոյզ. մողրն». Քերթողական բառգիրք. – «Հոյզ. խիժ կամ լացուր կամ կուիզ կամ մողրն». անդ. – «Խայտղան և ռետին. դեղ վիրի կամ կատրան կամ մողրն». անդ։ Հ. Սրապիոն Էմինեան դղ. Sarcocolle ռետինը կ'անուանէ գժար, փոխանակ ըսելու Անծրութ, որ է բնիկ հայ բառն՝ պարսկերէն էնզէ-րութ բառէն առնուած։

Այլ է պարսկերէն կէ-շաւ, դղ. Gentiane ըսուած խոտն, որ հայերէն կը կոչուի Բող։

Նեղուրը հէտ, ուղղելի Նեղ ուրահէտ, այսինքն նեղ ճանապարհ։ «Ո՜վ հոտ մեծի հովուին և առաջնորդին կենաց, որ Նեղուրը հէտին ընդարձակն տանի». Վարք Հարանց, Հ. Բ. էջ 671. կարդա Նեղ ուրահէտին, ինչպէս կ'ըսուի նաև Գրիգոր Աստուածաբանի Աղքատութեան ճառին մէջ. «Նեղ ճանապարհն ընդ արձակութիւն տանի անդ երանութեանն»։ Ի ծանօթութեան կը նշանակուի թէ ուրիշ օրինակ մը կը գրէ Նեղ ուրհէտին, ճիշդ ինչպէս որ Նոր Հայկազեանն Ոսկեբերանի Եսայեայ մեկնութեան մէջ կը կարդայ Անուրհէտ փոխանակ կարդալու Անուրահէտ. «Պատրաստ արարէք զճանապարհս Տեառն և ուղիղ արարէք զշաւիղս նորա, քանզի անկոխ և անուրհէտ (կարդա անուրահէտ) էին շաւիղքն»։ Տես և Մարութայի ի վկայսն Արեւելից ճառին մէջ. «Քննեցուք զճանապարհս մեր, տեսցուք զի լցան գայթակղութեամբ, փշաբերք, խոտակիցք, անկոխ+ և անուրահէտ+». էջ 146։ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ ջնջելի է բառն Նեղուրը, որ կարծեմ միայն Հարանց վարուց վերոյիշեալ վրիպակ ընթերցուածէն առնուած է։

*[illegible] [illegible], ուղղելի [illegible] [illegible]։ «Այսօր և [illegible] [illegible] Չրկայ դասակարգութիւն եռաբերկրեցին վերածնութեամբ գալստեամբ Որդւոյն Աստուծոյ»․ Թէոդորոս Քռթենաւոր, Գովեստ ի սուրբ կոյսն, (Ս. Ղազար, 1833) էջ 175․ կարդա [illegible] [illegible]։ Բառարանաց միջէն ջնջելի է Ա[illegible] բառն, որ կը դրուի իբր՝ հոմանիշ Լ[illegible]ի։*

---

## ՑՕԴՈՒԱԾ Գ

### ՎՐԻՊԱԿՔ

### ԲԱՌԻ ՄԸ ԱՌԱՋԻՆ ՆՇԱՆԱԳՐԻՆ ՆԱԽԸՆԹԱՑ ԲԱՌԻՆ ԾԱՅՐԸ, ԿԱՄ ՎԵՐՋԻՆ ՆՇԱՆԱԳՐԻՆ ՅԱՋՈՐԴ ԲԱՌԻՆ ՍԿԻԶԲԸ ԿՐԿՆՈՒԵԼԷՆ ԿԱՄ ՉԿՐԿՆՈՒԵԼԷՆ

*Նախնեաց մատենագրութեանց մէջ շատ անհարազատ ընթերցուածոց պատճառն ուրիշ բան չէ բայց եթէ գաղափարողաց անմտադրութիւնն, որոնք երբեմն բառի մը առաջին նշանագիրը նախընթաց բառին ծայրը կը կրկնեն ուր պէտք չէր կրկնել, կամ ուր որ նախընթաց բառն ալ նոյն նշանագրով կ'աւարտի՝ իրենք կը մոռնան գրել, երբեմն ալ ընդհակառակն բառի մը վերջին նշանագիրը կրկին կը գրեն յաջորդ բառին սկիզբը որ նոյն նշանագրով չի սկսիր, կամ եթէ կը սկսի՝ զանց կ'առնեն գրելը։*

*Օրինակներ չեն պակասիր․ սկսիմ ի սիրելոյն իմմէ յեղնըկայ։*

*«Ցամենայն կողմանս վարգին, և ընդհանուր արշաւին, և ընդ բնաւ սլանան»․ էջ 18։ Ընդ բնաւ կը գրուի նոյնպէս Հ. Թադէոս Թոռնեանի Հատընտիր նախնեաց ընթերցուածոց մէջ, երես 10։ Ես կարծեմ թէ կարդալու է ընդ բնաւ,*

ուղղակի բայի առաջին գիրն ալ մերկայական կրկնուած ըլլալով բնաւ բառի վերջը. Նախնիք ուրիշ տեղ եղակի ըստ բնաւ կը գրեն, ինչպէս կը տեսնուի հետեւեալ վկայութիւններէն. «Թէ և մարդկան իսկ կամիցիս ցուցանել, թաքն այժմ, զի բազում պատուով յայնժամ ամենեքեան տեսանիցեն, յոր-ժամ Աստուած յայտնիցէ և յարդիցէ և քարոզ ըստ բնա-հրաման տայցէ կարդալ». Ոսկեբ. Մատթ. ժթ. էջ 303. – «Ընդ ամենայն տեղերս շրջեցաւ, ընդհանուր և ըստ բնա-քարոզեաց». Ոսկեբ. Բ Տիմ. Թ. էջ 262. – «Հաւչակ հարէք ըստ բնաւ վասն իրացդ գործելոց». Ոսկեբ. մեկն. Եսա. – «Էր, ասէ, երբեմն մինչ ըստ բնաւ խաւար և ջուր էր, և էին անդ այլ ինչ գազանք». Եւս. Քր. Հ. Ա. էջ 22. – «Մինչ դեռ խոնաւ և ջուր էր ըստ բնաւ, և գազանք միայն էին ի նմա». անդ. էջ 24:

«Եւ եթէ զնախանձուէն եւս ճշդիւ քննիցեն՝ թէ ուստի եղեւ, աստացուք՝ եթէ յառաւելութենէ զմարդն պա-տուելոյ». Եզնիկ, էջ 45: Ճշդիւ կը գրուի նոյնպէս Հ. Թա-դէոս Թոռնեանի Հատընտիր ընթերցուածոց մէջ, երես 13: կարգա ճշդիւ. քէն՝ քննիցեն բառին է: Նախնիք ուրիշ ամէն տեղ եղակի կ՚ըսեն ճշդիւ քննել, ճշդիւ քննութիւն. «Վասն էր ճշդիւ քննիցես զուղղութիւնս ինչ քո». Ոսկեբ. Մատթ. Ա. գ. Ցորդ. էջ 38. – «Ցորժամ զիւրոց մեծամեծ մեղաց անփոյթ առնիցէ, և զայլոց փոքունս ճշդիւ քննիցէ». անդ. Ժգ. էջ 361. – «Եթէ զայնպիսի ինչ ճշդիւ պարտ իցէ քննել». Ոսկեբ. Տիտ. Գ. Ցորդ. էջ 309. – «Չէ ժամ զայն ճշդիւ քննելոյ». Սե-բեր. Թ. էջ 181. – «Ահա համարք կան և պատիժք և ճշդիւ քննութիւն». Ց. Մանդ. Ճառք, Թ. էջ 82: Ըստ այսմ եղակի են միշտ Ստուգիւ, Ստիպով, Տագնապաւ, Գտակաւ, Ծըշ-մարտիւ, Հաւաստեաւ, Արդարեւ, Սրտիւ, Սեղմիւ, Նմա-նեւ, Դիւրով և Թեթեւով մակբայներն: Նոր Հայկազեանն կը յիշատակէ միայն իբր անսովոր Ստուգիւ մակբայ յոդ-նակի ի Պատմութենէ Գրիգոր Երիցու շարայարողին Մատ-

Թէոփ Ուռհայեցւոյ, բայց և այն կ'ուղղուի Սփոփէ ի տպագրին Երուսաղեմի (1869), էջ 536. «Սփոփէ ոչ կարացաք ի վերայ հասանել պատճառին»։ Անմտադրութեան հետեւանք համարելու է Հ. Արսէն Բագրատունւոյ ճշդիւ գործածելը ի Յառաջաբանի Մշակականաց Վիրգիլեայ, էջ 10. «Հայկեանս բարբառոյ ոչինչ կարծեմ պակասէ ի յիշատակեալ հանգամանացդ ի լաւութիւն Թարգմանութեան. ոչ բաւականութիւն ի բացատրել զամենայն ինչ ճշգրտօրէն ճշդիւ և անօսր փափկութեամբ իմաստից, ոչ պերճ վսեմախօսութիւն, ոչ հարստութիւն զօրութեան և ոչ առատութիւն ճոխութեան, միայն թէ ի գրիչ ճարտար գտանիցի»։

«Եւ զուարճացին իբրեւ զխոտ ջրարբի, և որպէս ուռք ի մէջ ջրոց գնացից». Եսայի, խդ. 4։ Ուղղելի է ուռէ, ինչպէս կը դնէ յոյնն. ուռէ բառին ջն մոռցուած է յաջորդ է նախադրին պատճառաւ։

«Եւ զիա՞րդ, ասեն. Աբրահամ կամ Յովբ ո՞ր արդարացան». Յակեբ. Մծբ. Ա. ճա. էջ 335։ Թուի ո՞չ ո՞ր. յաջորդ որոցոյն բառի պատճառաւ որ միանգամ գրուած է։ Իսկ Փ. Բիւզանդացւոյ Ե գրոց ԻԸ գլխուն մէջ, երես 223. «Եւ որք արդար դատաստանօք քոյք մերժեցեր զնոսա ի գրախտէն փափկութեան յայս աշխարհ ուստի անեղծեր», որք աւելորդ կը համարիմ և յաջորդ որոց բառէն շփոթած։ — «Ընդէ՞ր մեծամտիցես, ով այր դու, զի ի կամս բարձրոյն նստիցես, և լուծք ջորեաց ձգիցեն». անդ. ԻԳ. Յօրդ. էջ 377։ Ուղղելի է «ի կառս բարձրոյն նստիցես»։ — «Եւ եթէ այնմ չհաւատայցես, ապա ինչ իրօք առ զհանգամանս հանդերձելոցն». Բ. Թ. էջ 526։ Ուղղելի «ապա ինչ իրօք»։

«Զի տան ուրեք զծառայ նպաղին թէ ոչ նախ փոր-

մթեղ»․ Երեմիա Մեղրեցի․ – «Պիծակ․ մոծակ կամ մժեխ»․ նոյնն․ – «Մեծակէ ծառ․ ճեղք»․ Բժշկարան Ասարայ Սեբաստացւոյ․ այն է դղ․ Orme ըսուած ծառն։

## Ց եւ Ց

Նոր Հայկազեանին մէջ յիշուած Ցօրան, Ցոփինամեմ եւ Ցոփինընինոց բառերն ըստ ստուգագոյն քննութեանց ուղղելի են Ցորյան, Ցոփինամեմ եւ Ցոփինընինոց Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ։

Յիշեմ՝ քանի մ'ուրիշ օրինակներ։

Զօրայն Գեղեցիկն, ուղղելի զԱրայն Գեղեցիկն։ «Եւ զաշխկ արաբեալ յայնկոյս քան զվանտոսպ, ի տեղւոջն արձանաշար քարակարկառ գոգաձեւ միջոյի երկուց բլրակաց որ հայի յՈւրիվարաց արկման (?) դաշտն ի վերայ Լեռլոյ գեղջն, ուր զՕրայն Գեղեցիկն առասպելաբանեն սպանած? վերայն (վիրացն?) սպանելոցն (?) ի մանկանցն Շամիրամայ»․ Թ․ Արծր․ Գ․ ժը․ էջ 242․ կարդա ուր զԱրայն Գեղեցիկն։ Թ․ Արծրունի անշուշտ կ'ուզէ ըսել․ «ուր կ'առասպելաբանեն թէ Շամիրամայ օրքերէն սպանեալ Արայն Գեղեցիկ բժշկուած է իւր վէրքերէն»։ Երանի թէ ընտրելագոյն ձեռագիր մը պարզէր ուրիշ քանի մի յայտնապէս աղաւաղեալ ընթերցուածներ, որ այս հետաքրքրական հատուածս կը մթացնեն։

Համար և յար, ուղղելի Համարեցար։

«Քանզի պատեհ համար և յար նախ դիտմամբ
Զօգտակարսն քո արարածոց
Ոչ յեզուլ ամենազգի չփոթմամբ»․

պատառիկ Պիսիդեայ վեցօրէին հրատարակեալ բաղդատութեամբ ընդ յունին ի Բուդաբէշդ, 1875, էջ 124․ ի ծանօթութեան կ'ըսուի․ «խառնակ է բանդ»։ Կարդա համարեցար։

Ցառաջանիմ, Ցառանակեմ։ Նոր Հայկազեանն մի և նոյն նշանակութիւնը կուտայ այս երկու բառերուս ալ, այսինքն տեւել, համբել, դիմանալ. յայտնի է թէ երկուքէն միոյն ընթերցուածն խանգարեալ է։ «Ցառաջ քան զՀրհեղեղն պայազատութիւնք ազգաց մի ըստ միոջէ ի տասներորդ թիւ համարոյ ձգեալ յառաջանեցան»։ Եւս. Քր. (Ս. Ղազար, 181●) Հ. Ա. էջ 108. — «Մակեդոնացւոց իշխանութիւնն մինչեւ ի Հռովմայեցւոց վախճան առնլոյ՝ ցառանակեցաւ զայս ձեւ օրինակի»։ անդ. էջ 326։

Ցանկոտոյն, թուի ուղղելի Ցանկոտոյն։ «Թէ ընդ էր, վասն զի ի Քաղդէացւոց և յԱսորեստանեաց մատենից ցանկոտոյն են մեր իրք, ի յունականէն կամեցաք մեզ ցուցանել»։ Մ. Խորեն. Ա. բ. Նոր Հայկազեանն ևս կը կարդայ ցանկոտոյն, և ցանկ բառէն կը ստուգաբանէ առաւելագոյն, յաճախագոյն. բայց թերեւս ուղղագոյն ըլլայ կարդալ յանկոտոյն ըստ այլոց ձեռագրաց, և յանկ բառէն ստուգաբանել՝ աւելի յարմար, աւելի պատշաճ, աւելի մերձաւոր, այսինքն թէ «Քաղդէացւոց և Ասորեստանեայց մատեանքն աւելի պատշաճ կամ աւելի մերձաւոր են մեր աշխարհին մէջ հանդիպած անցից, քան թէ յունականքն»։

Ցատան խցեն, թուի ուղղելի Ցաւանիցեն, այսինքն Ցօնիցեն։ «Եւ արդ տես զմոլորութիւն աղջկանն (դստերն Հերովդիայ), և զկատաղութիւն լկտւոյն. որում չնորհակալն պարտ էր լինել, զի վրէժս թշնամանաց նորա պահանջէր մարգարէն (Յով. Մկրտիչ), — քանզի ըստ օրինացն մեծ թշնամանք են որդւոց, եթէ մարք ի տայգերաց ցատան խցեն, — իսկ նա գործակից եւս լեալ, և ընդ նմին զմեղքեննեայս և զորոդայթս սատանայի կազմէր, և պարգեւս սատանայական հայցէր»։ Ոսկեբ. Մտթ. Բ. իգ. էջ 685։ Ինձի կ'երեւի թէ փոխանակ ի տայգերաց ցատան խցեն կարդալու պէտք է կարդալ ի տայգերաց յառանիցեն, Ցօնեմ կամ Ցօսեմ կամ Ցօսում բայէն որ կը

նշանակէ կէն պղծել, պռունկել։ Այս կարծեացս վրայ աւելի հաստատուեցայ երբ Բազմավիպոյ 1875 տարւոյն Դ. Պրակն ձեռքս անցնելով և կարդալով այն յօդուածը՝ որոյ վերնագիրն է «Ընդհանուր տեսութիւն մը Նախնեաց Թարգմանութեանց վրայ դատաստան ընելու», էջ 352-357, յօդուած՝ որ անցողակի ըսելով՝ ծայր ի ծայր ինձի հակառակ գրուած է, տեղեկացայ որ Ս. Ղազարու վանքը յԱրիստակէս վարդապետէ և յաշակերտէ նորին Եփրեմայ մեկնութիւն մը կը գտնուի Մատթէի Աւետարանին քաղեալ յՈսկեբերանէ, յորում սոյն հատուածս գրեալ է այսպէս. «Քանզի ըստ աւրինացն մեծ թշնամանք էին որդւոց եթէ մարք ի տայգերացն յղանիցեն»։ Անտոնեան Հարց մատենադարանը յՕրթաքէօյ գտայ ուրիշ ձեռագիր մը Արիստակէս վարդապետի և աշակերտին Եփրեմայ մեկնութեան, գաղափարեալ յամին 1810 յօրինակէ գրելոյ ի թըւին ՊԴ (1355), յորում նոյնպէս գրեալ տեսայ. «Քանզի ըստ օրինացն մեծ թշնամանք էին որդւոց եթէ մարք ի տայգերացն հղանիցէն». այս օրինակիս մէջ, յ փոխուելով ի հ, և ցեն վերջաւորութիւնն ի ցէն, այնչափ աւելի կը մօտենանք յղանիցեն կարդալու որչափ որ կը հեռանանք ծնանիցեն ընթերցուածէն։ Իսկ Ստեփանոս Կամենիցացի իւր Հայերէն-Լատիներէն բառարանին մէջ ի բառն Տագր կը գրէ. «Քանզի ըստ օրինացն մեծ թշնամանք էին որդւոց եթէ մարք ի տագերաց ծնանիցեն». որով ևս քան զևս կը հաստատուի իմ կարծիքս յղանիցեն կարդալու։ Անտեղի կը համարիմ թէ հարազատ ընթերցուածն ըլլայ «եթէ մարք ի տայգերաց ծնան իցեն», թէպէտ և «կ'ուզեմ» կամ թէ «կրնամ» հասկընալ Դանիէլի մարգարէութեան ԺԳ գըլխոյն 10 թուահամարին խօսքը, յորում կ'ըսուի. «Էին երկոքեան հարեալ ի նմա, և չպատմէին միմեանց զցաւս իւրեանց, զի պատկառէին պատմել զցանկութիւն իւրեանց»։ Ըստ իս՝ խնդիրն մայրերուն վրայ չէ որ պարզապէս կը ծնանին տայգրներու, որով և իրենց որդւոց ալ մեծ թշնամանք ըլ-

րած չեն գտնուիր, այլ տայգրներուն վրայ որ կը պղծեն կ'ապականեն զմայրերը, որով և որդւոց ալ իրօք մեծ թշնամանք կ'ընեն, վասն զի այլ է ցանկութիւն, և այլ ցանկութեան գործադրութիւն։ Այսպէս կը հասկընար անշուշտ և Յովհան Երզնկացի իւր Մատթէի մեկնութեան մէջ, որ փոխանակ ցոփնիցեն բայի դիւրահասկանալի բառ մը գործածել ուզելով կը դնէ ամուսնանայցեն. «Եթէ մարք ի տայգերաց ամուսնանայցեն»։ յայտնի է որ մեր լեզուին մէջ ամուսնանալ ոչ միայն կը նշանակէ կարգուիլ, աշխարհ մտնել, այլ և մերձաւորիլ, գալ ի խառնս։ Արդէն Հերովդէսի և Հերովդիայ պատմութիւնն ալ կը վկայէ որ այդ երկուքը պարզ ցանկութեան սահմանէն անցած էին, և կ'ապրէին իբրեւ այր և կին. անոր համար կը յաւելու Ոսկեբերան. «Աղջկանն . . . թաքչել պարտ էր՝ յաղագս ծանականաց մօրն և անօրէն ամուսնութեանն». էջ 686։ —Թուի թէ Ցոփնէս այսինքն Ցօփնէս բայն ալ վրիպակաւ գրեալ կը գտնուի Յոփնէս. տես Ցոփնիմ ի Նոր Հայկազեանն։

Գալով Բազմավէպին յարձակողական յօդուածին, այսչափ միայն կ'ըսեմ իմ անանուն ընդդիմախօսիս որ փոխանակ զիս աղարտել ուզելու՝ իւր ժամանակը շատ աւելի օգտակար կերպով անցուցած կ'ըլլար եթէ փոյթ տանէր սորվիլ նախնեաց մատենագրութեանց հին ձեռագիրները անսխալ կերպով կարդալ, որպէս զի իւր աչաց առջեւ յոյն բնագիրներ ունենալով հանդերձ «եփեսոսը Եփեսոս» չկարդայ ի Պատմութեան Աղեքսանդրի, և համարեցարը՝ համար և յար ի Պիսիդեայ Վեցօրէին. տես ի վեր անդր, էջ 13, 20։

# ՑՕԴՈՒԱԾ Բ

## ՎՐԻՊԱԿՔ

## ԵՐԿՈՒ ԿԻՑ ԲԱՌԵՐՈՒ ԱՆԴԱՄՆԵՐԸ ՄԷԿՄԷԿՈՒ ՀԵՏ ՓՈԽԵԼԷՆ ԿԱՄ ՄԻՈՅՆ ԳԻՐԸ ՄԻՒՍԻՆ ՏԱԼԷՆ

Ջեռագրաց ընդօրինակողք երբ որ հայերէն լեզուի քաջ տեղեակ չեն ըլլար, նոր տեսակ սխալ մ'ալ կը գործեն յաճախ, որ է՝ երկու քովէ քով գտնուած բառերուն անդամները իրարու հետ փոխել, կամ գիր մը որ նախընթաց բառին մասն է յաջորդին գլուխը կապել, յաջորդին ալ առաջին գիրը նախընթաց բառին վերջը կցել առանց ամենեւին յարմարութեան, որմէ յառաջ կուգան զզուելի խանգարմունք մտաց բանին, կամ այնպիսի բառեր որ լեզուին մէջ գոյութիւն չունին։ Ոսկեբերանի Մատթէի մեկնութեան մէջ կայ այսպիսի վրիպակ մը, զոր ուղղած է Նոր Հայկազեանն ի բառն Նպաստ. «Ոչ ոք զոր սիրէ, նպաստ վաշխի տայցէ» գրուած է սոյն գրոց Գ հատորոյն 9 երեսը. ուղիղն պիտի ըլլայ «Ոչ ոք զոր սիրէն պարտաբաշխի տայցէ»։ Պարտաբաշխի տալ զոք կը նշանակէ գղ. Sacrifier կամ livrer quelqu'un։ Ահաւասիկ ուրիշ օրինակներ ալ։

Անփոփոխ անուն, ուղղելի Անփոփոխ նոմոն։ «Ո՞ւր է ծննդեանն անփոփոխ անունն, և ո՞ գտանել կարէ զհաստատութիւն մարդկան ծննդեանն, անյայտ սերմանցն սերմանեցելոյ». Փիլոն, Յղ. Յառաջախնամութեան, Ա. էջ 40. լատինե-րէն Թարգմանութիւնն Հ. Մկրտչի Աւգերեան կը դնէ. «Ubi est natalitiorum *nomen* immutabile?» կարդա անփոփոխ նոմոնն, այսինքն անփոփոխ կանոն, օրէնք։

Ճէրմանոնանք և սարկեաւառաք, ուղղելի Ճէրմանոնանք նա սարկեաւառաք։ «Իսկ գիշակեր հաւուցն որ յօրսոյ կեան. և Ճէրմանոնանք և

սորքէստատ տուան»։ Բրս. վեց. Ը. էջ 161։ Նոր Հայկազեանն կը կարծէ թէ Սորքէստա գոյական բառ է և կը նշանակէ «ճապուռն, մագիլ սուր, սայրք եղնգանց»։ Նոյնպէս Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութիւնն կը դնէ. «Սորքէստատ կամ Սորքէստատ. թռչնոց ըղունկին ճանկերը»։ Իսկ ես վեց տարի առաջ հաղորդած էի իմ կարծիքս բարեկամներէս ոմանց որ փոխանակ ծէրանոնք և սորքէստատ բառերուն պէտք է կարդալ ծէրանոնք եւ սրքէստատ, և վերջօրէին խօսքը իմանալ այսպէս. «Իսկ գիշակեր թռչնոց որ որսով կ'ապրին, յափշտակիչ ճիրաններ ալ տրուեցան», սրքէստը համարելով ածական ծէրանոնք բառին և ստուգաբանելով սրքանէմ և տանոամ բայերէն, վասն զի գիշակեր թռչունն ճիրանը նետելով կ'առնու կը յափշտակէ իւր որսը։ Ոչ սակաւ ուրախացայ Անտոնեան Հարց ընտիր ձեռագրին մէջ իմ կարծեացս համաձայն ծէրանոնք եւ սրքէստատ որոշ որոշ գրուած տեսնելով։ Արքէստ բառին կազմութեան նման է նաեւ Տօրքէստ և Հանէստէն բառերուն կազմութիւնն։ Ըստ Ստեփանոսի կամենիցացւոյ և ըստ Նոր Հայկազեանին՝ Անէանէ կամ Անէանգօռնէն բառն ալ, որ կը նշանակէ կին կամ աղջիկ յափշտակել և փախչիլ, կը ստուգաբանի առնոմ և անկանիմ ի փախուստ։

Մողնքող, Գծոտ. ուղղելի Մողն, Բոլծոտ։ Գաղիանոս բժշկապետի բառերուն հաւաքում մը գրած են նախնիք այբուբենական կարգաւ, յորում կը յիշուին զանազան տնկոց, թռչնոց, անասնոց, հիւանդութեանց և անդամոց անուանք, գործ՝ ինչպէս կը թուի՝ ԺԱ կամ ԺԲ դարու. այս բառերուս մէջ կը յիշուի. «Մողնքող. Գծոտ», յորմէ Նոր Հայկազեանն ալ կ'առնու կը գրէ «Գծոտ. թուի որպէս ռմկ. կճատ, մոմպատ»։ Նոյնպէս Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ կը գրուի. «Գծոտ. կճատ, մոմպատ, կամ կակղցած մոմ»։ Բայց ոչ է այնպէս. փոխանակ «Մողնքող, Գծոտ» կարդալու պէտք է կարդալ «Մողն, Բոլծոտ»։ Բոլծոտ,

որ Թուր. պրս. պէրզէ-ձէք, է գղ. Galbanum ըսուած խէժն, որ հայերէն կ՚ըսուի նաեւ Քաղբան կամ Զարհոտ, տճ. գասնը։ Ահաւասիկ քանի մի վկայութիւններ, յորս ձաղն և բարզէձաք կը մեկնուին քաղբան. «Ալ կինա. չարհոտ կամ ձաղն». Բժշկարան ԺԳ դարու. — «Բարզէձաք. քաղբանի». անդ. — «Մաղնէնք (մաղթ ենք?), որ է ղանի». Բժշկարան. — «Հոյզ. ձաղն». Քերթողական բառգիրք. — «Հոյզ. խիժ կամ լացուր կամ կուիզ կամ ձաղն». անդ. — «Խայտղան և ուետին. դեղ վիրի կամ կատրան կամ ձաղն». անդ։ Հ. Սրապիոն Էմինեան գղ. Sarcocolle ուետինը կ՚անուանէ գժաք, փոխանակ ըսելու Անծրութ, որ է բնիկ հայ բառն՝ պարսկերէն էնզէրութ բառէն առնուած։

Այլ է պարսկերէն կէ-շաւր, գղ. Gentiane ըսուած խոտն, որ հայերէն կը կոչուի Բոդ։

Նեղարահէտ, ուղղելի Նեղ արահետ, այսինքն նեղ ճանապարհ։ «Ո՞վ հօտ մեծի հովուին և առաջնորդին կենաց, որ Նեղարահէտէն յընդարձակն տանի». Վարք Հարանց, Հ. Բ. էջ 671. կարդա Նեղ արահետէն, ինչպէս կ՚ըսուի նաև Գրիգոր Աստուածաբանի Աղքատութեան ճառին մէջ. «Նեղ ճանապարհաւ ընդ արձակութիւն տանի անդ երանութեանն»։ Ի ծանօթութեան կը նշանակուի թէ ուրիշ օրինակ մը կը գրէ Նեղ արհետէն, ճիշդ ինչպէս որ Նոր Հայկազեանն Ոսկեբերանի Եսայեայ մեկնութեան մէջ կը կարդայ Անարհետք փոխանակ կարդալու Անարահետ. «Պատրաստ արարէք զճանապարհս Տեառն և ուղիղ արարէք զշաւիղս նորա, քանզի անկոխ և անարհետք (կարդա անարահետ) էին շաւիղքն»։ Տես և Մարութայի ի վկայսն Արեւելից ճառին մէջ. «Քննեսցուք զճանապարհս մեր, տեսցուք զի լցան դայթակղութեամբ, փշաբերք, խոտակիցք, անկոխ և անարահետ». էջ 146։ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ ջնջելի է բառն Նեղարահ, որ կարծեմ միայն Հարանց վարուց վերոյիշեալ վրիպակ ընթերցուածէն առնուած է։

*Ջր–կոյթ տ–լ–ղ–կ, ուղղելի Ջր–կոյթ–– լ–ղ–կ։ «Այսօր և Ջր–կոյթ տ–լ–ղ–կոց Ջրկայ դաստակարգութիւն եռաքերկրեցին վերածնութեամբ գալստեամբ Որդւոյն Աստուծոյ». Թէոդորոս Քութթենաւոր, Գովեստ ի սուրբ կոյսն, (Ս. Ղազար, 1833) էջ 175. կարդա Ջր–կոյթ–– լ–ղ–կոց։ Բառարանաց միջէն ջնջելի է Ա–լ–ղ–կ բառն, որ կը դրուի իբր՝ հոմանիշ Լ–ղ–կի։*

---

## ՅՕԴՈՒԱԾ Գ

### ՎՐԻՊԱԿՔ

### ԲԱՌԻ ՄԸ ԱՌԱՋԻՆ ՆՇԱՆԱԳՐԻՆ ՆԱԽԸՆԹԱՑ ԲԱՌԻՆ ԾԱՅՐԸ, ԿԱՄ ՎԵՐՋԻՆ ՆՇԱՆԱԳՐԻՆ ՅԱՋՈՐԴ ԲԱՌԻՆ ՍԿԻԶԲԸ ԿՐԿՆՈՒԵԼԷՆ ԿԱՄ ՉԿՐԿՆՈՒԵԼԷՆ

*Նախնեաց մատենագրութեանց մէջ շատ անհարազատ ընթերցուածոց պատճառն ուրիշ բան չէ բայց եթէ գաղափարողաց անմտադրութիւնն, որոնք երբեմն բառի մը առաջին նշանագիրը նախընթաց բառին ծայրը կը կրկնեն ուր պէտք չէր կրկնել, կամ ուր որ նախընթաց բառն ալ նոյն նշանագրով կ'աւարտի՝ իրենք կը մոռնան գրել, երբեմն ալ ընդհակառակն բառի մը վերջին նշանագիրը կրկին կը գրեն յաջորդ բառին սկիզբը որ նոյն նշանագրով չի սկսիր, կամ եթէ կը սկսի՝ զանց կ'առնեն գրելը։*

*Օրինակներ չեն պակասիր. սկսիմ ի սիրելւոյն իմմէ յեզնըկայ։*

*«Ցամենայն կողմանս վարգին, և ընդհանուր արշաւին, և ը–դ բ–ւ– սլանան». էջ 18։ Ը–դ բ–ւ– կը գրուի նոյնպէս Հ. Թադէոս Թոռնեանի Հատընտիր նախնեաց ընթերցուածոց մէջ, երես 10։ Ես կարծեմ թէ կարդալու է ը–դ բ–ւ–,*

ուղնան բայի առաջին գիրն ալ մրեխակաւ կրկնուած ըլլալով բնաւ բառի վերջը. Նախնիք ուրիշ տեղ եզակի ընդ բնաւ կը գրեն, ինչպէս կը տեսնուի հետեւեալ վկայութիւններէն. «Թէ և մարդկան իսկ կամիցիս ցուցանել, Թաքո՛ այժմ, զի բազում պատուով յայնժամ ամենեքեան տեսանիցեն, յորժամ Աստուած յայտնիցէ և յարդիցէ և քարոզ ընդ բնաւ հրաման տայցէ կարդալ»․ Ոսկեբ. Մատթ. Ժ.Թ. էջ 303. — «Ընդ ամենայն տիեզերս շրջեցաւ, ընդ հանուր և ընդ բնաւ քարոզեաց»․ Ոսկեբ. Բ Տիմ. Թ. էջ 262. — «Հուչակ հարէք ընդ բնաւ վասն իրացդ գործելոց»․ Ոսկեբ. մեկն. Ես. — «Էր, ասէ, երբեմն մինչ ընդ բնաւ խաւար և ջուր էր, և էին անդ այլ ինչ գաղանք»․ Եւս. Քր. Հ. Ա. էջ 22. — «Մինչ դեռ խոնաւ և ջուր էր ընդ բնաւ, և գազանք միայն էին ի նմա»․ անդ. էջ 24։

«Եւ եթէ զնախանձուէն եւս ճշդիւ քննիցեն՝ թէ ուստի եղեւ, ասասցուք՝ եթէ յառաւելութենէ զմարդն պատուելոյ»․ Եզնիկ, էջ 45։ Ճշդիւ կը գրուի նոյնպէս Հ. Թադէոս Թոռնեանի Հատընտիր ընթերցուածոց մէջ, երես 13։ կարգա ճշդի. քէն՝ քննիցեն բառին է։ Նախնիք ուրիշ ամէն տեղ եզակի կ'ըսեն ճշդիւ քննել, ճշդիւ քննութիւն. «վասն է՞ր ճշդիւ քննիցես զուղղութիւնս ինչ քո»․ Ոսկեբ. Մատթ. Ա. Գ. Յորդ. էջ 38. — «Յորժամ զիւրոց մեծամեծ մեղաց անփոյթ առնիցէ, և զայլոց փոքունս ճշդիւ քննիցէ»․ անդ. ԻԳ. էջ 361. — «Եթէ զայնպիսի ինչ ճշդիւ պարտ իցէ քննել»․ Ոսկեբ. Տիտ. Գ. Յորդ. էջ 309. — «Չէ ժամ զայն ճշդիւ քննելոյ»․ Սեբեր. Թ. էջ 181. — «Ահա համարք կան և պատիժք և ճշդիւ քննութիւն»․ Յ. Մանդ. Ճառք, Թ. էջ 82։ Ըստ այսմ եզակի են միշտ Ստուգիւ, Ստիպով, Տագնապաւ, Գտակաւ, Ծըշմարտիւ, Հաւաստեաւ, Արդարեւ, Սիրտիւ, Սեղմիւ, Նմանեւ, Դիւրով և Թեթեւով մակբայներն։ Նոր Հայկազեանն կը յիշատակէ միայն իբր անսովոր Ստուգիւք մակբայ յոգնակի ի Պատմութենէ Գրիգոր Երիցու շարայարողին Մատ-

Թէոփի Ուռհայեցւոյ, բայց և այն կ'ուղղուի Սոփերքն ի տպագրին Երուսաղեմի (1869), էջ 536. «Սոփերքն ոչ կարացաք ի վերայ հասանել պատճառին»։ Անմտադրութեան հետեւանք համարելու է Հ. Արսէն Բագրատունւոյ ընդէմ գործածելը ի Ցառաջաբանի Մշակականաց Վիրգիլեայ էջ 10. «Հայկեանս բարբառոյ ոչինչ կարծեմ պակասէ ի յիշատակեալ հանգամանաց ի լաւութիւն թարգմանութեան. ոչ բաւականութիւն ի բացատրել զամենայն ինչ ճշգրտօրէն ընդէմ և անսար փափկութեամբ իմաստից, ոչ պերճ վսեմախօսութիւն, ոչ հաստատութիւն զօրութեան և ոչ առատութիւն ճոխութեան, միայն թէ ի գրիչ ճարտար գտանիցի»։

«Եւ զուարճացին իբրեւ զխոտ ջրարբի, և որպէս ուռի ի մէջ ջրոց գնացից»․ Եսայի, խզ. 4։ Ուղղելի է ուռի, ինչպէս կը դնէ յոյնն. ուռի բառին չէն մոռցուած է յաջորդ է նախորդին պատճառաւ։

«Եւ զիմ՞րդ, ասեն. Աբրահամ կամ Ցովբ դէ՞ արդարացան»․ Բսկեր. Մտթ. Ա. հա. էջ 335։ Թուի դէ՞րդ. յաջորդ դէրդոյն բառէ պատճառաւ որ միանգամ գըրուած է։ Իսկ Փ. Բիւզանդացւոյ Ե գրոց ԻԸ գլխուն մէջ, երես 223, «Եւ որք արդար դատաստանօք քովք մերժեցեր զնոսա ի գրախտէն փափկութեան յայս աշխարհ ուստի առեղծեր», ուր աւելորդ կը համարիմ և յաջորդ ուրոր բառէն չփոթած։ — «Ընդէ՞ր մեծամտիցես, ով այր դու, զի ի կամս բարձրոյն նստիցես, և լուծք ջորեաց ձգիցեն»․ անգ. ԻԳ. Ցորդ. էջ 377։ Ուղղելի է «ի կառս բարձրոյն նստիցես»։ — «Եւ եթէ այնմ՝ չհաւատայցես, սորա ինչ իրօք ու՞ր պհանգամանս հանդերձելոցն»․ Բ. Թ. էջ 526։ Ուղղելի «ոտիք ինչ իրօք»։

«Զի տան ուրեք զծառայ Նպատքին թէ ոչ նախ փոր-

ձեռացեն, չառնեն իմիք հաւատարիմ». Ոսկեբ. Ա. Տիմ. ԺԱ. էջ 87։ կարդա «չէ է տան ուրեք»։ – Զիշխեն (ծառայքն) աւելի ինչ քան զպէտսն առնուլ, բազում անգամ թերեւս և ոսկւովք քան զչափն». անդ. ԺԶ. Յորդ. էջ 149։ կարդա «ոսկով քան զչափն»։ –«Առ մարգարէիւքն սուտ մարգարէքն, առ առաքելովքն սուտ առաքեալքն, . . . և յայնժամ Թեւդաս և Սիմոն, և Դոսիթէոսն և այլք եւս». անդ. Բ Տիմ. Ը. էջ 243։ կարդա առ Դոսիթէոսն, ինչպէս արդէն բաւ քիչ մ՚առաջ. տես և ի մեկն. կողոս. Թ. էջ 624. «Այս Դոսիթէոսն չէր այնպէս»։

«Մի՛ զտիգս մերկանալ, մի՛ զպյտս ցտել, մ՛ թուխս համակել». Ոսկեբ. Փիլիպ. Գ. Յորդ. էջ 380։ կարդա «մ՛ է թուխս համակել»։

«Եւ ընդ այն զի՞նչ ողորմութիւնն իցէ, ուր զի և առ Տիմո-թէոս գրէ՝ եթէ Զքո անձն սուրբ պահել». Ոսկեբ. կողոս. Ը. էջ 614։ կարդա «զի՞նչ ողորմութիւն իցէ»։

«Քանզի մեք հօր որբոց և յորոնց Նախանձուէ դիպե-ցաք». Սեբեր. Ե. էջ 88։ կարդա «յորոնց է Նախանձուէ»։

«Հրամայեսցես հրովարտակօք (հրովարտակաւք) քարոզ կարդալ թէ գոչթազդ ոչ եթէ զխորհուրդ ինչ արքունի ի վեր եհան, և ոչ թէ վասն այլ ինչ յանցանաց մեռանի, այլ վասն քրիստոնէութեան». վկ. Շմաւոնի եպիսկոպոսի, Սոփերք Հայկականք, Ժ. էջ 35։ կարդա՝ հրովարտակաւ. յաջորդ բառի սկզբան քէն վրիպակաւ կրկնուած է հրովարտակաւի վերջը։

«Իսկ շնորհատուր Հոգւոյն լցեալ զնա, գիտութեանն էր աղբիւրացեալ զամենայն լսելեացն ցուղ ականջացն և սրտից երկրին». Փ. Բիւզանդացի, Գ. ԺԲ. էջ 30։ կարդա լսելեացն ցնցուղ։ Տես և յեղիշէի մեկնութեանն Յեսուայ, Ժ.

էջ 175. «Հարկ է ընդ երկու ցնցուղս ականջաց ի ներքս մտանել, և ընդ ձայնական հնչումն ի սիրտն աղդել» ։ – «Յայնմ ժամանակի խնդէր ելանէր արքայն Արշակ տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնենից». անդ. Դ. բ. էջ 66 ։ կարդա է խնդէր ։

«Ջէ պէտս օգտութեան հաստատեաց զնոսա Արարիչն». Բրս. Վեց. Ե. էջ 90 ։ կարդա չէ է դէր, ինչպէս կը դնէ և Անտոնեան Հարց ընտիր օրինակն ։ – «Կէսքն վտառ վտառ երամ երամ շրջին, և կէսքն ցիր և ցան ի մէջ խորոց ծովուն իբրև մոլեկանս բանդագուշեալս յածեալ սահին». անդ. Է. էջ 139 ։ կարդա «յածեալ սահին», ինչպէս կը դնէ և Անտոնեան Հարց ընտիր օրինակն ։

«Ջի առ քաղաքօքն երկոքումբք և առ ամենայն նահանգաւն նոցունց քաղաքաց՝ անցանէր Ռոդանոս գետ բազում յորդութեամբ ջուրց իւրոց». Եւս. Պատմ. (Ս. Ղազար, 1877) Ե. ա. էջ 322 ։ Ուղղելի Ռոդանոս, գղ. Rhône. Ռէն մուծուած է նախընթաց անցանէր բային պատճառաւ. խակ յէջ 344 ուղիղ կը դրուի Ռոդան. «ընկեցին զնոսա ի Ռոդան գետ որ անցանէր ընդ այն» ։

«Ցնցեկիէլ գրեալ է՝ եթէ Սատակելոց էր Աստուած զտունկն առաջին իբրու զմարդիկ նորդարանօք, և զուարճացուցանէ զայլ մարդիկ՝ որ ի կռապաշտութեան աճեցեալ և ցամաքեալ էին». Եփր. Աւետ. (Ս. Ղազար, 1836) էջ 290 ։ Նոր Հայկազեանն կ՚ուղղէ որդարանօք ։

«Ջոր և ինքն խակ ասէ, եթէ և յետէ նաքարակիտն խնդրեսցի». Ց. Մանդ. Ճառք, ԺԴ. էջ 115 ։ կարդա յետէն ։

«Բայց և հանդչին արդարև ըստ այս մարգարէութեան ոչ ամենեքին, այլ կատարեալքն յառաքինութեան ոգիք».

Մ. Խորեն. Ա. դ: կարդա «ըստ այսմ մարգարէութեան»: -«Այլ եւ տեղի աղխին նորա և ուճնիկ ի կերակուր, փոփոխելով տեղւ ի տեղւոջէ ցբովանդակ ամն». անդ. Բ. ձա: կարդա «տեղւ ի տեղւոջէ», ինչպէս ունին արդէն ուրիշ օրինակք:

«Քանզի և ոչ բարիդ առնելով դոցա՝ կարասցես զիս բարեկամ առանալ, և ոչ չար ինչ առնելով սակս այնորիկ թշնամի». Պատմ. Աղեքս. էջ 93: կարդա բարեկամ: իսկ յէջ 5 «կռոնոս ոսկեղէն» գրուածն ուղղեալ է ոսկեղէն:

«Որպէս եղէք աստուածաբար կենդանացուցիչ մեռելութեանս իմոյ, և յարուցեալ իմ ի միջի արարէք, կամէի թէ զբովանդակ անձնս յարուցեալ էր, և ոչ զկէսս». Ղ. Փարպեցի, Պատմութիւն, էջ 537: իմ աւելորդ է և յաջորդ էջէն շփոթած:

«Նա փրփուր ի բերանոյն արձակիցէ, և սա լոյս նեխեալ ժահահոտութեամբ անըմբերելեաւ լցեալ». Ոսկեբ. ընդդէմ արբեցութեան, Ճառք, էջ 125: կարդա լոյծ:

---

## ՅՕԴՈՒԱԾ Դ

### ՎՐԻՊԱԿՔ ԿԻՏԱԴՐՈՒԹԵԱՆ

Անխափան կիտադրութիւնն ընտիր ձեռագրի մը գըլխաւոր յատկութիւններէն մին կրնայ համարուիլ, վասն զի առանց յարմարութեան դրուած ստորակէտ մը կամ միջակէտ մը, մինչեւ իսկ բութ մը, խօսքին իմաստը կ՚այլայլէ, թէ որ բոլորովին չի խանգարեր: Յաջորդ օրինակք բաւականապէս կը հաստատեն այս ըսածս:

«Եւ որ հարիւրեմեանն մեռանիցի՝ մեղաւոր և անիծեալ կոչեսցի»․ Եսայի, կե․ 20։ Ըստ կարծեաց Նորին Սրբութեան Ամենապատիւ Տ․ Ներսէս Պատրիարքի պիտի ուղղուի այսպէս․ «Եւ որ հարիւրեմեանն մեռանիցի մեղաւոր՝ անիծեալ կոչեսցի»։ Քննելի յայլ Թարգմանութիւնս Եսայեայ մարգարէութեանն։

«Յորժամ սովորեսցի ոք հաւատալ այնպիսի իրաց (կախարդաց), բազում անգամ ըստ խաբեբայից մտաց պատահէ, և բազում անգամ չպատահէ ինչ․ և չպատահելն ոք չնայի, այլ թէ յանկարծ դուն ուրեք դիպիցի։ Այնպիսի ինչ կանխագէտ զօրութիւն առ իս՝ որ հաւատացեալս եմ՝ ած զայնպիսիսն»․ Ոսկեբ․ Բ Տիմ․ Ը․ Յորդ․ էջ 254։ Թուի ուղղելի․ «այլ թէ յանկարծ դուն ուրեք դիպիցի այնպիսի ինչ կանխագէտ զօրութիւն։ Առ իս՝ որ հաւատացեալս եմ՝ ած զայնպիսիսն»։

«Կենաց անուն բազում ինչ նշանակէ, որպէս մահուն։ իսկ են կեանք մարմնոյ, են կեանք և մեղացն»․ Ոսկեբ․ Փիլիպ․ Գ․ էջ 376։ Ուղղելի է․ «կենաց անուն բազում ինչ նշանակէ, որպէս մահուն իսկ․ են կեանք մարմնոյ և այլն»։

«Առ առաքելովքն չէր այնպէս, այլ ստէպ անցանէին զվաղուցն ուսեալովք, և զուսեալսն՝ այլոց վարդապետս կացուցանէին․ և այնպէս կարացին ընդ ամենայն աշխարհ շրջել, եթէ զմեզ ի միում վայրի կապիցէք։ Ո՞րչափ ինչ վարդապետութեամբ կարօտ ոչ կարծիցէք զեղբարսն ձեր որ ի չէնսն և յագարակսն իցեն, նա և զվարդապետսն նոցա․ այլ դուք բեւեռեալ ունիք զիս առ ձեզ»․ Ոսկեբ․ Կողոս․ Թ․ էջ 624։ Ուղղելի է․ «Առ առաքելովքն . . . և այնպէս կարացին ընդ ամենայն աշխարհ շրջել։ Եթէ զմեզ ի միում վայրի կապիցէք, ո՞րչափ ինչ վարդապետութեամբ կարօտ և այլն»։

«Այլա ուրեմն և այնու զանազանեալ զարծ գործեա, և նմանութեամբ ընդ մարմնոյն Քրիստոսի զնմա, զի ընդ երգքօրն խառնուաս չար։ Եւ այն իսկ չար է, զի որոց չէ ինչ մեղուցեալ՝ և մարտնչիցի ոք»։ Ոսկեբ. կոչոս. ԺԱ. Ցարդ. էջ 653։ Ուղղելի է. «զի ընդ երգքօրն խառնուաս։ Չար և այն իսկ չար է և այլն»։

«Ասացիք թէ ոչ տեսանէ Տէր զայս ամենայն, և որ ինչ նման է սոցին բանիցս։ Զայս բանս խօսեցաւ սուրբ ծերունին Դանիէլ»։ Փ. Բիւզանդացի, Գ. ԺԴ. էջ 41։ Ուղղելի է. «Ասացիք թէ ոչ տեսանէ Տէր։ Զայս ամենայն և որ ինչ նման է սոցին բանիցս, զայս բանս խօսեցաւ և այլն»։ Տես նաև ի նոյն գիրս յէջ 79. «Զայս և այսպիսի ինչ, և որ ինչ այսմիկ նման էին բանք, խօսէր հանապազ»։ – «Զայս ամենայն բանս, և որ ինչ այսմ և սմին ինչ նման էին բանք, խօսեցաւ սուրբն Ներսէս»։ էջ 86. Դարձեալ յէջ 92, 197, 217, 258։

«Նստի հանապազ, և խորհի պատասխանս չարեաց և դիպուածս փորձութեանց նախանձորդին։ Ըղձանայ, չքէի մտախորհ յուսամարեալ, և երկնէ փորձս ծննդականս»։ Ց. Մանդ. Ճառք, ԺԳ. էջ 108–109։ Ուղղելի է. «դիպուածս փորձութեանց նախանձորդին ըղձանայ. չքէի մտախորհ և այլն»։

«Զոր յիշատակեսցուք ի կարգի պատմութեանս յորժամ զորդի ի հօրէ ծննդաբանելով աղդարանիցեմք զբովանդակն։ Իսկ զհայաստանեացս նախարարութիւնս, զամենեցուն զսեռն և զցեղն յայտնելով համառօտ, որպէս հաւատոյ ի յունականս մատեանս կայ պատմութիւնս»։ Մ. Խորեն. Ա. ա։ Այս հատուածս կաղ է և մութ՝ պատճառաւ կէտադրութեան և երկու բառերուն մէջ մնացած վերջակէտին. ուղղելի է. «Յորժամ զորդի ի հօրէ ծննդաբանելով աղդարանիցեմք զբովանդակն իսկ զհայաստանեացս նախարարութիւնս և այլն»։

# ԳԼՈՒԽ Բ

## ՄԱՍՆԱՒՈՐ ՔՆՆՈՒԹԻՒՆ

## ՔԱՆԻ ՄԻ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ՆԱԽՆԵԱՑ

*Մինչեւ հիմա խօսեցայ ընդհանուր եւ համառօտ տեսութեամբ անհիմն գաղափարողաց քանի մի տեսակ վրիպակներուն վրայ, որոնց կը պատահինք յաճախ ի ձեռագիրս։ Հիմա խօսքս մասնաւորելով կը մխիմ ի քննութիւն մեր հին մատենագրաց ոմանց հրատարակեալ գրուածոց, եթէ հեղինակութեանց եւ եթէ թարգմանութեանց կարգէն, հաւատարիմ մնալով իմ ծրագրիս. ըսել կ'ուզեմ թէ կը հետազօտեմ միայն այն սխալները որ արդիւնք են թերավարժ գրչաց։ Եթէ դիմենք հին պատմութեան, հին աշխարհագրութեան, հին սովորութեանց եւ բարուց ազգաց, եթէ յայց ելնենք Հայաստանի եւ Հայաստանէն դուրս գտնուած ազգային վանորայից՝ մեր նախնեաց գրուածոց ընտրելագոյն ձեռագիրներ փնտռելու համար, եթէ ձեռք առնունք յոյն եւ ասորի բնագիրներ եւ բաղդատենք մեր երանաշնորհ նախնեաց թարգմանութիւնքը, աներկբայելի է թէ շատ անիմանալի հատուածք պիտի լուսաբանին եւ շատ մ'ալ անհարազատ կամ անյարմար բառեր եւ ասութիւններ պիտի սրբագրուին։ Հետագայ ուղղութիւնք, որ պարզապէս ծնունդ են իմ անդրադարձութեանցս, թերեւս ունենան իրենց յարգը եւ կարեւորութիւնը յաչս հմտից. սիրելի է ինձ կարծելը որ այս ուղղութեանց եթէ ոչ ամէնը՝ գէթ մեծագոյն մասն վաւերանայ կամ հայագիտաց վճռով, կամ ընտիր գրչագրաց ստոյգ եւ հաւաստի վկայութեամբք։*

*Ահաւասիկ անուանք այն մատենագրութեանց զորս կը քննեմ ի ստորեւ յաջորդաբար.*

*Ա. Եզնիկ Կողբացի, Ընդդէմ աղանդոց* (*Ս. Ղազար, Բ տպագր.* 1863)։

Բ. Յոհան Ոսկեբերան, Մեկնութիւն Մատթէի Աւետարանին, 3 հատոր (Ս. Ղազար, 1826)։

— Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, 2 հատոր. Բ հատորոյն վերջը դրուած են Ոսկեբերանի Երկրայական ճառքն (Ս. Ղազար, 1862)։

— Ճառք (Ս. Ղազար, 1861)։

Գ. Սեբերիանոս Եմեսացի, Ճառք (Ս. Ղազար, 1830)։

Դ. Մարութա, Ճառ ի վկայսն Արեւելից, ի կարգի Սոփերաց Հայկականաց, հատոր Ի (Ս. Ղազար, 1854)։

Ե. Ագաթանգեղոս, Պատմութիւն (Ս. Ղազար, Բ տպագր. 1862)։

Զ. Փաւստոս Բիւզանդացի, Պատմութիւն (Ս. Ղազար, 1832)։

Է. Բարսեղ Կեսարացի, Վեցօրեայ (Ս. Ղազար, 1830)։

Ը. Յոհան Մանդակունի, Ճառք (Ս. Ղազար, Բ տպագր. 1860)։

Թ. Մովսէս Խորենացի, Պատմութիւն, Մեծադիր (Ս. Ղազար, Բ տպագր. 1865)։

— Գիրք Պիտոյից։

Ժ. Փիլոն Եբրայեցի, Յաղագս Յաւաջախնամութեան (Ս. Ղազար, 1822)։

— Յաղագս բան ունել և անասուն կենդանեացդ։

ԺԱ. Պատմութիւն Աղեքսանդրի (Ս. Ղազար, 1842)։

ԺԲ. Եղիշէ վարդապետ, Ճառք (Ս. Ղազար, Բ տպագր. 1859)։

ԺԳ. Ղազար Փարպեցի, Պատմութիւն (Ս. Ղազար, Բ տպագր. 1873)։

— Թուղթ առ Վահան Մամիկոնեան։

ԺԴ. Սեբէոս եպիսկոպոս, Պատմութիւն ի Հերակլն (Կ. Պօլիս, 1851). Նոր տպագրութիւն ի ձեռն Պ. Քերովբէի Պատկանեան (Պետերբուրգ, 1879)։

ԺԵ. Թովմա Արծրունի, Պատմութիւն (Կ. Պօլիս, 1852)։

ԺԶ. Վարք Հարանց, 2 հատոր (Ս. Ղազար, 1855)։

Համբուրեալ քեզ վաճառաց տարաց, և թէ վաճառեաց ինք զարգեալ անդ եղեալ էին, թուի թէ ասելի զյաղթութիւնն։ Ղ՝ փափ-ալերի, Պատմութիւն, էջ 483. իսկ յէջ 259 կ'ըսէ. «Տեսանե քան, մի յաճախեսցեն միտք քո յայդ խորհուրդ»։

2. «Ջորոց մերաւորացն հոգին յիմարեալ է ընդ անձինս, զարմանալի և ուշիմ և զայլոց ալխտանացուաց. և չչարեաց հոգին յիմարել միայն, զդայլոց և զդաղանաց և զձկանց մեասակարաց». էջ 132. Անկեալ ուշիմ։

3. «Եւ ոչ յորժամ զաղխտանաքանի ներուք զինքն յազախտառանս հաճեալ ունեանիցէ որ, և առնցէ՝ թէ կարաստանելոց է զինչսն հայրենիս, նա ինչ իցէ պատճառաւ փառձեւոյ ընչիցն». էջ 184. Հաւրեմե փարդաւոր է համարել ներինքն կը կարծէ նաև Հ. Արսէնի Բագրատունի որ կ'ըսէ գաղ. -Հայ-Տճն. բառարանին մէջ se Débaucher բառին առջեւ կը դնէ. «Ցանկացողութիւն յաղխտանաս դառնեալ». Եղիշեայ հատուածին մէջ դրուած է Կոստանդինոսի հեռաւորեալ հատուածը «ի Քանանացին և ի Փիլիստացին» հատուէն, Հ. Բ. էջ 709. «Թէ կանխաւ գիտիցեմ զչարն թէ լինելոց է չար, ոչ նախագիտութիւնն իմ արաց զնա չար. որպէս ինչ ասեմ. եթէ տեսանիցեմ բազում անգամ զայր որ երիտասարդ ի հօրէ մնացեալ ժառանգաւոր յոլով ընչից, և տեսանիցեմ զնա ի խրատուէ ի բաց կացեալ և փափկացելոցն կենակից, ի տեսարանս յորդորեալ, ի ձիամարտութիւնս պարապեալ, վաղվաղակի ի տեսանելն ասեմ. սա ի սուղ ժամանակի ցրուէ զինչս իւր, սա զհայրենի ժառանգութիւնն կորուսանէ. ոչ վասն զի յառաջագոյն տեսի՝ տպաւորեցի ինչ, այլ ի բարուցն նշանակեցի»։

4. «Կէսն ի փառս և կէսն յանարգանս, և մի ըներն յանուշս և միւս ըներն ի գժոխս». էջ 210. Թուի թէ կարդալու է ըներ, այսինքն հողմ։ Թէր բառը ուրիշ երկու տեղ

կը գործածէ Եզնիկ. «Աստուած ընտրեաց զբարին ի մի Նէր, և զչարն մրրախառն ի միւս կողմն». էջ 27. – «Ցորմէ կուսէ արեգակն իցէ, յայնժմ Նէրէ սկսանի ի նմա լոյս ծնանել». էջ 200։ Սրբոյն Կիւրղի Աղեքսանդրացւոյ Թուոց մեկնութեան մէջ, որ կը կարծուի թարգմանեալ յԵզնըկայ, գրուած է. «Տայ նմա խօսել զինչ ինքն կամեցի, և լինել ի Նէրէ իւրայելի»։

5. «Զի յորժամ զնորա մեծարոյ հարկին գտանեցուք, և հանցուք զնա յաչաց իւրոցն խաբեցելոց, ապա ցուցցուք թէ ո՛վ Աստուած է, և զի՛նչ նորա արարածք». էջ 241։ Թուի ուղղելի մեծարոյ հարծէք. իմաստն է՝ «երբ անոր պատիւը կամ համբաւը (իբր գղ. Autorité, Crédit) կտրենք, և իրմէ խաբուածներուն աչքէն հանենք զինքը եայլն»։ Նախնեաց ուրիշ մատենագրութեան մը մէջ կը գտնենք «ի հարծիս մեծարանաց ուրուք փաստակար լինել» ոճը, որ կը նշանակէ՝ մէկուն պատիւը կամ աղէկ անունը կտրել։

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 16, 27, 28։ Տես և 41 երորդ ուղղութիւնը։

## Բ. ՅՈՀԱՆ ՈՍԿԵԲԵՐԱՆ

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Մատթէի մեկնութեան Բ գրոց ԺԲ երրորդ ճառին կատարածն եւ յորդորակին սկիզբն թերի է յօրինակին Ս. Ղազարու։ Հ. Արսէն Բագրատունի թարգմանած է այդ թերի մասը, զոր կը ծանուցանէ թէ ի յառաջաբանին եւ թէ ի կարգին մասնաւոր ծանօթութեամբ. տես էջ 565։ Նոր Հայկազեան եւ Առձեռն Բառարանաց մէջ յիշատակեալ Հելլենագիր ածականն, ինչպէս եւ Քաղաքովին մակբայն, զոր կը յիշէ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութիւնն, գիւտք են Հ. Արսենի. գոնէ ես ցարդ նախնեաց մէջ չեմ գտած այս երկու բառերը։

6. (1) «Խուժդուժքն մինչչեւ տեսեալ էր զնա, այնչափ ճանապարհս հատին վասն նորա. դու և ոչ յետ տեսանելոյ՝ նախանձաւոր լինիցիս նոցա, այլ թողեալ զնա յետ տեսանելոյն՝ ընթանաս զի զկնան հալածես տեսանիցես». Ա. է. Յորդ. էջ 107։ Կարելի՞ է կարդալ զկման, այսինքն զկմաւն. Նախնեաց Քերթողական բառերու կարգին մէջ կը յիշուի. «Մեկն. կատակք»։

7. (2) «Զի ի ճգունմն բազում ինչ է որ փոփոխէ զցաւսն. բազմացն խրախոյսք, մօտակացացն յարդանք». Ա. ժե. էջ 220. ի ծանօթութեան կ'ըսուի. «յոյնն «փոփոխէ»»։ Ուղղելի է փոփոքէ։ Փոփոքեմ, որ կը նշանակէ մխիթարել, դիւրել, և փոփոքանք, որ ըսել է մխիթարութիւն, կը գտնուին նաեւ Ոսկեբերանի Եսայեայ մեկնութեան մէջ. «Կամի Տէր ի ձեռն նորա փոփոքել ի ցաւոց անձինն նորա... փոփոքել ի ցաւոց անձինն իւրոյ, զի բազմացն հաւատք՝ փոփոքանք լինիցին ցաւոց նորա... զցաւսն փոփոքեն զյարութիւնն յայտ առնէ»։

8. (3) «Զոր օրինակ վրէժ խնդրել՝ զամենայն ինչ հակառակ երկոցունց գործէ... և զպատիւն բոցն եւս բորբոքէ; և բազում անգամ ի մահ եւս տայ մատնել, յորժամ եւս յառաջ մթերիցին «ոխքն»». Ա. ժը. էջ 286։ Ուղղելի է ոխն։ Գ. ճառին յորդորակին մէջ կ'ըսէ, էջ 57. «Զարարիցես զմարմինդ իբրեւ զջորի, և ոխս մթերեալ պահիցես իբրեւ զուղտ»։ Ուրիշ տեղ կ'ըսուի. «Ոչ մթերել ոխս», «Ոխս մթերեալս ունէին». տես նաեւ Ղ. Փարպեցւոյ Պատմութեան մէջ, երես 173. «վասն մթերից առաջին ոխակալութեանն զոր ունէին առ միմեանս իշխանն Սիւնեաց Վասակ և տէրն Ամատունեաց Վահան»։

9. (4) «Զի թէ դու Հրեայ անուանեալ ես, ասէ, և հրահանգեցուցեալ ես յօրէնսն». Ա. իդ. էջ 379. ի ծանօթու-

*թեան կ'ըսուի. «ի լուս. հրահանգուցեալ»։ Թուի ուղղելի յանգուցեալ կամ յանկուցեալ, ինչպէս կ'ըսուի Ոսկեբերանի Յոհաննու մեկնութեան մէջ, Բ. գ. «Հրէայ անուանեալ ես, և յանկուցեալ ես յօրէնսն»։ իսկ ի մեկնութեան Հռովմայեցւոց նոյն սուրբ վարդապետին, Ջ. էջ* 8, *կ'ըսուի. «Յեցեալ ես յօրէնսն», համեմատ բնագրին. տես Հռ. Բ.* 17։

10. (5) *«Ոչ եթէ բնութեանդ ինչ մեղադրութիւն է, և ոչ իրացն կարգի, այլ մեզ որ զամենայն վէրոյ ի վէրոյ հարեալ փղծկեալ, որ մեղկիմք». Բ. գ. Յորդ. էջ* 478. *յէջ* 417 *կ'ըսէ. «Զամենայն վէր ի վէրոյ հարեալ եղծանեն»։ Թողլով վէրոյ ի վէրոյ ընթերցուածը որ խանգարեալ կ'երեւի, փղծկեալ ուղղելի է փծկեալ, այսինքն եղծանեալ։ Նոյնպէս յաջորդ վկայութեան մէջ. «Եթէ զայս կորուսանիցեմք, զամենայն ինչ զմեր փղծկեալ եղծանեմք». Ոսկեբ. Հռ. ԺԴ. էջ* 182, *ուղղելի է փծկեալ, ինչպէս կը գրուի ուրիշ տեղ. «Վասն այնորիկ ամենայն ինչ եղծաւ, ամենայն կարգք փծկեցան». Ոսկեբ. Ա. Տիմ. Թ. էջ* 72. – *«Վասն այսորիկ ամենայն ինչ մեր ի վայր կործանեցաւ, և ամենայն ինչ եղծաւ փծկեցաւ». Անդ. ԺՋ. Յորդ. էջ* 150. – *«Յորժամ սա զամենայնն կազմիցէ և նա զբնաւ փծկեցէ, նորա է յաղթութիւն և ոչ սորա». Ոսկեբ. Եփես. ԻԲ. Յորդ. էջ* 922։

11. (6) *«Զի մի և մեզ Սոդոմայ իրքն պահեցին, և Գոմորայ անցք անցանիցեն». Բ. ժա. Յորդ. էջ* 555։ *Թերեւս ուղղագոյն ընթերցուածն ըլլայ պատահեցին։ իսկ պատահել գրուած փոխանակ պահելոյ տես* 89 *երորդ ուղղութիւնը։*

*Տես ուրիշ ուղղութիւնները էջ* 6, 17, 21, 24, 29։

## ՆՈՐԻՆ ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ԹՂԹՈՑՆ ՊՕՂՈՍԻ

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ Ա. ԹՂԹՈՑՆ

12. (1) *«Քանզի շատախօս [illegible] է ազգն (կանանց),*

վասն այնորիկ ամենայն իւիք ցածուցանէ»․ Թ․ էջ 72․ ի ծանօթութեան կ'ըսուի․ «զանորոշ դրութիւն յօրինակին մարթ էր ընթեռնուլ և շոշափ»։ Կարելի՞ է արդեօք շոշափն ալ կարդալ շոշոշափ։

13․ (2) «Եւ այն զի՞նչ իցէ առ այժմու չանանօք»․ Թ․ էջ 72․ ի ծանօթութեան կ'ըսուի․ «յոյնն չանամբք»։ Ուղղելի է չանանօք, գործիական հոլով կանանի բառին։

14․ (3) «Եթէ որ ուսուցանել պարտ իցէ՝ հրաման տայցես, ծառը կայցես, նոյնպէս եթէ ուր հրաման պարտ իցէ տալ՝ ուսուցանիցես, զնոյն ամօթ կրես»․ Ժգ․ էջ 105։ Ուղղելի ուր, ինչպէս քիչ մը ետքը կ'ըսէ։ Ձեռագրաց մէջ շատ անգամ որ և ուր, ուր և որ այլ ընդ այլոյ կը դրուին․ ահաւասիկ քանի մի օրինակք․ «Բաժակն ո՞ր է, ասեն․ բաժակն մնաց, զբաժակն չմեկնեաց»․ Սեբեր․ Թ․ էջ 164․ ուղղելի ո՞ւր․ — «Արարեալ ի պէտս ողջակիզացն հինգ գուբս ջրոց, որ զփորոտին լուանային և զճարպն սրբէին»․ Ոսկեբ․ յՄնդամայրն, Հ․ Բ․ էջ 849․ ուղղելի ուր․ — «Ուր գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց անցանէ ընդ խոխոմաձիգս (կարդա ընդ խոխոմ ձիգս) և նեղս»․ Մ․ Խորեն․ Ա․ ժբ․ ուղղելի որ․ — «Գնացեալ ի գաւառն Մոկաց, ․ ․ ․ որ և մեծ սքանչելիս կատարեաց Աստուած ի ձեռն նոցա պատուական սուրբ խաչին»․ Մ․ Խորեն․ Պատմ․ Հռիփս․ էջ 300․ ուղղելի ուր․ — «Առ եզերբն Ղեկովբ գետոյ արարեալ զիւր զօրու բանակատեղս, ուր և աստուածային տեսչութեան լինէր արժանի»․ Ղ․ Փարպեցի, Պատմութիւն, էջ 11․ ուղղելի որ․ — «Եւ դարձեալ եթէ այլուր եւս դիպեսցի ժամաբաշխին և բոպէահամար՝ արտաքոյ տանն ուր ծնաւ մանուկն»․ Բրս․ Վեց․ Զ․ էջ 118․ ուղղելի որ․ — «Մեկնեցան խաղային գնացին միանգամայն երթեալ ի տեղին ուր նկատեցաւ նոցա ի բնակութիւն հրամանաւ Աստուծոյ»․ անդ․ Դ․ էջ 73․ ուղղելի որ․ — «Եւ պարգեւ ընդ պարգեւի շնորհէր նմա Սո-

ղոմին հանդերձ բազում իրօք, և վայրս ինչ ի Գալիլեացւոց աշխարհէին ուր Քաբուղայն կոչի»։ Եւս. Քր. Հ. Ա. էջ 174. ուղղելի ոչ, ինչպէս կ՚ակնարկէ արդէն տպագիրն. – «Գաւառս պարգեւելով զՂրձն, որ շուրջ զնովաւ, և զլեառն Ցաւրոս, ուր և Սիմ, և զկղզեաւսն ամենայն». Մ. Խորեն. Բ. Ը. Թուի ոչ։ Վ. Լանկլուա կը թարգմանէ. «Le mont Taurus, avec le Sim». իսկ Լըվայլեան ալ Ֆլոռիվալ՝ «Le mont Taurus, y compris le Sim»։ Թերևս ուղղագոյն թարգմանութիւնն ըլլայ. «Le mont Taurus, qui s'appelle aussi Sim»։

15. (4) «Ցեսցուք զինչ իցէ մարդ։ Արտաքինքն ասեն. եւէ է խօսուն, մահկանացու, միտաց և հանճարոյ ընդունիչ». ԺԳ. Ցորդ. էջ 112։ Ուղղելի է եւէ, դր. Animal։ «Զայր և զկին մի ինչ եւէ գիտէ կոչել, և ոչ ուրեք որոչէ ազգս յազգաց՝ յօրէնսդրութեանն». Ոսկեբ. Մատթ. Ա. ԺԷ. էջ 270. – «Մարդ է կենդանի մեծ և հրաշալի, քան զամենայն ստացուածս Աստուծոյ պատուականագոյն». Ոսկեբ. Ճառք. էջ 66։

16. (5) «Բարւո՞ք է մարգարիտ, այլ ի միտ առ ուջուր ծովականի, և ի խոր ծովու ընկեցեալ կայր վայրապար. բարւո՞ք է ոսկի, բարւո՞ք է արծաթ, այլ ի միտ առ զի հող և մոխիր էին և են». ԺԷ. Ցորդ. էջ 159։ Ուղղելի թուի «ուջուր ծովական է», ինչպէս քիչ մը ետքը կ՚ըսէ «զի հող և մոխիր էին և են»։

17. (6) «Լիրբ լեր, ասէ, և անամօթ և ժէր և յանդուգն». ԺԸ. Ցորդ. էջ 167։ Ուղղելի է ժէտ, ինչպէս կ՚ըսուի Ոսկեբերանի Բ. Կորնթացւոց մեկնութեան մէջ. «Ցորժամ լիրբ և ժէտ իցես իբրև զշուն». և յեւսեբեայ Քրոնիկոնին, Հ. Ա. էջ 4. «Զի զորս լրբել ժտել յայնպիսի դատարկ քննութիւն յօժարեն՝ արգելուցու»։ Լիրբ և ժէտ, լրբել ժտել ի միասին գործածուած են։

Տես ուրիշ ուղղութիւններ և էջ 4, 17, 30։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ Բ ԹՂԹՈՑՆ

18. (1) «*Մի՛ տագնապիցիս, ասէ, ի ժամանակի է վերջոյ վերջոյ ելիցդ*»։ *Ա. Թուղթ.* էջ 173։ *Թուի ուղղելի վերջոյ է վերջոյ ելիցդ, ինչպէս կ'ըսուի ի մեկնութեանն Մատթէի. «Մի տագնապեսցուք ի ժամանակի վերջոյ է վերջոյ հասանելոյ»*։ *Ա. Ժ.* էջ 152։

19. (2) «*Զամենայն Աստուած դարմանէ, և բնաւին է նոյն է խնամակալ*»։ *Ը. Թուղթ.* էջ 252։ *Ուղղելի է «բնաւին նոյն է խնամակալ»*։

*Տես ուրիշ ուղղութիւններ և էջ* 7, 30, 33։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌ ՏԻՏՈՍ ԹՂԹՈՑՆ

20. (1) «*Եւ եթէ զտունն ատնուռ յուրայոց արկանեմ, այլ (այն ?) ի վեր է քան զամենայն ըլկանս*»։ *Զ. Թուղթ.* էջ 338։ *Թուի ուղղելի յուրայոց, բացառական հոլով Արարք բառի։ Եփեսացւոց թղթոյն մեկնութեան մէջ կ'ըսէ. «Եթէ մշակ ոք էր և չապականէր ինչ և չհատանէր յուրայոցն, ոչ նենգէր և ոչ գողանայր և այլում տայր»*։ *ԺԶ.* էջ 839։ *Տես և ի Մատթէի մեկնութեանն արկանել յընչից ոճը. «Եթէ յընչից կամիցի արկանել, նախ քան զնորա սպառնալիսն առեր հրաման արհամարհել զինչսն»*։ *Ա. իդ.* էջ 384։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌ ՓԻԼԻՊԵՑԻՍ ԹՂԹՈՑՆ

21. (1) «*Գողանայիր զաղքատաց, և զի մի՛ յեւս չարիս մտաբերիցես՝ և այն մեզ համբերէր, և սակայն զքեզ ոչ հաւանեցոյց*»։ *Զ. Թուղթ.* էջ 413։ *Ուղղելի է՝ այնմ եւս*։ *Յոր հակառակ Զենոբայ Ասորւոյ Պատմութեան մէջ (Մ. Ղազար, 1832) կը գրուի մեզ եւս փոխանակ գրելու մեզ. «Այլ ըստ սիրոյ մտերմութեանդ քո զոր ունիս առ մեզ, աղա-*

չեմ գիր մ ե․․ ընձայս այլ մատուցանես ինձ ». էջ 9. կրնայ ըսուիլ մ ե․․, բայց ընտրելագոյն կը համարիմ մ․․ ընթեր- ցուածը. քննելի ի ձեռագիրս։

22. (2) «Մի՛տ դիք ոսկւոյ ինչ ճշդիւ և գտակաւ վարս ունէին, և իբրեւ նախանձաւորէք գործոց և օրինակս և օրէնս չըն- չաւորս ». ԺԲ. Ցորդ. էջ 485. կարծեմ ասկէ առած կը գրէ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութիւնն. «Նախանձաւորէք: առաջնոց օրինակ եղող»։ Ըստ իս ուղղելի է «նախանձաւոր բնդ գործոց», ինչպէս քիչ մը վերը կ'ըսէ. «նախանձաւոր բնդ գործոց և զպատկերն ողջոյն նկարէին»։ Տես դարձեալ նախանձաւոր գործ+, մեկն. Բ Տիմ. Ը. էջ 245. Տիտ. Դ. էջ 313. Եփես. ԺԵ. էջ 836։

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 30, 33 ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿՈՂՈՍԱՑԻՈՑ ԹՂԹՈՑՆ

Այս Թղթոյս մեկնութեան մէջ երկու բառեր պատուաս- տուած են, զորս օտար կը համարիմ եղծըկեան հայկաբանու- թենէն որով գրեալ են Ոսկեբերանի Պօղոսի Թղթոց մեծագոյն մասին մեկնութիւնքն. այս բառերս են Գերազանցեմ եւ Աստանօր։ Ի ճառին յորդորակին մէջ, երես 582, կը կարդանք. «Տես զհակառակ միմեանց աքանչելիսն որ զմիմեանս գերազանցեն». ի ծանօթութեան կ'ըսուի. «խանգարեալ էր բառդ յօրինակին. եդաւ ըստ յունին»։ Չեմ կարծեր որ հոս Թարգմանիչն Գերա- զանցեմ բայ գործածած ըլլայ, որ ուրիշ ամէն տեղ կ'ըսէ անցա- նել, անցանել զանցանել, գէլ. տես օրինակի համար Փիլիպ. Է. Ցորդ. էջ 430. «Այլ Թերեւս պէսպէս արուեստիւք (հպար- տանայցես). եւ ո՞վ ոք յայնմ զմեղուօք զճարտարկօք անցա- նիցէ... այլ Թերեւս բարձկ ինչ հանդերձիւք. այնու սարդք իսկ անցանեն զանցանեն զքեւ. այլ Թերեւս ոտի՞ց արագու- Թեամբ. եւ այնու եւս անասունք գէլն»։ Ոսկեբերանի Յոհան- նու մեկնութեան մէջ կը գտնուին Գերազանցէի եւ Գերազանցու- Թիւն, բայց չեմ կրնար ըսել Թէ ոսկեղէն դարու Թարգմանու-

թեան բառեր են առանք թէ Գրիգոր Ակայասիրի, աշակերտին՝ Նիրակոս վարդապետին՝ թարգմանութեանը։ Իսկ Է ճառին մէջ, երես 594, կը կարդանք. «Քանզի ոմանք աստանօր դնեն զատիւքսն». ի ծանօթութեան կ՚ըսուի. «յօրինակին գրեալ է աստանօյ». խանգարեալ բառ կ՚երեւի աստանօյ, բայց ես չեմ կրնար ընդունիլ որ ուղիղ ընթերցուածն ըլլայ աստանօր, բառ՝ եթէ չեմ սխալիր՝ բոլորովին անծանօթ եզնըկեան հայկաբանից։

Տես եւ Բարսղի Վեցօրէին քննութեան մէջ Ներքերծեմ, Ծարքառանսքին, Նսորաքոյս, Նշնափեսոյ եւ Ախանդանէ բառերուն համար ըրած դիտողութիւնս։

23. (1) «Քանզի չէ ընդդէմ ի համար, զնոսա որ զակամայ չարչարանսն կրիցեն, և որ զկամաւ, զերծուցանել ի վշտաց. զի նա ողորմելոյ արժանի է; և սա ատելութեան». Դ. էջ 563։ Ուղղելի ընդ մի համար, ինչպէս կ՚ըսէ ստէպ ուրիշ տեղ, զոր օրինակ ի մեկնութեան Ա Տիմ. ԺԴ. էջ 118. «Քանզի չէ ընդ մի համար զիւրն անասնս առնել և զօտարն»։

24. (2) «Այլ յորժամ ի վշտի լիցեմք և գոհանայցեմք, այն է զարմանալի։ Յայնժամ ի նմին վիշտսն այլք հայհոյիցեն և բամբասիցեն և մեք գոհանայցեմք, տես որչափ առաքինութիւն է». Ը. Յորդ. էջ 616։ Ուղղելի թուի յորժամ, ինչպէս ըսաւ քիչ մ՚առաջ։

25. (3) «Աղօտ յամենայն հոգւոց, բերկրեալ և ընդ երկինս եւեթ հայի, անդր ճեպեալ արձակեալ թռչել». Ժ. Յորդ. էջ 640։ Աղօտ բառի համար կ՚ըսուի ի ծանօթութեան. «յօրինակին գրեալ էր յաղօ. եղաւ ըստ յունին»։ Թուի թէ յաղօ կրճատեալ մնացած է փոխանակ գրելու յաղահով. տես ի Մատթէի մեկնութեան Ոսկեբերանի. «Որ ի հոգւոց յաղահով լիցէ». «յաղահով ի մըրկէ». իսկ ճեպեալ թուի ուղղելի ճեպել։ — Ահաւասիկ քանի մ՚ուրիշ օրինակներ կրճատեալ բառերու. «Եւ զարթուցեալք դարձ ի քուն կամին մտանել».

Ոսկեբ. ի Զաքէոս, Հ. Բ. էջ 735։ կարդա գոյնու. — «Վասն զի ոչխար անդրոշմ է երախայն, և ամենատուն ամայի և ... գրաց օթեւան ամենեցուն»։ Ոսկեբ. Ճառք. էջ 153։ կարդա ..., ինչպէս կ'ըսէ քիչ մը եաքը. «զամենատունն զայն զամայի, ... գրաց». — «Եւ ոչ ի արտաքին դիւթիւքն վարին, այլ և անձանց եւս ուսուցս ուսանին»։ Յ. Մանդ. Ճառք, ԻԶ. էջ 193։ կարդա ...։

Ցես ուրիշ ուղղութիւնները էջ 30, 33, 34. տես և 41 երորդ ուղղութիւնը։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՓԵՍԱՑԻՈՑ ԹՂԹՈՑՆ

Ներսէս Լամբրոնացի իւր Պատարագի մեկնութեան մէջ (Ս. Ղազար, 1847) երես 487, ամբողջապէս կը դնէ Գ ճառին յորդորակը, զոր եւ կը մեկնէ հատուած հատուած։ Կան քանի մի ընթերցուածք որ ընտրելագոյն կը թուին յօրինակին Լամբրոնացւոյ. յիշեմ միայն երկուքը։

Ա. «Ձեռք նորա ի բարերարութիւնս համբերեալ, օգուտ եւեթ գործէին». էջ 699. Լամբրոնացի՝ համոլ ջերեալ. էջ 488։ Բ. «Մի ինչ յայն ապաստան լինիցիմք եթէ միանգամ եղեաք անդամք մարմնոյն. որ չիցէ պիտանացու մարմնոյն, ի բաց կտրի։ Իսկ կամացն անդամ եթէ չյարիցի ի մարմինն, որպիսի ինչ չարչարանս կրիցէ»։ էջ 700։ Թերի է բանն, զոր Լամբրոնացւոյ օրինակն այսպէս կը լրացնէ. «Մի ինչ յայն ապաստան լինիցիմք եթէ միանգամ եղեաք անդամք մարմնոյն. Եւ է բնութեան անդամն որ չիցէ պիտանացու մարմնոյն՝ ի բաց կտրի, իսկ կամացն անդամ եւայլն»։ էջ 489։

26. (1) «Մանաւանդ եթէ սպանութիւն գործեալ իցէ, և ի վերոյ ելցէ, այն իսկ միայն բաւական է զնա կորուսանել»։ Դ. Յորդ. էջ 712։ Ուղղելի է ի վեր ելցէ, այսինքն յայտնուի, ինչպէս կ'ըսէ ի յորդորակի Թ ճառին, էջ 776. «Քանզի այնու փախչի ամենայն բարեկամ՝ եթէ խորհուրդ ինչ ի վեր ելցէ»։

27. (2) «Եթէ ոչ հիւսանց ձեռաք և կամ այլոց արուեստաւորաց չինջուցանիցեն վճուրաբեան Նորա (հրոյն), ոչ զիւրաբեկամս ճանաչէ և ոչ զԹշնամիս ընտրէ». Ժբ. էջ 802. Թուի ուղղելի վճուրաբեան:

28. (3) «Այլ յորժամ լսիցես երկիւղ, որ ինչ ասէ և ապաշխարան իցէ՝ երկիւղ դայն պահանջեսջիր, մի՛ խրտչիր յաղախնոյ, քանզի մարմին քո է». Ի. էջ 889. Ուղղելի յ...:
Տես ուրիշ ուղղութիւն մը և յէջ 4:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ ԹՂԹՈՅՆ

29. (1) «Եւ արդ որո՞վ պատասխանատուութեան արժանի գտանիցիմք, յորժամ Նորա հալածէին և հանդերձեալքն զմահ հալածական առնէին, մեք և ոչ աղօթք անգամ զախտակարեն յաջողացուցանել». Ը. Յորդ. էջ 63. Թուի ուղղելի յաջողացուցանել, այսինքն մարել, փարատել: Նոյնպէս Բարսղի վեցօրէին Ե ճառին մէջ, երես 89, ուր կ'ըսուի «Ջի եղիցին ցածուցիչք և յաջողացուցիչք ցաւոց մերոց», Միտանեան Հայրը ընտիր օրինակին կը գտնէ յաջողեցէ:

30. (2) «Ջի ոչ եթէ կերակուր ընդ բերան փակէ, այլ բանս հայհոյութեան, Թշնամանաց, պատերազմաց, մահուան, բիւր ինչ անդուստ ի ներքուստ (կարդա՝ ի վերուստ այսինքն յերկնուստ, ինչպես կ'ըսէ յոյնն) կազմեալ փայլատակունս՝ գլխոյն խաղ հանէ». ԺԳ. Յորդ. էջ 165. Ուղղելի է գլխոյն եղեալն: Տես և ԻԴ ճառին յորդորակին մէջ, երես 346. «Բազում ինչ գլխոյն եղեալ բանս կուտէ». Նոյնպէս ի մեկնութեան Եբրայեցւոց Թղթոյն, Ե. էջ 483. «Յորժամ աղողեցի մեծութիւն չարին, գլխոյն եղեալ է»:

31. (3) «Եւ յետ այսորիկ զամենայն փիլիսոփայական առանդութիւնն հանդերձ աշխարհաւս այսուիկ ծանոյց

նոցա, որպէս զսարդխոստայն իմն և զողայոյ ղուփուփմանն». ԺԴ. էջ 177։ Թուի ուղղելի ղուփուփմանն։ Նոյնպէս ի Մատթէի մեկնութեան, Գ. ԺԴ. էջ 55, «Քանզի զայնպիսի ինչ խորհել՝ կարի իսկ ղուփուփութիւն է», կը կարդամ ղուփուփութիւն, համդոյն Նոր Հայկազեանին։ Առձեռն Բառարանին երկրորդ տպագրութեան մէջ եթէ այս երկու վկայութիւններէն առած կը դրուին Ջուփուփութիւն և Ջուփուփումն բառերն, ջնջելի կը համարիմ։

32.(4) «Զքառասուն մանկունս զայնոսիկ որք գազանակուրք եղեն և ոչ ի տգեղծ հասակէ անտի գտին ներբողման». ԻԵ. Յորդ. էջ 360։ Ուղղելի ներբողման. Ոսկեբերանի Թարգմանիչն ուրիշ տեղ ստէպ կ'ըսէ ներբողութեան. «Զի՞նչ պատասխանատուութիւն ունիցիմք, ասէ աստ. զ՞ ներբողութեան». Ոսկեբ. Մատթ. Ա. Ը. էջ 122. —«Որո՞ւմ ներբողութեան լինիցիմք արժանի». անդ. Թ. Յորդ. էջ 136. — «Մեզ որպիսի՞ ինչ ներբողութեան կայցէ». անդ. ԺԸ. էջ 283։

33.(5) «Զպօղոս յանկարծակի ի դրանէ իւրմէ համդերձ Պետրոսիւ յափշտակեալ ընդ առաջ Տեառն». ԼԲ. էջ 419. ի ծանօթութեան կ'ըսուի. «յոյնն ի փողանէ»։ Թերևս ի դրանէ սխալմամբ գրուած ըլլայ փոխանակ ի դրէ. դէր գերեզմանի մաքով շատ տեղ ըսուած է ի նախնեաց։

Տես ուրիշ ուղղութիւն մը յէջ 42։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Ոսկեբերանի քանի մի գրուածոց կրկին թարգմանութիւն ունինք ի նախնեաց, մին ոսկեղինիկ գրչաւ Եզնըկայ դասուն, միւսն՝ յետին դարերու գործ։ Այսպէս է Ս. Յոհաննու Աւետարանին մեկնութիւնն, յորմէ միայն հատակոտորք կը յիշուին Բ հատորոյն 579—609 երեսներուն մէջ, եւ Բ. ճառն ի Յովբեան, հատոր Գ, երես 26—45. փոխանակ ոսկեղինիկ թարգմանութեան պատուաւոր տեղ շնորհելու եւ յետին դարուց թարգ-

մանութիւնը մանր գրով ամփոփելու ի ստորեւ իջիցն, երկուանգամ ալ հակառակն եղած է։ Կան ուրիշ երեք ճառք Ոսկեբերանի, Ա. ի սուրբ Խաչն Քրիստոսի, Հ. Բ. էջ 762. Բ. յղ. Ապաշխարութեան, Հ. Բ. էջ 861. Գ. միւս եւս ճառ յղ. Ապաշխարութեան, ճառք, էջ 46, որք յայտնապէս կը կրեն ընտիր հայկաբանութեան կնիքը, թէպէտ բաւականապէս խանգարեալ յայլ եւ այլ ճառընտիրս։ Փափագելի էր որ այս երեք ճառերուն հնագոյն օրինակներն փնտռուէին եւ բոլորովին զատելով միւս ճառերէն՝ առանձին փունջ մը կազմուէր։

Խօսքիս կարգն կը բերէ որ այսպիսի դիտողութիւն մ'ընեմ նաեւ Ողոմպիանու Առակաց Թարգմանութեան վրայ, որ հրատարակեալ են Մխիթար Գոշի Առակաց հետ։ Այս թարգմանութեան ժամանակն յայտնի չէ, բայց կրնանք կարծել որ Թ դարէն առաջ է, վասն զի Թովմա Արծրունի իւր Պատմութեան մէջ, Գ. ա. էջ 137, կը յիշէ ԺԳ առակը. վայելչութիւն դարձուածոց, ընտրութիւն բառից, համառօտ եւ կորովի ոճ մը, մասնաւոր համեղութիւն մը կ'ընծայեն այս հնգետասան առակաց. հնգետասան կ'ըսեմ, վասն զի սկսեալ վեշտասաներորդէն հայերէն լեզուն բոլորովին կը փոխուի, կ'անզարդանայ, կ'անչքի, պարզ ըսեմ՝ կը ռամկանայ։ Այդ ԺԶ – ԻԳ առակք մասն են Աղուեսագրոց կամ Վարդանայ առակաց։

34. (1) «Զի այս զուր տարապարտուց և խուլ առատատանէր մնացն առատութիւն». Բ. էջ 592։ Ուղղելի խօլ, ինչպէս կ'ըսուի դարձեալ նոյն գրոց մէջ. «Զուր տարապարտուց և խօլ առատութեամբ զինչս կորուսանեն . . . զի՞նչ կամիցիս առնել նոցա՝ այնչափ ծախս խօլ առատութեանն». տես խօլ ի Նոր Հայկազեանն։ Ըստ այսմ փ. Բիւզանդացւոյ Դ գրոց Բ գլխուն մէջ, երես 66, ուր կ'ըսէ «Զի պառակտեալք և քակտեալք էին յընդանութենէն և յամենայն գործոց Հայոց ի ժամանակս խուլբեանն Տիրանայ», թուի թէ կարդալու է խօլբեանն։

## Գ. ՍԵՒԵՐԻԱՆՈՍ ԵՄԵՍԱՑԻ

### ՃԱՌՔ

Զ ճառին մէջ, երես 114, չորս անգամ դրուած է դեղաղան փոխանակ դեղաղակի․ յառաջ քան զիս նշանակած է զայս Հ. Թագէոս Թոռնեան իւր Հաւաքման Ընթերցուածոց մէջ, երես 361։ — Է ճառին մէջ, երես 128, ձեռագրին եօթնեան գրածն ուղղեալ է եօթնեաւ. կարծեմ պահելի է եօթնեան, որ կայ նաեւ Փիլոնի Լինելութեան գրոց մեկնութեան մէջ։ — Ը ճառին մէջ, երես 154, ձեռագրին Կուռոս գրածն ուղղեալ է Կիւրոս, ոչ ի դէպ. Կուռոս է արեւելեան անուն Կիւրոսի, օրինակ իմն պարսկերէն լեզուի մէջ, յորում կ'ըսուի Քուռուշ. Աղեքսանդրի Պատմութեան մէջ ամենուրեք Կուռոս կը գրուի, եւ Փ. Բիւզանդացւոյ Պատմութեան մէջ եւս կը յիշուի «Կուռոսական տոհմ», այսինքն «Կիւրոսական տոհմ». Դ. իթ. էջ 147։ — Թ ճառին թուի թէ երկու թարգմանութիւնք կան նախնեաց, մին յանուն Սեւերիանոսի, միւսն յանուն սրբոյն Բարսղի Կեսարացւոյ. առաջինն ընտիր հայկաբանութիւն Ե դարու, երկրորդն խառն հելլենաբանութեամբ, Պիտոյից գրոց եւ Փիլոնի ոճով. արդէն Ժ ճառին սկիզբը դրուած ծանօթութիւն մը կը վկայէ թէ «այս ճառ կայ եւ ի կարգս մատենիցն սրբոյն Բարսղի, հտ. Բ. երես 115»։ Ահաւասիկ պատառիկ մի սոյն ճառիս՝ ըստ երկուց թարգմանութեանց. Սեւերիանոսինն է ձախ կողմինը, տպագրին 194 էջը. իսկ աջակողմեանն է սրբոյն Բարսղի, զոր ես գտած եմ Նոր Հայկազեանին մէջ ի բառն Անդրանամ.

Գիշերք առանց քնոյ են այնոցիկ՝ որ հակեն յաղօթս. այլ դժուարագոյն եւս է այնոցիկ՝ որ հակեն ի մեղս։

Գիշերք անքունք որք կանխեն յաղօթս ի գիշերին. այլ յոյժ դժնդակագոյնք եւ տքնեցելոցն յանդրանալն։

Իցիւ թէ սոյն երկու թարգմանութիւնք դէմ առ դէմ հրատարակուէին։

35. (1) «Բոյծօ գտանէ հերձուածողն. տեսանես, ասէ, զի նովաւն՝ սպասաւորութեան գուշակ է». Ի. էջ 96։ Բոյծօ կը գնէ նաեւ Նոր Հայկազեանն, որ և կը մեկնէ. «արմատ բուծանելոյ. բուծումն. դարման. սնունդ. ճարակ»: Թուի թէ ուղղագոյն ընթերցուածն է բոյծօ կամ բուծօ, ինչպէս կը գրուի ուրիշ երկու տեղ ի նոյն գիրս. «Բուծօ իմն ի բանիս գտանեն հերձուածողացն աշակերտք». Բ. էջ 16. — «Իւ այնու բուծօ իմն գտանեն հերձուածողքն». Դ. էջ 68։ Բոյծօ կայ նաեւ Ոսկեբերանի Եփեսացւոց մեկնութեան մէջ. «Եթէ մեք դաղանեցեմք ընդ նմա, նա չիշխէ դաղանել. և եթէ մեք թուլամորթք լինիցիմք, նա բոյծօ գտանէ». ԻԲ. Ցորդ. էջ 923։

36. (2) «Իւ արդ զի՞նչ յայտ ընդդէմ հակառակութեան բանիցն կամիցի առնել, յորժամ ճշմարտութիւնն անձին միաբան գտանիցի հանապազ». Թ. էջ 166. ընդդէմ հակառակութեան կը գրուի նաեւ Հ. Թադէոս Թոռնեանի Հատընտիր ընթերցուածոց մէջ, երես 381։ Ուղղելի է ընդդէմ հակառակութեան. հատուածին պարզ շարքն այս է. «Իւ արդ զի՞նչ կամիցի յայտ առնել ընդդէմ հակառակութիւն բանիցն»։ Ընդդէմ հակառակութեան, որ կը նշանակէ գղ. Contradiction, կը կրկնուի նոյն ճառին մէջ քիչ մը ետքը. «Դարձեալ ըստ բանիցն ընդդէմ իմն հակառակութեան թուի, զի խառնեալն և անապակ ամենեւին իսկ չեն միմեանց նման». երես 177։ Տես նաեւ Ոսկեբերանի Ա. Տիմոթեայ ԺԲ ճառին յորդորակին մէջ, երես 101. «Ապա ուրեմն բարի է ագահն, և որչափ աճէ ագահութիւնն՝ եւս քան զեւս զագահն ի բարութիւն ածիցէ. տեսանես զընդդէմն հակառակութեան»։

37. (3) «Ու ոտն հարկանէ և արհամարհէ և խշոէ զարհաւիրս մահու». Թ. էջ 169։ Ուղղելի է խշրէ, այսինքն՝ արհամարհէ, որ կայ երեք տեղ Ոսկեբերանի Թարգմանութեանց մէջ։ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութիւնն

ղոմոն հանդերձ բազում իրօք, և վայրս ինչ ի Գալիլեացւոց աշխարհին ուր Քաբուղայն կոչի». Եւս. Քր. Հ. Ա. էջ 174. ուղղելի ուր, ինչպէս կ'ակնարկէ արդէն տպագիրն. – «Գաւառս պարգևելով զՊրձն, որ շուրջ զնովաւ, և զլեառն Տաւրոս, ուր և Սիմ, և զկղեսուրն ամենայն». Մ. Խորեն. Բ. ը. Թուի ուր: Վ. Լանկլուա կը թարգմանէ. «Le mont Taurus, avec le Sim». Իսկ Լըվայլեան տը Ֆլորիվալ՝ «Le mont Taurus, y compris le Sim»: Թերևս ուղղագոյն թարգմանութիւնն ըլլայ. «Le mont Taurus, qui s'appelle aussi Sim»:

15. (4) «Տեսցուք զինչ իցէ մարդ: Արտաքինքն ասեն. երբ է խօսուն, մահկանացու, միտաց և հանճարոյ ընդունիչ». ԺԳ. Ցորդ. էջ 112: Ուղղելի է երբ, դդ. Animal: «Զայր և զկին մի ինչ երբ գիտէ կոչել, և ոչ ուրեք որոշէ ազգս յազգաց՝ յօրէնսդրութեանն». Ոսկեբ. Մտթ. Ա. ԺԷ. էջ 270. – «Մարդ է կենդանի մեծ և հրաշալի, քան զամենայն ստացուածս Աստուծոյ պատուականագոյն». Ոսկեբ. Ճառք. էջ 66:

16. (5) «Բարւո՞ք է մարգարիտ, այլ ի միտ առ ջուր ծովային, և ի խոր ծովու ընկեցեալ կայր վայրապար. բարւո՞ք է ոսկի, բարւո՞ք է արծաթ, այլ ի միտ առ զի հող և մոխիր էին և են». ԺԷ. Ցորդ. էջ 159: Ուղղելի թուի «ջուր ծովային է», ինչպէս քիչ մը ետքը կ'ըսէ «զի հող և մոխիր էին և են»:

17. (6) «Լիրբ լեր, ասէ, և անամօթ և ծեր և յանդուգն». ԺԸ. Ցորդ. էջ 167: Ուղղելի է ծեր, ինչպէս կ'ըսուի Ոսկեբերանի Բ. Կորնթացւոց մեկնութեան մէջ. «Յորժամ լիրբ և ծեր իցես իբրև զշուն». և յԵւսեբեայ Քրոնիկոնին, Հ. Ա. էջ 4. «Զի զորս լրբեալ ծեր յայնպիսի դատարկ քննութիւն յօժարեն՝ արգելուցու»: Լիրբ և ծեր, լրբեալ ծեր ի միասին գործածուած են:

Տես ուրիշ ուղղութիւններ և էջ 4, 17, 30:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ Բ ԹՂԹՈՑՆ

18. (1) «Մի՛ տաղնապիցիս, ասէ, ի ժամանակի է վերոյ ճշտոյ եկեղեցւոյ». Ա. Տորդ. էջ 173։ Թուի ուղղելի ճշտոյ է վերոյ եկեղեցւոյ, ինչպէս կ'ըսուի ի մեկնութեանն Մատթէի. «Մի՛ տաղ-նապեսցուք ի ժամանակի ճշտոյ է վերոյ համանելոյ». Ա. Ժ. էջ 152։

19. (2) «Զամենայն Աստուած դարմանէ, և բնաւին չնոյն է խնամակալ». Ը. Տորդ. էջ 252։ Ուղղելի է «բնաւէ նոյն է խնամակալ»։

Տես տարբեր ուղղութիւններ և էջ 7, 30, 33։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌ ՏԻՏՈՍ ԹՂԹՈՑՆ

20. (1) «Եւ եթէ զտունն առնում յօրացոյ արկա-նեմ, այլ (այն ?) ի վեր է քան զամենայն լլկանս». Զ. Տորդ. էջ 338։ Թուի ուղղելի յօրորոց, բացառական հոլով Արարք բառի։ Եփեսացւոց Թղթոյն մեկնութեան մէջ կ'ըսէ. «Եթէ մշակ ոք էր և չապականէր ինչ և չհատանէր յօրորոցն, ոչ նենգէր և ոչ գողանայր և այլում տայր». ԺԶ. էջ 839։ Տես և ի Մատթէի մեկնութեանն արկանել յընկէց ոճը. «Եթէ յընկէց կամիցի արկանել, նախ քան զնորա սպառնալիսն առեր հրաման արհամարհել զինչսն». Ա. Իդ. էջ 384։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌ ՓԻԼԻՊԵՑԻՍ ԹՂԹՈՑՆ

21. (1) «Գողանայիր զաղքատաց, և զի մի յեւս չա-րիս մտաբերիցես՝ և այն ժա.. համբերէր, և սակայն զքեզ ոչ հաւանեցայց». Զ. Տորդ. էջ 413։ Ուղղելի է՝ այնմ եա.։ Յոր հակառակ Զենոբայ Ասորւոյ Պատմութեան մէջ (Մ. Ղաղաք, 1832) կը գրուի ժ եա.. փոխանակ գրելու ժա... «Այլ ըստ սիրոյ մտերմութեանդ քո զոր ունիս առ մեզ, աղա-

չեմ գիտեր ընձայս այլ մատուցանես ինձ»․ էջ 9․ կրնայ ըսուիլ նաեւ, բայց ընտրելագոյն կը համարիմ ընթերցուածը․ քննելի ի ձեռագիրս։

22․ (2) «Մեր գիրք որպիսի ինչ ճշդիւ և դատակաւ վարս ունէին, և իբրեւ զնախանկարէն դեղ և օրինակս և օրէնս շրջաւորս»․ ԺԲ․ Ցորդ․ էջ 485․ կարծեմ ասկէ առած կը գրէ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութիւնն․ «Նախանկարէն․ առաջուց օրինակ եղող»։ Ըստ իս ուղղելի է «զնախանկար ինչ դեղ», ինչպէս քիչ մը վերը կ'ըսէ․ «զնախանկար ինչ դեղ և զպատկերն ողջոյն նկարէին»։ Տես դարձեալ Նախանկար դեղ, մեկն․ Բ Տիմ․ Ը․ էջ 245․ Տիտ․ Դ․ էջ 313․ Եփես․ ԺԵ․ էջ 836։

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 30, 33։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿՈՂՈՍԱՑԻՈՑ ԹՂԹՈՑՆ

Այս թղթոյս մեկնութեան մէջ երկու բառեր պատուաստուած են, զորս օտար կը համարիմ եզնըկեան հայկաբանութենէն որով գրեալ են Ոսկեբերանի Պօղոսի թղթոց մեծագոյն մասին մեկնութիւնքն․ այս բառերս են Գերազանցեմ եւ Աստանօր։ Ն ճառին յորդորակին մէջ, երես 582, կը կարդանք․ «Տես զհակառակ միմեանց աքանչելիսն որ զմիմեանս գերազանցեն»․ ի ծանօթութեան կ'ըսուի․ «խանգարեալ էր բառդ յօրինակին․ եդաւ ըստ յունին»։ Չեմ կարծեր որ հոս թարգմանիչն գերազանցեմ բայ գործածած ըլլայ, որ ուրիշ ամէն տեղ կ'ըսէ անցանել, անցանել զանցանել, գէել․ տես օրինակի համար Փիլիպ․ Է․ Ցորդ․ էջ 430․ «Այլ թերեւս պէսպէս արուեստիւք (հպարտանայցես)․ եւ ո՞վ ոք յայնմ զմեղուօք զճարտարկօք անցանիցէ․․․ այլ թերեւս բարձր ինչ հանդերձիւք․ այնու սարդք իսկ անցանեն զանցանեն զքեւ․ այլ թերեւս ոտի՞ց արագութեամբ․ եւ այնու եւս անասունք գլեն»։ Ոսկեբերանի Յոհաննու մեկնութեան մէջ կը գտնուին Գերազանցէի եւ Գերազանցութիւն, բայց չեմ կրնար ըսել թէ ոսկեղէն դարու թարգմանու-

թեան բառեր են տեսնք թէ Գրիգոր Վկայասէրի աշակերտին՝ Կիրակոս վարդապետին՝ թարգմանութեանը։ Իսկ է ճառին մէջ, երես 594, կը կարդանք. «Քանզի ոմանք տօփանօք դնեն զատիւքսն». ի ծանօթութեան կ'ըսուի. «յօրինակին գրեալ է տօփանայ». խանգարեալ բառ կ'երեւի տօփանայ, բայց ես չեմ կրնար ընդունիլ որ ուղիղ ընթերցուածն ըլլայ տօփանօք, բառ՝ եթէ չեմ սխալիր՝ բոլորովին անծանօթ եղնըկեան հայկաբանից։

Տես եւ Բարսղի Վեցօրէին քննութեան մէջ Ներքոյծէմ, Ծարբառանասնեան, Նօսրաբոյս, Ննջարեալ եւ Աւանդանք բառերուն համար ըրած դիտողութիւնս։

23. (1) «Քանզի չէ ընդդէմ է համար, զնոսա որ զակամայ չարչարանսն կրիցեն, և որ զկամաւ, զերծուցանել ի վշտաց. զի նա ողորմելոյ արժանի է; և սա ատելութեան». Դ. էջ 563։ Ուղղելի ընդ մի համար, ինչպէս կ'ըսէ ստէպ ուրիշ տեղ, զոր օրինակ ի մեկնութեան Ա Տիմ. ԺԴ. էջ 118. «Քանզի չէ ընդ մի համար զիւրն անտես առնել և զօտարն»։

24. (2) «Այլ յորժամ ի վշտի լիցեմք և գոհանայցեմք, այն է զարմանալի։ Ցայնժամ ի նմին վիշտսն այլք հայհոյիցեն և բամբասիցեն և մեք գոհանայցեմք, տես որչափ առաքինութիւն է»։ Ը. Ցորդ. էջ 616։ Ուղղելի թուի յորժամ, ինչպէս ըսաւ քիչ մ'առաջ։

25. (3) «Աղօտ յամենայն հոգւոց, բերկրեալ և ընդ երկինս ուռեալ հայի, մինչև Նեբրեօս արձակեալ թռչել»։ Ժ. Ցորդ. էջ 640։ Աղօտ բառի համար կ'ըսուի ի ծանօթութեան. «յօրինակին գրեալ էր յաղօ. եղաւ ըստ յունին»։ Թուի թէ յաղօ կրճատեալ մնացած է փոխանակ գրելու յաղագոյն. տես ի Մատթէի մեկնութեան Ոսկեբերանի. «Որ ի հոգւոց յաղագոյն լիցէ». «յաղագոյն ի մօրկէ». իսկ Նեբրեօս թուի ուղղելի Նեօս։ – Ահաւասիկ քանի մ'ուրիշ օրինակներ կրճատեալ բառերու. «Եւ զարթուցեալք դուզն ի քուն կամին մնանել»։

Ոսկեբ. ի Զաքէոս, Հ. Բ. էջ 735։ կարդա յոյնին. — «Վասն զի ոչխար անդրոշմ է երախայն, և ամենատուն ամայի և — գրաց օթեւան ամենեցուն». Ոսկեբ. Ճառք. էջ 153։ կարդա ..., ինչպէս կ'ըսէ քիչ մը վերը. «զամէնատունն զայն զամայի, ... գրաց». — «Եւ ոչ ձ արտաքին դխ-թիւքն վարին, այլ և անձանց եւս ուռութս ուսանին». Յ. Մանդ. Ճառք, ԻԶ. էջ 193։ կարդա ձայն։

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 30, 33, 34. տես և 41 երորդ ուղղութիւնը։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՓԵՍԱՑԻՈՑ ԹՂԹՈՅՆ

Ներսէս Լամբրոնացի իւր Պատարագի մեկնութեան մէջ (Ս. Ղազար, 1847) երես 487, ամբողջապէս կը դնէ Գ ճառին յորդորակը, զոր եւ կը մեկնէ հատուած հատուած։ Կան քանի մի ընթերցուածք որ ընտրելագոյն կը թուին յօրինակին Լամբրոնացւոյ. յիշեմ միայն երկուքը։

Ա. «Ձեռք նորա ի բարերարութիւնս համարձակեալ, օգուտս եւեթ գործէին». էջ 699. Լամբրոնացի՝ համակ յեղեալ. էջ 488։ Բ. «Մի ինչ յայն ապաստան լինիցիմք եթէ միանգամ եղեաք անդամք մարմնոյն. որ չիցէ պիտանացու մարմնոյն, ի բաց կարի։ Իսկ կամացն անդամ եթէ չյարիցի ի մարմինն, որպիսի ինչ չարչարանս կրիցէ». էջ 700։ Թերի է բանն, զոր Լամբրոնացւոյ օրինակն այսպէս կը լրացնէ. «Մի ինչ յայն ապաստան լինիցիմք եթէ միանգամ եղեաք անդամք մարմնոյն. Եւ են բնութեան անդամն որ չիցէ պիտանացու մարմնոյն՝ ի բաց կարէ, իսկ կամացն անդամ եւայլն». էջ 489։

26. (1) «Մանաւանդ եթէ սպանութիւն գործեալ իցէ, և ի վերայ գայցէ, այն իսկ միայն բաւական է զնա կորուսանել». Դ. Յորդ. էջ 712։ Ուղղելի է ի վեր գայցէ, այսինքն յայտնուի, ինչպէս կ'ըսէ ի յորդորակի Թ ճառին, էջ 776. «Քանզի այնու փախչի ամենայն բարեկամ՝ եթէ խորհուրդ ինչ ի վեր գայցէ»։

27. (2) «Եթէ ոչ հիւսանց ձեռք և կամ այլոց արուեստականաց չէջուցանիցեն փիլոսոփայն նորա (հողոյն), ոչ կարողկամս ճանաչել և ոչ զԹշնամիս ընտրել»։ ԺԲ. էջ 802։ Թուի ուղղելի փիլոսոփայն։

28. (3) «Այլ յորժամ լսիցես երկիւղ, որ ինչ ազգ է պատրաստեալ իցէ՝ երկիւղ զայն պահանջեսջիր, մի՛ խրտչիս յաղախնոյ, քանզի մարմին քո է»։ Ի. էջ 889։ Ուղղելի յաղթել։
Տես ուրիշ ուղղութիւն մը և յէջ 4։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՌՈՎՄԱՑԵՑՒՈՑ ԹՂԹՈՅՆ

29. (1) «Իւ արդ որո՞վ պատասխանատուութեան արժանի գտանիցիմք, յորժամ նորա հովանին և հանդերձքն զմեզ հաղորդականն առնէին, մեք և ոչ աղօթք անդամ զախտակարեն յաղթահարեցաք»։ Ը. Յորդ. էջ 63։ Թուի ուղղելի յաղթեցաք, այսինքն մարել, փարատել։ Նոյնպէս Բարսղի վեցօրէին Ե ճառին մէջ, երես 89, ուր կ'ըսուի «Ջի եղիցին ցածուցիչք և յաղթահարիչք ցաւոց մերոց», Անտոնեան Հայր ընտիր օրինակին կը գտնէ յաղթեցէք։

30. (2) «Ջի ոչ եթէ կերակուր ընդ բերան փոխէ, այլ բանս հայհոյութեան, Թշնամանաց, պատերազմաց, մահուան, բիւր ինչ անդուստ ի ներքուստ (կարդա՝ ի վերուստ այսինքն յերկնուստ, ինչպէս կ'ըսէ յոյնն) կազմեալ փայլատակունս՝ գլխոյն խաղ եռան»։ ԺԳ. Յորդ. էջ 165։ Ուղղելի է գլխոյն եղջեան։ Տես և ԻԴ ճառին յորդորակին մէջ, երես 346. «Բազում ինչ գլխոյն եղջեան բանս կուտէ»։ Նոյնպէս ի մեկնութեան Եբրայեցւոց Թղթոյն, Ե. էջ 483. «Յորժամ աջողեսցի մեծութիւն չարին, գլխոյն նեղջեան է»։

31. (3) «Իւ յետ այսորիկ զամենայն փիլիսոփայական աւանդութիւնն հանդերձ աշխարհաւս այսուիկ ծանոյց

նոյս, որպէս զարդ-խոստայն իմն և զողայոյ ղուֆուղֆմոն»․ ԺԴ. էջ 177։ Թուի ուղղելի ղուֆուղֆման։ Նոյնպէս ի Մատ-թէի մեկնութեան, Գ. ԺԴ. էջ 55, «Քանզի զայնպիսի ինչ խորհել՝ կարի իսկ ղուֆուղֆուրնան է», կը կարդամ ղուֆու-ֆուրնան, համդոյն Նոր Հայկազեանին։ Առձեռն Բառարանին երկրորդ տպագրութեան մէջ եթէ այս երկու վկայութիւն-ներէն առած կը դրուին Զուղֆուղֆուրնան և Զուղֆուղֆոմն բա-ռերն, ջնջելի կը համարիմ։

32.̤ (4) «Զքառատուն մանկունսն զայնոսիկ որք դադա-նակուրք եղեն և ոչ ի տգեղծ հասակէ անտի զտին ներեւ բոսման». ԻԵ. Յորդ. էջ 360։ Ուղղելի ներեւ բոսման. Ոսկեբե-րանի թարգմանիչն ուրիշ տեղ ստէպ կ'ըսէ ներեւ բոսոբեան. «Զի՞նչ պատասխանատուութիւն ունիցիմք, ասէ սաս. ու՞ր ներեւ բոսոբեան». Ոսկեբ. Մատթ. Ա. Ը. էջ 122. —«Որո՞ւմ ներեւս բոսոբեան լինիցիմք արժանի». անդ. Թ. Յորդ. էջ 136. — «Մեզ որպիսի՞ ինչ ներեւ բոսոբեան կայցէ». անդ. ԺԷ. էջ 283։

33.̤ (5) «Զպօղոս յանկարծակի է ըրմնէ իւրմէ համդերձ Պետրոսիւ յափշտակեալ ընդ առաջ Տեառն». ԼԲ. էջ 419. ի ծանօթութեան կ'ըսուի. «յոյնն է փողմնէ»։ Թերեւս է ըր-նէ սխալմամբ գրուած ըլլայ փոխանակ է ըրէ. ըէր գերեզ-մանի մաքով շատ տեղ ըսուած է ի նախնեաց։

Տես ուրիշ ուղղութիւն մը յէջ 42։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Ոսկեբերանի քանի մի գրուածոց կրկին թարգմանութիւն ունինք ի նախնեաց, մին ոսկեղինիկ դրչաւ Եզնըկայ դասուն, միւսն՝ յետին դարերու գործ։ Այսպէս է Ս. Յոհաննու Աւետա-րանին մեկնութիւնն, յորմէ միայն հատակոտորք կը յիշուին Բ հատորոյն 579 – 609 երեսներուն մէջ, եւ Բ. ճառն ի Յովբան, հատոր Գ, երես 26 – 45. փոխանակ ոսկեղինիկ թարգմանու-թեան պատուաւոր տեղ շնորհելու եւ յետին դարուց թարգ-

մանութիւնը մանր գրով ամփոփելու ի ստորեւ էջիցն, երկու անգամ ալ հակառակն եղած է։ Կան ուրիշ երեք ճառք Ոսկեբերանի, Ա. ի սուրբ Խաչն Քրիստոսի, Հ. Բ. էջ 762. Բ. յղ. Ապաշխարութեան, Հ. Բ. էջ 861. Գ. միւս եւս ճառ յղ. Ապաշխարութեան, ճառք, էջ 46, որք յայտնապէս կը կրեն ընտիր հայկաբանութեան կնիքը, թէպէտ բաւականապէս խանգարեալ յայլ եւ այլ ճառընտիրս։ Փափագելի էր որ այս երեք ճառերուն հնագոյն օրինակներն փնտռուէին եւ բոլորովին զատելով միւս ճառերէն՝ առանձին փունջ մը կազմուէր։

Խօսքիս կարգն կը բերէ որ այսպիսի դիտողութիւն մ'ընեմ նաեւ Ոլոմպիանու Առակաց Թարգմանութեան վրայ, որ հրատարակեալ են Մխիթար Գոշի Առակաց հետ։ Այս թարգմանութեան ժամանակն յայտնի չէ, բայց կրնանք կարծել որ Թ դարէն առաջ է, վասն զի Թովմա Արծրունի իւր Պատմութեան մէջ, Գ. ա. էջ 137, կը յիշէ ԺԳ առակը. վայելչութիւն դարձուածոց, ընտրութիւն բառից, համառօտ եւ կորովի ոճ մը, մասնաւոր համեղութիւն մը կ'ընծայեն այս հնգետասան առակաց. հնգետասան կ'ըսեմ, վասն զի սկսեալ վեշտասաներորդէն հայերէն լեզուն բոլորովին կը փոխուի, կ'անզարդանայ, կ'անշքի, պարզ ըսեմ՝ կը ռամկանայ։ Այդ ԺԶ – ԻԳ առակք մասն են Աղուեսագրոց կամ Վարդանայ առակաց։

34. (1) «Զի այս ջուր տարապարտուց և խօլ առատանէր մնացն առատութիւն». Բ. էջ 592։ Ուղղելի խօլ, ինչպէս կ'ըսուի դարձեալ նոյն գրոց մէջ. «Ջուր տարապարտուց և խօլ առատութեամբ զինչսն կորուսանեն . . . զի՞նչ կամիցիս առնել նոցա այնչափ ծախս խօլ առատութեանն». տես խօլ ի Նոր Հայկազեանն։ Ըստ այսմ փ. Բիւզանդացւոյ Դ գրոց Բ գլխուն մէջ, երես 66, ուր կ'ըսէ «Զի պառակտեալք և քակտեալք էին յընդանութենէն և յամենայն գործոց Հայոց ի ժամանակս խօլ-նեանն Տիրանայ», թուի թէ կարդալու է խօլ-նեանն։

## Գ. ՍԵԲԵՐԻԱՆՈՍ ԷՄԵՍԱՑԻ

### ՃԱՌՔ

Զ ճառին մէջ, երես 114, չորս անգամ գրուած է տեսողան փոխանակ տեսողակի. յառաջ քան զիս նշանակած է զայս Հ. Թադէոս Թոռնեան իւր Հատընտիր Ընթերցուածոց մէջ, երես 361: — Է ճառին մէջ, երես 128, ձեռագրին եօթնեան գրածն ուղղեալ է եօթնեակ. կարծեմ պահելի է եօթնեան, որ կայ նաեւ Փիլոնի Նախախնամութեան գրոց մեկնութեան մէջ: — Ը ճառին մէջ, երես 154, ձեռագրին Կաւոս գրածն ուղղեալ է Կէւրոս, ոչ ի դէպ. Կաւոս է արեւելեան անուն Կէւրոսի, որինակ իմն պարսկերէն լեզուի մէջ, յորում կ'ըսուի Քեավէւս. Աղեքսանդրի Պատմութեան մէջ ամենուրեք Կաւոս կը գրուի, եւ Փ. Բիւզանդացւոյ Պատմութեան մէջ եւս կը յիշուի «կաւոսական տոհմ», այսինքն «կէւրոսական տոհմ». Դ. իթ. էջ 147: — Ժ ճառին թուի թէ երկու թարգմանութիւնք կան նախնեաց, մին յանուն Սեբերիանոսի, միւսն յանուն սրբոյն Բարսղի Կեսարացւոյ. առաջինին ընտիր հայկաբանութիւն Ե դարու, երկրորդն խառն հելլենաբանութեամբ, Պիտոյից գրոց եւ Փիլոնի ոճով. արդէն Ժ ճառին սկիզբը գրուած ծանօթութիւն մը կը վկայէ թէ «այս ճառ կայ եւ ի կարգս մատենիցն սրբոյն Բարսղի, հտ. Բ. երես 115»: Ահաւասիկ պատառիկ մի սոյն ճառիս՝ ըստ երկուց թարգմանութեանց. Սեբերիանոսինն է ձախ կողմինը, տպագրին 194 էջը. իսկ աջակողմեանն է սրբոյն Բարսղի, զոր ես գտած եմ Նոր Հայկազեանին մէջ ի բառն Անդրանամ.

Գիշերք առանց քնոյ են այնոցիկ՝ որ հսկեն յաղօթս. այլ գժուարագոյն եւս է այնոցիկ՝ որ հսկեն ի մեղս:

Գիշերք անքունք որք կանխեսն յաղօթս ի գիշերին. այլ յոյժ դժնդակագոյնք եւ տքնեցելոցն յանդրանալն:

Իցէ՞ թէ սոյն երկու թարգմանութիւնք դէմ առ դէմ հրատարակուէին:

35. (1) «Բոյծ» գտանէ հերձուածողն․ տեսանեմս, ասէ, զի նովաւն՝ ապստամբութեան գուշակ է»․ Ե․ էջ 98։ Բոյծ կը գտնէ նաեւ Նոր Հայկազեանն, որ և կը մեկնէ․ «արմատ բուծանելոյ․ բուծումն․ դարման․ սնունդ․ ճարակ»։ Թուի թէ ուղղագոյն ընթերցուածն է բոյծ կամ բուծ, ինչպէս կը գրուի ուրիշ երկու տեղ ի նոյն գիրս․ «Բուծ» լինի ի բանիս գտանեն հերձուածողացն աշակերտք»․ Բ․ էջ 16․ — «Եւ այնու բուծ լինի գտանեն հերձուածողքն»․ Դ․ էջ 68։ Բոյծ կայ նաեւ Ոսկեբերանի Եփեսացւոց մեկնութեան մէջ․ «Եթէ մեք գաղանիցեմք ընդ նմա, նա չիշխէ գաղանել․ և եթէ մեք թուլամորթք լինիցիմք, նա բոյծ գտանէ»․ ԻԲ․ Յորդ․ էջ 923։

36. (2) «Եւ արդ զի՞նչ յայտ ընդդէմ հակառակութեան բանիցն կամիցի առնել, յորժամ ճշմարտութիւնն անձին միաբան գտանիցի հանապազ»․ Թ․ էջ 166։ Ընդդէմ հակառակութեան կը գրուի նաեւ Հ. Թադէոս Թոռնեանի Հատընտիր ընթերցուածոց մէջ, երես 381։ Ուղղելի է ընդդէմ հակառակութեան. հատուածին պարզ շարքն այս է․ «Եւ արդ զի՞նչ կամիցի յայտ առնել ընդդէմ հակառակութիւն բանիցն»։ Ընդդէմ հակառակութեան, որ կը նշանակէ դդ․ Contradiction, կը կրկնուի նոյն ճառին մէջ քիչ մը ետքը․ «Դարձեալ ըստ բանիցն ընդդէմ լինի հակառակութեան թուի, զի խառնեալն և անապակ ամենեւին խակ չեն միմեանց նման»․ երես 177։ Տես նաեւ Ոսկեբերանի Ա. Տիմոթեայ ԺԲ ճառին յորդորակին մէջ, երես 101․ «Ապա ուրեմն բարի է ագահն, և որչափ աճէ ագահութիւնն՝ եւս քան զեւս զագահն ի բարութիւն ածիցէ․․ տեսանեմս զընդդէմն հակառակութեան»։

37. (3) «Առ ոտն հարկանէ և արհամարհէ և խշուէ զարհաւիրս մահու»․ Թ․ էջ 169։ Ուղղելի է խուշէ, այսինքն՝ արհամարհէ, որ կայ երեք տեղ Ոսկեբերանի Թարգմանութեանց մէջ։ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութիւնն

*կը նշանակէ թէ իշտրեմ և թէ խշտրեմ. առաջինը ընջելի կը համարիմ։*

*Ցես ուրիշ ուղղութիւնները էջ* 30, 43. *տես և* 41 *երորդ ուղղութիւնը։*

## Դ. ՄԱՐՈՒԹԱ

### ՃԱՌ Ի ՎԿԱՅՍՆ ՀԱՐԵՒԵԼԻՑ

38. (1) «*Եւ կիսոցն՝ եղէգն հերձեալ հանդոյն* հասարակոյն *դնէին շուրջ, և պնդէին լարօք ընդ անդամսն, և մի մի ձգէին հանէին հանդերձ մորթովքն և մսօքն և ջղօք». էջ* 79։ *կարծեմ կարդալու է* հասարակոյն։ *Նոյնպէս ի Բարսղի վերջօրէին. «Սկսանին փոքրկանալ ստուերք տարերց երկրի և կարճել շուքն (կամ շուքք)* հասարակաց *ի միջօրեայ ժամանակի . . . ստուերք* հասարակաց *մարդկանն յերկոցունց կողմանցն երեւին». Զ. էջ* 125, 126. *ուղղելի է* հասարակաց, *ինչպէս կը դնէ և Անտոնեան Հարց ընտիր օրինակն։*

39. (2) «*Առիւծն ահագին գոչէր և ելանէր ի չորրաշուք* մօրենոյն, (յ) *արձակել և յափշտակել և բեկանել զգեղինս հարկեացն որոտայր». էջ* 90։ *Ուղղելի է* մօրենոյն. մօրէ *կը նշանակէ գաղանաց որջ, և է ակնարկութիւն բանին Երեմիայի. «Ել առիւծ ի* մօրենոյ *իւրմէ սատակել զազգս». դ. 7. յորմէ կ'առնու և Յոհան կաթողիկոս իւր Պատմութեան մէջ, երես* 110. «*Ածեն առաջի իբրեւ զուլ մի յայծեաց զայն որ իբրեւ զառիւծ ի* մօրենոյ *իւրմէ ելեալ վարանէր վատնել վարատել զազգս»։*

40. (3) «*Գնացին ծերք համեստութեամբ* նղափակեալ, *և մեք խակք և տղայք մնացաք առանց հանճարոյ». էջ* 98։ *Հնարելի է կարդալ* նպարակեալ, *ի նպար կամ նպարակ բառէն, այսինքն՝ հետերնին պաշար առած։ Համեմատէ Ղ. Փարպեցւոյ Պատմութեան հետեւեալ վկայութեանց հետ.*

«Որով նպատակելու վառեալ զինու Հոգւոյն՝ յուղարկէին յապաստուածատունս վայելչութեան դրախտին». էջ 210. —«Նպատակելու յուղարկեաց զնոսա իւր սոյզ և արդար ոգւոյն օրհնութեամբ ի գործ պատերազմին». էջ 372։

Ա՛յլ է և նպատակելու ի նպատակ բառէն, այսինքն՝ սահմանեալ, որոշեալ. «ի լրման նպատակելու սահմանեալ պահոյն՝ դարձեալ ի փայտն մերձենալ». Ջաք. կթ.

41. (4) «Ո՞վ լիցի վստահ ի քեզ, ծով, ի յուզել ալեացդ և ի մտնելու զբօսանացդ». էջ 101։ Ուղղելի մտնել։ Ջեռագրաց մէջ շատ անգամ փոխանակ անորոշ դերբայի կը դրուի անցեալ դերբայ. ըստ իս ուղղելի է ամենուրեք։ Ահաւասիկ քանի մի օրինակք յընտիր մատենագրաց, յորս փոխանակ անցեալ դերբայի կարդալու է անորոշ դերբայ. «Ջի թէ զնոցայն զհասակարութիւնն ... ասելու պարտ իցէ, ո՞րչափ ևս առաւել զմարդկան մեղանչականութիւն». Եզնիկ. էջ 147. —«Եթէ ի բազմապատիկ մահս դիմելու հասանէր համապազ, չէ՞ր պարտ ամենայնի համբերել». Ոսկեր. կողոս. Բ. Յորդ. էջ 544. —«Քանզի ոչ կարէ հայր յայնպիսի տանջանս տեսանել և ողորմելու». Ոսկեր. մեկն. Ես. (տես Հ. Թադէոս Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք, էջ 286). —«Եթէ միս էր՝ եփելու կամ խորովելու պիտոյ էր». Ոսկեր. Ճառք, էջ 834. —«Ջոր և Տէրն իսկ ասէր՝ թէ Եկի ի կատարելու զօրէնսն և զմարգարէս». Ագաթ. խդ. էջ 298. —«Վասն փոքր կարծելոյ Քամայ զամօթ հօրն յայտնելու՝ անկաւ ընդ անիծիւք». Ե. Մանդ. Ճառք, ԻՋ. էջ 203. —«Եւ եկեալ տէրն Մամիկոնենից և սպարապետն Հայոց Վահան հրաժարելու ի թագաւորէն Արեաց վաղարշու». Ղ. փարպեցի, Պատմութիւն, էջ 536։ Երբեմն ելու գրուած կը գտնուին նաեւ ելու վերջացած ածականներ, օրինակ իմն. «Յարուցանել զմեռեալն և ածել ի լոյս հրատարակելոյն». Սեբեր. Բ. էջ 15. կարդա հրատարակել. —«Եւ սուղ ինչ պղերգացեալ, ետուն օտարին՝ ուտելու ցանկալեացն գաղանայինն այն». Ոսկեր.

ի Սաղմոսն յիմաստութ., Հ. Բ. էջ 667. կարդա մատուցեալ ցանկալեացն, ինչպէս կ'ըսուի ուրիշ տեղ. «Յայտնեսցէ մատուցեալ ցանկալեաց ծնողի, և ի ցանկութենէն պատկութիւն». Ոս. կեր. ճառ., էջ 132։

Շատ անգամ ալ փոխանակ անցեալ դերբայի գրուած կը գտնենք անորոշ դերբայ, ինչպէս հետևեալ օրինակաց մէջ. «Իսկ եթէ ոք յուշինչ զԱստուծոյ զպատուիրանն համարիցի, յորժամ մտցէ ընդ բանտարկութին մարտնչիցի՝ վաղվաղակի կործանի». Եզնիկ, էջ 58. — «Բայց էին ի նոցանէ ոմանք, որ բնաւ ամենևին այլ ինչ կերակուր չէր ճաշակել նոցա ի մանկութենէ իւրեանց, բայց լոկ բանջար և ջուր». Փ. Բիւզանդացի, Ե. ԻԸ. էջ 223. — «Փոքր համարեցաւ կայէն զանընտիրան մատուցանել պատարագ, և խոտել մատուցել յերեսացն Աստուծոյ». Յ. Մանդ. Ճառ., ԺԴ. էջ 115. — «Իսկ զամենայն երեսս քարին իբր գրչաւ զմիմ համրել, բազում գիրս ի նմա գրեաց». Մ. Խորեն. Ա. ԺԶ. — «Մի՛ տագնել կործանել զքաղաքս քո զսեպհական գաւառ». Պատմ. Աղեքս. էջ 67։

42. (5) «Զոր ոչ գազան կարէ լեզել, . . . և ոչ աչուն խաղալիկել հովանաւորն փոշովք, ոչ կայծ անձնեալ և ոչ սուր մշակաց թագուցանել». էջ 111. Կայծ կը դրուի նաև Հ. Թադէոս Թոռնեանի Հատընտիր ընթերցուածոց մէջ, երես 526. թուի ուղղելի կայծ անձնել, կամ, այսինքն վառուցան ընելը, երկերը հերկելը։ Նոյնպէս յէջ 124. «Խոսուք զպարանոցս ձեր ի կոյս ահաւոր անդունդ սպանութեան, զի մի հնազանդեսցին մարմինք ձեր ի գործ երկրին ցաւոց և մեղաց». ուղղելի է կամ, այսինքն հերկ, մշակութիւն։ Տես նաև 76 երորդ ուղղութիւնը։

43. (6) «Սկսան անօղորմ չարչարանօք ազգի ազգի մահուք սպանանել զկանանցն երանելեաց, . . . զկիրսոցն զբրոլայնս հարկանէին, և թափ ի նեղնոտեան հանէին զաղեխսն». էջ

138։ Ուղղելի կարծեմ՝ ղանոնան․ այսինքն՝ ոմանց փորը կը զարնէին, և սուրը կոնակէն դուրս կը հանէին։
Տես ուրիշ ուղղութիւն մը և էջ 18։

## Ե. ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

44․ (1) «Եւ ոչ այն լիցէ կարող որ զխորս անդնդոց ծովուն քննել խոտեցէ»․ էջ 11։ Խոտել՝ ինչպէս յայտնի է՝ կը նշանակէ անարգել, մերժել, բայց այս հատուածիս ամենևին յարմար չգար․ ես կարծեմ թէ կարդալու է խուզեցէ, վասն զի ձեռագրաց մէջ շատ անգամ երկու նմանաձայն վանկերէն մէկը վրիպակաւ զանց կ'առնուի։ Խուզել բայն, որ կը գտնուի արդէն Յոհան կաթողիկոսի Պատմութեան մէջ երեք տեղ, կը նշանակէ ըստ Նոր Հայկազեանին՝ «խորհելով յօդել․ կցկցել միօք․ հնարել․ ջանալ»․ ահաւասիկ Յոհան կաթողիկոսի խօսքերը․ «Զճարակ հրոյ բանս բամբասանաց զորբոյ կաթողիկոսէն խուզեալ յօդէին»․ էջ 82․ – «Մի՛ ոք զնոյն անցս չարչարանաց և զձաղանս և զձաղկանս խուզեցէ կրել որպէս և նոքայն, որք ընդ Յուդայի անկեալք գնացին ի տեղիս իւրեանց»․ էջ 88․ – «Նոյն փոքր մի ի վերայ հատածի միջոյն և խուզէր խօսել»․ էջ 136։ Քննելի է և խուզէ գրութիւնն ի մեկնութեան Մատթէի Ոսկեբերանի, Գ․ Ը․ էջ 30, որ ի հրատարակչէն կ'ուղղուի խոտէ․ «Զի այնպէս մերժեաց զառաքինութիւնն ի բաց այն չարութիւն և խուզէ զմեղադրութիւնն եւս այնպիսի մոլեկանաց ծաղր չհամարել»։ – Այսոր նման և ի Սեբէոսի Պատմութեանն, էջ 69, կը գտնենք ողխեալ փոխանակ ըսելու ողխողխեալ․ «Պատասխանի ետ արքայն և ասէ․ Զգանձս թագաւորութեան իմոյ ընդ կողս դոյա այսրէն արտաքս քարշեցից հանդերձ նոցունց ողխեալ գանձիւք, քանզի իմ է այն ամենայն»․ ողխեալ գանձիւք կը գրուի նաև Գ․ Քե-

ըսվըէ Պատկանեանի նոր տպագրութեան մէջ, երես 40։ ինծի կ՚երեւի թէ պիտի ըլլայ ողխողխուղ գանձուք, այսինքն՝ կուտեալ, մթերեալ գանձերով, որու կրնայ երաշխաւորել Ոսկեբերանի փիլիպեցւոց թղթոյն մեկնութեան հետագայ հատուածն. «Ո՞վ ոք, ասէ նա, վաճառական՝ որոյ լցեալ ողխողխուղ իցէ զնաւ բազում գանձուք». Դ. էջ 383։

Հակառակ վրիպակն ալ, որ է բառի մը վանկը կրկին գրել, յաճախ կը գործեն գաղափարողք. օրինակ իմն. «Ոչ միայն՝ զի յորժամ գտանիցեն զառ ի թափ տեղիս, այլ և ի ներքոյ ի վեր համբարձցին ելանել երկնաբուղխ». Բրս. վեց. Դ. էջ 70. կարդա երկնաբուղ, որ կը նշանակէ՝ վարէն վեր դէպ ի երկինք բխած կամ ճեղքուած։ — «Եւ նա ասաց. Ես գամ և մուծանեմ զքեզ ի պոլոփորանն». Վարք Հարանց, Հ. Բ. էջ 254. Թուի ուղղելի պոլոփանն. Աւձեան Բառարանի երկրորդ տպագրութիւնն թերեւս առնէ առած կը դրէ երկբայանօք Պոլոփորան։ — «Էր ոմն կոնոն անուն ի կիլի-կիոյ ծնեալ, քահանայ կաթեքետէ, այսինքն մկրտութեան». Վարք Հարանց, Հ. Բ. էջ 396. Թերեւս ուղղագոյն ընթեր-ցուածն ըլլայ կաթեքետ. տես Catéchète ի գաղղիերէն բառա-րանն Լիդրէի, որ կը մեկնուի՝ հրահանգիչ կամ ուսուցիչ քրիստոնէական հաւատոյ յառաջին դարս։ Տես և 103 երորդ ուղղութիւնը, յորում Արուէ ին ու կը կարծուի ըն-թեռնլի Արէէն ու։

45. (2) «Եւ նոցա փախուցեալ թաքուցեալ ծառախէք առ-րեւապատ լինէին». Խր. էջ 215։ Ուղղելի է ծառախիլք, ի խըլ-թիմ բայէն որ կը նշանակէ բանի մը տակ մտնել, պահուը-տիլ. «Երթայ, ասէ, երկինս խիթ ընդ քարին, և մածնու-կայ ի նմա իբրեւ զանկիրոս». Բրս. վեց. Է. էջ 150։ Այս խլթիմ բայէն է նոյնպէս ծակախիլ բառն, զոր կը գործածէ Ագաթանգեղոս յէջ 631. «Երթեալ լեռնակեաց, մենա-կեաց, սորամուտ, ծակախիլ եղեալ»։ Ըստ այսմ կարծեմ և Ա. Մակաբայեցւոց Ա. գլխոյն 56 թուահամարոյն մէջ ամբախիք

տանել ուղղելի է ամրոխիլն տանել. «Արարին ամրոխիւ զիւրայել յամենայն տեղիս ամրութեան տապաստանայ նոցա», այսինքն՝ բերդերու մէջ պահուըտեցուցին. յոյնն է՝ ըստ Նոր Հայկազեանին՝ «դնել ի ծածուկ վայրս»։

46. (3) «Այլ թէպէտ խառնապատում շարժեալ վասն հարցողացն զաւերն Երուսաղեմի և զհամաշխարհական կատարածն, ոչինչ դժուարագոյն է հասանել ի վերայ; եթէ կամեսցի ոք հաւաստեաւ զիւրաքանչիւրսն ընտրել». ծդ. էջ 346։ Ուղղելի է շարեալ, ինչպէս կ՚ըսէ յէջ 368. «վասն որոյ և կարճապատում շարեալ ի վերանալն (Տեառն) փութայ»։ խառնապատում շարել, կարճապատում շարել։

47. (4) «Ուռկանն որ պատեաց զնոսա, զոհեցան նոքա նմին ուռկանի, և ծխեցան ի նմին ցանցի, զի եղեն բաժին նորին։ Կերաւ թրթուր զնոսա, և ծախեաց զնոսա չորեակն». կզ. էջ 398։ Ուղղելի է ծխեցան։

Տես ուրիշ ուղղութիւն մը յէջ 3. տես և 41 երորդ ուղղութիւնը։

## Ձ. ՓԱՒՍՏՈՍ ԲՒԶԱՆԴԱՑԻ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Փ. Բիւզանդացւոյ Պատմութեան հնագոյն օրինակք խնդրելի են, վասն զի մինչեւ հիմա մեզի ծանօթ եղած ձեռագիրներն՝ որոց վրայէն հրատարակեալ է Ս. Ղազարու 1832 տարւոյն տպագրին՝ սաստիկ աղաւաղեալ են յանվարժ գաղափարողաց։ Ես միայն քանի մ՚ուղղութիւն կը նշանակեմ այս Պատմութեան, ի բաց թողլով զայլս յայտնիս կամ զ՚ի վաղուց ուղղագրեալս յայլոց։

48. (1) «Փիլիսոփայական արուեստիւն խնդիր արկանէր համատարած զամենայն զուր բացեալ զքերթանս հերետիկոսացն».

Դ. Է. էջ 94. կարելի՞ է կարդալ խօյը տօղկանէր. տես և ի ճառին փիլոնի Ցաղագս բան ունել և անասուն կենդանեաց, էջ 132. «Եւ յորժամ մոմն ցօղ ընկալեալ, զի մի վաստակն անկատար իցէ, տօղկանէու խօյեու ծածկեալ պնդապէս՝ առ այնոցիկ որ ի վերայ յարձակին կենդանիքն դաւունս, որ եղեւ ի բնութենէ»։

49. (2) «Ընդ այլ կոփել ապաստակ յաշխարհն Հայոց առնէին». Դ. խդ. էջ 141. Նոր Հայկազեանն կոփել բառը կը մեկնէ կոփ, և կը յաւելու. «ուստի կատապան, կողմնապետ»։ կարելի՞ է արդեօք կարդալ այսպէս. «Ընդ այլ կօբինօւ՝ ապաստակ յաշխարհն Հայոց առնէին», ինչպէս յաջորդ երեսին մէջ կ'ըսէ. «Ընդ այլ տիլկու՝ ապաստակս կապէին»։ Կօբինս կը նշանակէ՝ յանկարծ ճամբէն խոտորիլ, ուրիշ ուղղութիւն մը բռնել, ինչպէս որ գաղղիերէն լեզուի մէջ ալ faire un crochet նոյն միտքով կը գործածուի, օրինակ իմն. «Il a fait un crochet pour m'éviter», ըսել է՝ ճամբէն խոտորեցաւ որպէս զի ինձի չհանդիպի կամ զիս չտեսնէ։ Ահաւասիկ կօբինս բայի այս նշանակութեանն երկու վկայութիւնք. «Եւ անտի կօբինեցին իբրեւ քսան վտաւանաւ ի վերայ Տիմոթէի, և անկանել կամեցան». Բ Մկբ. ժբ. 10. – «Ցայլ կողմն կօբինօւ ըստ աներեւոյթ ձորոցն խորութեան հասեալ կայր զկնի ուխտապահ զօրացն Հայոց ի կողմանէ». Ղ. Փարպեցի, Պատմութիւն, էջ 379։

50. (3) «Կանթեղիւք վառելովք և քէթալաշքանտէ, և բազում յիշատակօք զսուրբն յուղարկեցին». Ե. խդ. էջ 218. Ուղղելի քէթալ աշքանտէ, ինչպէս կը դնէ ուրիշ տեղ. «քէթալ աշքանտէ ... զսուրբն վկթանէս ... յուղարկէին». Գ. ժա. էջ 28։

51. (4) «Լուացեալ զհերս իւր, օծեալ քէլէու». Զ. ը. էջ 266. Ուղղելի է օծեալ մուրէուն. մուրեն կամ մուրէն կը նշա-

Նակէ օծել, չփել։ Տես և ի գիրս Գիտալեց, Է. Դ. էջ 507. « Զիթոյն բնութիւն. օծել, մորթէ զըմբիչսն »։

Տես ուրիշ ուղղութիւնները յէջ 3, 12, 14, 29, 30, 34. տես և 34 երորդ, 41 երորդ և 86 երորդ ուղղութիւնքը։

## Է. ԲԱՐՍԵՂ ԿԵՍԱՐԱՑԻ

### ՎԵՑՕՐԵԱՑ

Տպագրութեամբ ի լոյս ընծայեալ Նախնեաց մատենագրութեանց մէջ կրնամ ըսել որ չկայ աւելի տպականեալ եւ խանգարեալ քան զորբոյն Բարսղի Վեցօրեայն. մէկ օրինակի վրայէն եղած է Ս. Ղազարու տպագրութիւնն, եւ այն օրինակն ալ լի է աղճատանօք։ Հրատարակիչն կ՚ըսէ ի յառաջաբանին. «Վաղու եւս ձեռնարկեալ էր մեր ի տիպ տալ, եթէ հին եւ ստոյգ օրինակի չէր կալեալ ակն. բայց արդ ի դերեւ ելեալ, լաւ համարեցաք միում որ ի ձեռին չատանալ, թէպէտ եւ ոչ հին եւ ոչ ընտիր գրչութիւն, այլ վրիպագիր բազում ուրեք եւ յանհմտութենէ աղաւաղեալ։ Զորոյ թէպէտ ըստ կարի սրբեցաք ի բաց զախալանսն զգուշութեամբ՝ ըստ յոյժ բնագրին եւ մանաւանդ ըստ կարգի բանիցն պահանջելոյ, սակայն մնաց տակաւին ոչ սակաւ մթութիւն եւ երկբայութիւն աստ եւ անդ»։

Բախտ ունեցայ ես յոյժ ընտիր (թէպէտ եւ ոչ հին) օրինակի մը հանդիպելու ի մատենադարանի գրչագրաց 38. Անտոնեան Հարց որ յՕրթագէօյ*։ Այս ձեռագիրս, որոյ թուականն է Հայոց ՌՃԾ, Քրիստոսի 1701, թէ գրողին հմտութեանը եւ թէ մանաւանդ պարունակութեանցը մի քան զմի պատուականութեանը պատճառաւ Անտոնեան Հարց մատենադարանին գլխաւոր զարդերէն մին կրնայ համարուիլ։ Բարսղի Վեցօրեայն, Գրիգորիսի Արշարունեաց քորեպիսկոպոսի Մեկնութիւնն Ընթերցուածոց, եւ քան զամէնն աւելի՝ Գէորգեայ

* Իմ երախտագիտութեան պարտքս ուրիշ տեղ հատուցի հրապարակաւ առ Անտոնեան Միաբանութիւնն, որ մեծաւ ազնուութեամբ բացաւ իմ առջեւս իւր հայ գրչագրաց մատենադարանին դուները. տես Մասիս լրագիր, 16|28 Նոյեմբեր 1879, երրորդ էջ, երրորդ սիւնակ։

Վոլիգէնի Պեշդըկէնի անհրաժեշտական Թարգմանութիւնն, որոյ մի պատառիկն նմոյշ ծանօթ էր մեզ, հրատարակեալ ի Բազմավէպ 1875 տարւոյն, էջ 123, անտարակոյս տանիքէն ցանկալի տպագրին ամբողջն գտանուելներն։ Նախնեաց մատենագրութեանց սիրողք անշուշտ հաճութեամբ պիտի կարդան Ս. Ղազարու տպագրին եւ Անտոնեան Հայոց ընտիր օրինակին քանի մի երեւելի տարբերութիւնները, զորս կը նշանակեմ ի ստորեւ. յետոյ առանձինն կը կարգեմ իմ ուղղութիւններս, որք յար եւ նման եղան այս ձեռագրիս ընթերցուածոց։

«Աւսի ղարձեալ անկիղծն եւ այնմ զոր ինչ խորհրդեալք ներփորձելը». Ա. էջ 10. Անտոնեանցն՝ «զոր ինչ խորհրդեալքն փորձելը»։ Եղծկեան հայկաբանութեամբ գրեալ մատենագրութեանց մէջ, յորոց կարգի է եւ Բարսղի Վեցօրեայն, ցարդ գտնուած չէ Ներփորձել։ Այսպէս եւ Ագաթանգեղի բանն որ կը յիշուի ի Նոր Հայկազեանին ի բառն Ներգործել, «Զգեցեալ յանձինս խելաց ղհաւատոյն եւ զսէր իբրեւ ղզրահս ամրութեան, յորում ոչ կարեն ներփորձել նենգութեան նետք բանսարկու Թշնամւոյն», ըստ ընտրելագոյն օրինակաց տպեալ է փորձել, էջ 514։ — «Մի՛ զի մարդն ոտնջծ երկրի չեւ եւս էր եղեալ». Բ. էջ 24. Անտոնեանցն՝ փեօղ, համաձայն յունին։ — «Թէ զինչ ելքը * որով ծածկեալ էր զերկիր». Բ. էջ 28. Անտոնեանցն՝ էր։ Յիշեմ հոս առ ի քննութիւն եւ ուրիշ քանի մի օրինակներ տարրաղատական անկատարի երրորդ դէմքին. «Զի ինձ այսպէս թուէր՝ եթէ հուր բոց ի գնդէն ելանէյեր եւ ի նշանացն». Փ. Բիւզանդացի, Ե. ե. էջ 202. — «Նոյնպէս եւ Խոտհակայ եւ Ցանկոյաց որդւոյ նորա ոչ ինչ պիտոյ եղեւ թէ տնէյեէր օրէնքն արդարութեան». Զգօն, (Կ. Պոլիս, 1824) Բ. էջ 25 — «Իբրեւ եկն եհաս կատարած չորեքհարիւր ամին, առաքեցաւ

* «Միջին և ստորին դարերէն՝ քիչ անգամ կայ գրաբար ով տարրաղատական անկատար՝ էյեր. իսկ Հինկերէն երեք չորս տեղ (Զգօնի քով քիչ մ'աւելի յաճախ) գտնուածը՝ շատ պղտաղ օրինակներէ ըլլալուն՝ ձեռագրեր երկբայական կը մնան. մանաւանդ որ մէկը՝ (ելանէյեր, Փ. Բիւզանդ.) Նոր օրինակի մը վրայէն կ'ուղղուի՝ (ելանէր)». Հ. Արսէն Այտընեան, Քնն. Քեր. արդի Հայերէն լեզուի, էջ 100. ծան. 83։

թարգմանութիւն վկայութիւն մը կը բերէ Ոսկեբերանի Եսայեայ մեկնութենէն, յորում կը կարդանք. «Սուղ ինչ թուղթ, ոչ կարէ ճարտասանութեան բանից, եւ ոչ համարադրութիւնք ինչ». բայց կամ սխալմամբ կը նշանակուի Ոսկեբ. Եա. փոխանակ այլոց մատենագրի եւ մատենագրութեան, կամ յեթէ արդարեւ Ոսկեբերանի Եսայեայ մեկնութենէն է, ընթերցուածն անհարազատ է, վասն զի Ն դարու ընտիր մատենագրաց հայկաբանութենէն բոլորովին օտար է բառն ճարտասանութեան: — «Ծնկի ծիւրի, հիւանդութեամբ ջերանի, յաղթէ». Ե. էջ 85. Անտոնեանցն՝ «Ծնկի ծիւրի ի հիւանդութեան, ջերանի յախտէ»: — «Զի եղիցին ցածուցիչք եւ յագեցուցիչք ցաւուց մերոց». Ե. էջ 89. Անտոնեանցն՝ յագեցուցիչք: Տես եւ 29 երորդ ուղղութիւնը: — «Կէսքն սողկաղնացք նորաբոյսք* են». Ե. էջ 96. Անտոնեանցն՝ նորեկք: — «Կէսքն զկերպարանս թռոց ունին խաժամուժ խռովութեամբ». Ե. էջ 97. Անտոնեանցն՝ թռոց: — «Եւ կաղնեաց եւ բոլորոյ պտուղ՝ ճաշակս գղտորահամս ունին». Ե. էջ 101. Անտոնեանցն պտղաբերոց, ինչպէս կը գրուի նաեւ ուրիշ հին օրինակի մէջ. (տես Բառաքննութեանս սկիզբը, յօդուած Ա. էջ 6): — «Զարմացար ընդ անպատում զօրաւորութեան աստեղաց որ են ի զարդ երկնից». Զ. էջ 107. Անտոնեանցն՝ զօրաւորութեան: — «Այս ամենայն փոփոխմունք ժամանակաց աստեղաց արգասաւորութեան լուսաւորացն շրջեալ անցանեն ի վերայ մեր». Զ. էջ 124. Անտոնեանցն՝ աստեղաց արգասաւորութեան: — «Զի մեծամեծ ինչ իրք որ ի բացուստ ակնարկեալ** երեւին, մեծայաղթ տարերքն նոցա իբրու սակաւիկ ինչ երեւին տեսլեան ականն». Զ. էջ 129. Անտոնեանցն՝ ակնարկեալ: — «Քանզի այլայլի տեսիլ աչացն երկնաբնակաց տարածիւք, եւ վասն զօրութիւն լուսոյն աչացն». Զ. էջ 130. Անտոնեանցն՝ երկնաբնակաց . . . յաչաց անտի: — «Եւ

* Տպագիրն կ'ուղղէ նորաբոյսք. բայց նոր փոխանակ բառլու նորոյ մինչեւ հիմա գտնուած չէ Ն դարու ընտիր մատենագրաց գրուածոց մէջ:

** Տպագիրն կ'ուղղէ ակնարկեալ, բայց ակնարկ անծանօթ բառ է Վ. Եզօրէի Թարգմանչին: Իսկ «ակնարկեալ բառն» գրուածն ԺԸ ճառին, երես 170, Անտոնեանց օրինակին մէջ կը գրուի ակնարկեալ, ուրիշ հին օրինակի մէջ ակնարկեալ, ուրիշ օրինակի մէջ ալ ակնարկեալ:

ղխաւարն մթապատ հուլոմքան ի տիեզերաց երկրէ»։ Զ. էջ 150. Անտոնեանցն՝ հուլոմքան տանէ։ — «Անուանեալ կոչին ողորկապատեանք, այսինքն կոպ+ եւ խեցգետինք»։ Անտոնեանցն՝ կոբէ+, համաձայն ուրիշ հին օրինակի. կոբէ է յունականն քա՛ռաբօ, յորմէ գղ. Crabe։ — «Քանզի յայնմ ծովէն զոր ոչ ոք երբեք կոխեցին զմկանունս նաւք իւրեանց, ճօճին պերճն ճեմօք»։ Է. էջ 146. Անտոնեանցն՝ «Քանզի յայն ծովու են զորոյ ոչ երբեք կոխեցին զմկանունս նաւք՝ իւրեանց ճօճ եւ պերճն ճեմանօք»։ — «Ո՞ր նոփառոր պնդիցէ զնոսա յայն գործ յօժարել»։ Է. էջ 147. ի ծանօթութեան կ՚ըսուի. «յօրինակին՝ ոչոյ. յոյնն ո՞ր հրաման նոփառորէ»։ Անտոնեանցն՝ «ոչո՞յ նոփառորէ հրաման ճեպիցէ պնդիցէ եւայլն»։ — «Եւ նապաստակ ծովու . . սածէ վաղվաղակի ստառերասա * օրհաս ի վերայ մարդոյ»։ Է. էջ 153. Անտոնեանցն՝ ստառերասա օրհասէ. յաջորդ է նախորդին պատճառաւ օրհաս բառի էն մոռցուած է. (տես եւ Բառաքննութեանս սկիզբը, Գլ. Ա. յօդ. գ. էջ 27)։ Ստառերաս+ կայ եւ ի մեկնութեան Ծննդոց Ոսկեբերանի։ — «Եւ ծիծառն, վառն գէ ու հոյ բնակոտոր կամօ+ ոփէց ատերկրառոր նուզէւ իբրեւ ի հանգիստ»։ Ը. էջ 161. Անտոնեանցն՝ վառն գէ ու փոյ բնակոտոր հոյ ոփէցն՝ ատերկրատ փառատ նուզէւ։ — «Զի կէսքն ի նոցանէն (ի թռչնոց) խորամանկք են, եւ կէսքն միամիտք. կէսքն բարբառօղք, եւ կէսքն անբարբառք. կէսքն գեղեցկաձայնք եւ քաղցրաբարբառք, եւ կէսքն խառաձայնք եւ ոփեղոքարքառ+»։ Ը. էջ 163. Անտոնեանցն՝ ոփեղոքարքառ+, ինչպէս կը պահանջէ արդէն կարգ բանին, զի հակադրութեամբք կը խօսի սուրբն Բարսեղ. փեղեցկոյոյն եւ +ողցրոքարքառ, որոյ հակառակ կը դնէ խոփոյոյն եւ ոփեղոքարքառ. Նոյնպէս ուրիշ հին ձեռագրի մը մէջ կը գրուի ոփեղոքարքառ։ Նոր Հայկազեանն Ոփեղոքարքառ բառը կը մեկնէ՝ «որ բարբառն է ոգեղ, քաղ, ուժգին, յորդաձայն. լտ. sonorus, canorus», եւ սոյնպիսի մտքով գործածած է ոփեղոքարքառ նաեւ Հ. Արսէն Բագրատունի Դիմոսթենի Ցաղագս Պսակին ճառին Թարգմանութեան մէջ, երես 204. «Ցորժամ ընդդէմ սոցա առել ինչ պիտոյ լինիցի, յայնս ոփեղոքարքառ, քաջուշեղ, կատակ գերագոյն, ողբերգակ Թէօկրինէս»։ —

* Տպագիրն կ՚ուզդէ ստառերասա։

«Իբրու թէ առաւել իմն առաւելութեամբ հասեալ եփեալ գեղեցկանայ ողջ չէր այնր ամենայնէ»։ Ը. էջ 165. Թերի կը մնայ բանն. Անտոնեանցն այսպէս կ'ամբողջացնէ. «Եւ ողջ չէր այնր ամենայնէ ի դարմանս մերոյ պիտոյից մաղակտոր հատեալ զատանիր»։ — «Եւ զաւուրսն զայնոսիկ . . . կոչեն՝ ողջերթէ փեսայ առաքէ»։ Ը. էջ 170. Անտոնեանցն՝ ողջերթփեսայ առաքէ. տես քիչ մը վերը ի ծանօթութեան ողջերթեայ բառին, էջ 64։ — «Բանն յայնժամ քաղքատեցաւ, եւ գործն մինչեւ ցայժմ եւս կարգի գայ»։ Թ. էջ 182. Անտոնեանցն՝ քաղքատեցաւ։ — «Բայց փոփոխմունս անձանց եւ զատ կերպարանս այլանմանս ունին զօր իւրաքանչիւր ազգաց անտառնքն»։ Թ. էջ 184. Անտոնեանցն՝ ըստ։ — «Զիք ճարտարութիւն արմատոգէտ, եւ ոչ փորձ իմաստնոց խորատէնին, թէ եղեն երբեք վարդապետք անտառնոց»։ Թ. էջ 188. Անտոնեանցն՝ խորան տնէն, որ պիտի ըլլայ խորատնէն, ինչպէս ուղղած է Հ. Արսէն Բագրատունի իւր Հայերէն լեզուի զարգացելոյ քերականութեան մէջ, երես 585։ — «Եւ ապա մեղմածով որոճալովն մանրեսցի»։ Թ. էջ 192. Նոր Հայկազեանն կ'ուզէ կարդալ մեղմածով, ինչպէս կայ նաեւ անծով. Անտոնեանցն ունի մեղմածով։ — «Քանզի ոչ եթէ վայրապար ինչ գտանի յաւե-տենս* կերպարանք խածուոյ եւ նմանութիւն երկուցն քաղըր-թաց»։ Թ. էջ 192. Անտոնեանցն՝ յանսատան։ — «Մինչդեռ զխորին ժողովէր Պաւղոս՝ իժ մի քարբ կախեցաւ զձեռանէ նորա»։ Թ. էջ 196. Անտոնեանցն փոխանակ խռիս դնելու, բոլորովին նոր բառ մը կը գործածէ. «Մինչդեռ զծառն ժողովէր Պաւղոս» (Հրէշտակ կը գրէ Պետրոս)։ Անշուշտ այս ծած բառէն կը ծագի Ստեփաննոս Ասողնկայ Պատմութեան ծըծան բառն. «Ցօղուն եւ ծըծան պատեալ զնովաւ՝ հրով առչորեցին»։ Գ. իբ։

Հիմա յիշեմ իմ ուղղութիւնները։

52. (1) «Որ յառաջ քան զառնուլն հրաման՝ լինել իշխան որդւոց ազգին իւրոյ, յայտ յանդիմանն երեւէր՝ թէ ճոխ արելեաց եւ չարատեաց է»։ Ա. էջ 2։ Ուղղելի ճոխաբերաց։

53. (2) «Եւ ինձ այսպէս թուի, թէ աւելորդ իմաստու-

* Տպագիրն կ'ուզէ յաւետենս։

թիւնն նոցա զայսպիսի յանցանաց գանձեաց նոցա»․ Ա․ էջ 8։ Ուղղելի յանցանաց։

54․ (3) «Զի մի լռեսցէ և դադարեսցէ մեղս ընթացս գնա- ցիցն»․ Ա․ էջ 9։ Ուղղելի է մեղաընթացս գնացիցն»։ Տես և Գ․ էջ 56․ «Ընդդադար և մեղաքննոց վտանգովք»։

55․ (4) «Այսի դարձեալ սկիզբն սկսուածի իրաց ինչ որ առնուցուն սկիզբն լինել․ ․ ․ ․։ Այսի դարձեալ սկիզբն և այնմ զոր ինչ խորհիցիմք ներգործել (կարդա՝ խորհիցիմքն գործել), կամ արկանել հիմն տան, կամ հարկանել բուռն զգործս (կարդա՝ զգործոյ) տախտակամած յատակացն աւուր, որ է սկզբն կտուածոյ կազմութեան նաւին»․ Ա․ էջ 10։ Ես ու- զած էի ուղղել սկսուածոյ, ինչպէս քիչ մը վերն ըսաւ «սկզբն սկսուածի», և ինչպէս կ'ըսէ դարձեալ ուրիշ երկու տեղ․ «Եւ յառաջին նաւագին ի սկզբն սկսուածոյ գործոյն անդայտ մա- ղովք անօսր գործոյն զգործած գբոցն յօրինէ»․ Ը․ էջ 165․ – «Այնպէս համարիմ թէ բնաւ ամենեւին և ոչ ի սկզբն սկսուա- ծոյն մերձեցայ»․ անդ․ էջ 177։ Բայց Անտոնեանց օրինակն կը դնէ «որ է սկզբն կցուածոյ կազմութեան նաւին»․ սկսուած և կցուած երկուքն ալ կրնան յարմարիլ․ քննելի է յայլ ձեռա- գիրս։ Սկզբն սկսուածոյ թուի թէ է ոճ ասորի, վասն զի Եփրեմի Աւետարանի Համաբարբառ մեկնութեան մէջ ալ (Մ․ Ղազար, 1836) կը կարդանք, երես 255․ «Զի դարձեալ միւս անգամ իբրեւ վարձուք մխիթարութեանդ քո տացի մեզ [illegible] [illegible] ի զաւակ և ի խմոր մարդկութեան»։

Նոր Հայկազեան և Առձեռն բառարաններէն ջնջելի է բառն կտուած, որ առաջնոյն մէջ կը մեկնուի․ «սկզբնա- ւորութիւն կառուցանելոյ զնաւ, կամ ողնափայտ»․ իսկ յերկրորդին՝ «նաւ շինելու հիմ՝ ողնափայտ դնելը»։ Հ․ Արսէն Բագրատունի իւր Հայկ Դիւցազներգութեան է Դրուագին 1020 տողոյն մէջ կը դնէ կտուած իբր հարուած, կտեմ բայէն հանելով․

«Ցիշանել անհեղ՝ սըրոյն ի տխտանեանըն սաղաւարտ՝ Նայրն եւեթ ի Մաքմասայ դիպեալ խորան գըլխանոցին, ցնորեալ յուժգին կըպտատծոյն և բերանսեալ անկաւ յերկիր»։

56. (5) «Աղքատութիւն իւրեանց բնութեան մոլորեցոյց զմարդիկ խորհել զայսպիսի օրէն խորհուրդս զԱստուծոյ». Բ. էջ 26։ Ուղղելի անօրէն։ Տես և Ղ. փարպեցւոյ Պատմութեան մէջ, երես 3. «ի վիճակէ բաժնոյ օրինացն արանց քաջաց ի տոհմէ նախարարացն Հայոց տալ զանձինս անհամարս ի նահատակութիւնս», որ կ'ուղղուի անօրինացն։

57. (6) «Եւ այսու բարբառովն լուծաւ եղծաւ խաւարն, և քակեցաւ տղայանացաւ աղջամուղջն, սատակեցաւ կորեաւ տխրութիւնն». Բ. էջ 35։ Ուղղելի տղայանեցաւ։

58. (7) «Ըստ օրինակի այնոցիկ որ իցեն ի դարբնոցի, և յանդադար ձայնէ կռանին և ուռանն առ դունչին ականջքն նոցա». Գ. էջ 48։ Ջնջելի է առ, որ «ուռանն» և «դունչին» բառերէն չփոթած է։

59. (8) «Հրաման Աստուծոյ առին ջուրքն զգնացս իւրեանց». Դ. էջ 69։ Ուղղելի հրամանաւ, ինչպէս կ'ըսէ յաջորդ էջը. «Աստուծոյ հրամանաւ ջուրքն առին զգնացս իւրաքանչիւր»։

60. (9) «Մերկեաց ընկէց ամենեւին զծանրատաղտուկ լուծն մեղաց». Ե. էջ 95։ Անտոնեանցն եւս ունի Մերկեաց. բայց ես կարծեմ թէ կարդալու է Մերժեաց. Նախնիք շատ տեղ կը գործածեն մերժել ընկենուլ, մերժեալ ընկենուլ. օրինակ իմն Ղ. փարպեցի իւր Պատմութեան մէջ, երես 32. «վաղվաղակի մերժեալ ընկենոյր զխոսրով յիշխանութենէ իւրոյ թագաւորութեանն»։

61. (10) «Նոյնպէս և թռչունք ըստ նմին նմանութեան ըղձոն խաղան յօդս և այսր անդր թեւեն (ձուրձ՝ ձեւեն) պատառեն զլոյծ և զտարած բնութիւնն». Ը. էջ 161. — «Ուրախ արար զձեզ և օդ իւրով սլացեալ թռչնովքն, որ հանդէպ նորա և ի նմա ըղձոն խաղան փայելչութեամբ». անդ. էջ 179։ Ուղղելի ըղձոն, ինչպէս կ'ըսէ յէջ 174. «իբրեւ միով ժամադիր ժամու չարժեալ ըղձոցեւ միահոյլ ի չու անկեալ», և ինչպէս կ'ըսեն ուրիշ նախնիք. «ի նոյն օդս գիշակեր թռչունքն ընդ ազնուազոյն թռչունսն ըղձոցեն». Եզնիկ, էջ 146. — «իբրեւ զարծուիս վերացեալ ըղձոն». Ոսկեբ. Եփես. ԺԳ. Յորդ. էջ 816. — «Տես որպէս դարձեալ յարուցանէ զլոյղն և բարձրաթռիչ տայ ըղձոյն». Ոսկեբ. Հռ. ԺԵ. էջ 205։ Ու և ւ կը չփոթին երբեմն ի ձեռագիրս. այսպէս է և բառն Անլլուկ, զոր Նոր Հայկազեանն կը կարդայ Անչչուկ. «Այս իսկ է եթէ անլլուկ հանդստեան ցանկացաւ». Ոսկեբ. Բ Տիմ. Ժ. էջ 266։

62 (11) «Զկէսն ուշաբերս (անուանեցին), այսինքն զմեղուս». Ը. էջ 162։ Ուղղելի անուշաբերս, ինչպէս կ'ըսեն նախնիք ուրիշ տեղ մեղուի համար. «Բարւոք փարկանիմ նմանել ինձ մեղուին՝ փոքուն այն և անուշաբեր թռչնոյն». Ոսկեբ. երկրորդ ներբ. ի Գր. Լուս. Հ. Բ էջ 826. — «Զօրէն անուշաբեր և իմաստուն թռչնոյ ի վերայ թռչելով մարգաց հին և նոր կտակարանաց». Գրիգոր Սկեւռացի, ներբ. ի Ն. Լամբրոն. Սոփերք Հայկականք, ԺԵ. էջ 19։

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 12, 24, 31. տես և 14 երորդ և 38 երորդ ուղղութիւնքը։

## Ը. ՅՈՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆԻ

### ՃԱՌՔ

63 (1) «Այն էր ուրոյն ողորմութիւն, այն էր աստուածպաշտութիւն և կատարեալ մարդասիրութիւն» Ե. էջ 50։ Թուի ուրոյն։

64· (2) «Որ և քեզ պարտ է լինել նմանող քաջացն և առաքինեաց, և ոչ գայլացելոցն հովուաց՝ որք անուամբ միայն են հովիւք, և ի հաւատն գազանաբար յարձակին և գայլաբար կոտորեն և ցրուեն և կորուսանեն». Թ· էջ 85։ Ուղղելի է հաւատն, այսինքն է հօտն։ — Նոյնպէս ի Պատմութեանն Թ· Արծրունւոյ, Գ· ը· էջ 189· «Եւ կարծէր յայնժամ՝ ի ձեռն խոշտանգանաց դիւրաւ արկանել զնոսա ի հաղթս կորուսելոցն և մոլորելոցն ի հաւատէն Քրիստոսի»։ կարդա ի հաւատէն, այսինքն ի հօտէն։

65· (3) «Նստի հանապազ, և խորհի պատահարս չարեաց և դիպուածս փորձութեանց նախանձորդին։ Ըղձանայ, շրջի մտախորհ յ[illegible]մարելու, և երկնէ իբրեւ ծննդական». ԺԳ·, էջ 108։ Կիտադրութիւնն ուղղելի է այսպէս· «Նստի հանապազ, և խորհի պատահարս չարեաց, և դիպուածս փորձութեանց նախանձորդին ըղձանայ· շրջի մտախորհ և այլն»։ Գալով յ[illegible]մարելու բառին, զոր կը գործածէ նաեւ Հ· Արսէն Բագրատունի Դիմոսթենի Ցաղագս Պսակին ճառին մէջ, երես 148, «Նա եւ չամաչեմ եւս՝ յ[illegible]մարելու մախամարդակ ածել ի մէջ դատաստան առանց իրիք վնասու լինելոյ», Ոսկեբերանի Եփեսացւոց մեկնութեան մէջ գրուած է յիմարելու· յայտնի է թէ Մանդակունի շատ փոխառութիւններ բրած է Ոսկեբերանի մեկնութիւններէն· ահաւասիկ Ոսկեբերանի հատուածն· «Ցանկ մտախորհ յիմարելու սրտաուռուչ տրտում և տխուր շրջի»· ԺԵ· էջ 832։ Նոյնպէս և բանն Ոսկեբերանի մեկնութեան Մատթէի ըստ միոյ ճառընտրի Ս· Ղազարու, «Զնախանձ ի բաց մերժեսցուք, զարտմութիւն և զյ[illegible]մարութիւն, և զառանց բարբառոյ աղաղակն հատցուք», գրուած է յիմարութիւն ի վարս Հարանց, Հ· Բ· էջ 606· «Զնախանձ մերժեսցուք, զարտմութիւն և զյիմարութիւն և զառանց բարբառոյ զաղաղակն ի բաց մերժեսցուք»։ Ո՞ր է ուղիղն· Ց[illegible]մարեմ և Ց[illegible]մարութի՞ւն, թէ Ցիմարեմ և Ցիմարութիւն։ Առձեռն Բառարանի երկրորդ տը-

պատգրութեան մէջ կը դրուի . «Ցասմամբք . ոխակալութեամբ մնամնալ» . «Ցասմնութիւն . ոխակալութիւն» ։

66. (4) «Որք զերկրաւորս միայն խորհին, և ոչ զվերս առաքինութեան՝ զոր յերկինս վայելեմք . և մեծաւ շէջայնեալք նմանեն անասնոց անմտից՝ յամենայն ժամ խոտաճարակ» . ԺԶ. էջ 125 ։ Ուղղելի անշէջայնեալք ։

67. (5) «Զարեօքն չարաչար խոցոտիմք, և անհոգ եմք իբրև զառողջս . ընդ մէջ հիացեալ զարմանամ և ողբամ հանապազ» . Ի. էջ 149 ։ Թուի ուղղելի ընդ որ մէջ ։

68. (6) «Որ թէպէտ և սուղ ինչ իցեն տրտմութիւնքն, սակայն նա ի պղտորեալ միտս նորա անհնարին և անչափ կործրոցուցանէ, որով և զսիրան յիմարեցուցանէ» . ԻԳ. էջ 174 ։ Թուի ուղղելի կործեցուցանէ ։ Տես և ի ճառն ԻԱ. էջ 160 . «Եւ սատանայ զայն փոքր կործեցուցանէ» . և ի ճառն ԻԶ. էջ 203 . «Յիշեա վասն զի (կարդա Եւև—ա—ն՝ զի վասն) փոքր կործեցուցանելոյ Ադամայ զպատուիրանն Աստուծոյ՝ ել ի դրախտէն» ։

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 18, 31 . տես և 25 երրորդ և. 41 երրորդ ուղղութիւնքը ։

## Թ. ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Մ. Խորենացւոյ Պատմութիւնն մեր ազգին ամենէն պանծալի յիշատակարանաց ժողովարանն է . արժան էր որ ունենայինք այս Պատմութեան նոր եւ ընտիր տպագրութիւն մը, համեմատութեամբ հնագոյն եւ ստուգագոյն օրինակաց, եւ հմտալից ծանօթութեամբք եւ լուսաբանութեամբք ճոխացեալ։ Խորենացւոյն ձեռագրաց բաղդատութեան ժամանակ պէտք չէ մոռնալ նաեւ այն մատենագիրները որք իրենց գրուածոց մէջ կը պատուաստեն հոյակապ պատմաբանին այլ եւ այլ հատուածները .

տեղ տեղ առնց ընթերցուածքն Խորենացւոյն ձեռագրաց ընթերցուածներէն լաւագոյն կ'երեւին, եւ թերեւս համարձակելի ըլլայ առնց վրայէն սրբագրել Խորենացւոյ Պատմութեան գոնէ ամենէն յայտնի վրիպակները։ Այսպէս է օրինակ իմն Ա գրոց ԺԹ գլխուն մէջ Վփաւկար անունն, զոր Յոհան կաթողիկոս եւ Գր. Մագիստրոս կը գրեն իբրեւ երկու անուն, Վջրոսմ, Կար. (տես Բառաքննութեանս սկիզբը, Գլ. Ա. յօդ. ա. էջ 11)։ Ցիշեմ քանի մ'ուրիշ օրինակներ. «Դորջեւուն գէ առաջի անհաւատից արգոյ եւ պատուական ցուցանէ Աստուած զծառայս իւր». Գ. ծա. Խորենացի այս խօսքերս կ'ըսէ Ս. Սահակայ համար, որմէ առնլով Ղազար Փարպեցի կը գրէ նոյնպէս Ս. Սահակայ համար. «Քանզի մեծարէր զնա, նախ վասն ազգականութեան առնն, և դորջեուն գէ առաջի անհաւատիցն արգոյ եւ պատուական ցուցանէր զսուրբ ծառայս իւր Աստուած». էջ 65։ — «Որ (կորզա Ուր) գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ անցանէ ընդ խոխոմաջէգս եւ նեղս». Ա. ժբ. Յոհան կաթողիկոս կը գրէ. «Գետն Երասխ յորձանուտ խոխոջիւք վազս առեալ եւ թափ անկեալ ընդ նեղ եւ ընդ նօսրք խոխոմս քարանձաւի միոյ, որ այժմ ի բազմաց Քարավազ անուանի». էջ 12. տպ. Էջմին։ Գտնուեցաւ Խորենացւոյ օրինակ մը յորում կը գրուի «ընդ խոխոմ ջէգս եւ նեղս»։ — «Վասն արայեան Արայի, եւ թէ սորա որդի Անուշաւանն որ Սօս անուանի... թողլով արու զաւակ ամենահարուստ եւ չատահանճար յիր եւ ի բան զԱնուշաւանն որ Սօս անուանի, քանզի ձօնեալ էր ըստ պաշտամանց ի սօսին Արամանեկայ». Ա. ի. Յոհան կաթողիկոս կը գրէ. «Թողլով իւր որդի բազմահարուստ եւ լիահանճար յիրս եւ ի բանս զԱնուշաւանն սօսանուէր». էջ 15. նոյնպէս Գր. Մագիստրոս սօսանուէր կը գրէ իւր ԺԱ թղթոյն մէջ. «Եւ ոչ սօսին յԱրմաւիր առ դրան ապարանին արքունի, զոր Անուշաւանն պատուէր արայեանն մանուկ, վասն այսորիկ սօսանուէրն կոչիւր»։ Այսպիսի շփոթութիւն մը անուանել եւ նուիրել բայերու կայ նաեւ Ոսկեբերանի Մատթէի մեկնութեան մէջ, Ա. ժբ. էջ 174. «Որթ քանդակէին եւ Բելփեգովէր անուանեցան». յոյնն կ'ըսէ Բելփեգովրայ նուիրեցան։ — «Առ հասարակ նմա Եղլադա մատուցանէր զոհն». Բ. ժգ. Յոհան կաթողիկոս կը գրէ. «Զոհս ընդ դիւցազանց մատուցանէ Եղլադա». էջ 18։

Բ գրոց ԺԸ գլխուն մէջ կը գրուի. «Զայսու ժամանակաւ թերահաւատութիւն լեալ Տիգրանայ ի պատանին Միհրդատ, չկարծելով ինքեան տօռնորդէ». այս վերջին բառս գեղջուկ գաղափարողի մը գիւտն կ'երեւի ինձ. ի ծանօթութեան կը նշանակուի թէ երեք օրինակք տեռորդէ կը գրեն. կարծեմ Խորենացին եւս այնպէս գրած է։ Ասոր նման է Ոսկեբերանի Եբրայեցւոց թղթոյն մեկնութեան մէջ Երեփ* փոխանակ գրելու Եփ. «Մեք վասն մեր անձանց տակաւ ոսկի չարհամարհեմք, եւ նա վասն մեր զորդին իւր Երեփ». ԻԳ. էջ 525։ — Սոյն գրոց ԻԶ գլխուն վերնագրին մէջ կ'ըսուի. «Թագաւորութիւն Աբգարու, եւ մտանել բոլորովիմբ Հայոց ընդ հարկաւ Հռովմայեցւոց, եւ պատերազմ ընդ զօրս Հերովդի, եւ սպանանել զեղբօրորդի նորա զՅօսէփ». իսկ ի կարգի պատմութեանն կը գրուի նոյն գլխուն վերջը. «Պէսպէս ցաւոց զնա (զՀերովդէս) ըմբռնեալ վասն որոյ ի Քրիստոս համարձակեցաւ, որպէս պատմէ Յովսեպոս. առաքէ զեղբօրորդին իւր, որում տուեալ էր զդուստր իւր ... եւ նորա առեալ զբազմութիւն զօրացն, գայ հասանէ յաշխարհն Միջագետաց, պատահէ Աբգարու ... եւ մարտուցեալ մեռանի». հոս Հերովդի եղբօրորդին կը յիշուի, բայց առանց անուան։ Յօսէփ անունն արդեօք «որպէս պատմէ Յովսեպոս» միջանկեալ խօսքէն չփոխած է. այս դիտողութիւնս ըրած է լմ ազնիւ եւ տաղանդաւոր բարեկամս, Հ. Սուքիաս Պարոնեան. իսկ Վիկտոր Լանկլուա կը թարգմանէ. «Hérode, · · comme le raconte Josèphe, envoie son neveu Joseph, à qui il avait donné sa fille»։

69. (1) «Զորոց մեզէն իսկ հիմունս այսպիսեաց բանից ընթեռնուլ արժանաւորեցաք ի չորս հագներգութիւնս, զարգասաւորին ի բանս և զիմաստնոյն իսկ և զմեծ իմաստնոցն իմաստնագունին». Ա. իա։ Ուղղելի զէ ՃԶ։ Նոյնպէս և Ղ. փարպեցւոյ առ Վահան Մամիկոնեան թղթոյն մէջ. «Եւ լո՛կ պղափօրոս տենչից հայեցմունսն՝ ընդ կատարեալ չնու-

* «Ե դարուն սկիզբներէն ալ տեղ մը կայ գրած՝ Երեփ, եթէ գրչագրաց աղաւաղութիւն չէ». Հ. Արսէն Այտընեան, Քեր. արդի հայերէն լեզուի, էջ 72։

թեամբ լծեաց փրկիչն». էջ 579. ուղղելի է մէջ պարծանաց, ինչպէս քիչ մը ետքը կ'ըսէ. «Որ հայր ի կին մարդ է պարծանացանկութեան»: Նոյնպէս Արիստակէս Լաստիվերացւոյ Պատմութեան մէջ. «իսկ ես ոչ թէ ապառնալեաց եմ քարոզ, այլ զեղեալ և դէպ-ի ելեալ-իրս պատմեմ». ԺԷ. էջ 74. կարդա դէպքի:

70. (2) «Եւ իսկոյն ազգեցին Վաղերիանոսի կայսեր. բայց վասն զի գոնդք անցեալ ընդ Դանուբ գետ՝ զբազում գաւառս գերի վարեցին, և զԿիւկղադայ կղզիս աւար առին, վասն որոյ ոչ ժամանէ մերոյ աշխարհիս թեւարկել Վաղերիանոս». Բ. հզ: Ամենայն թարգմանիչք գոնդք բառը զօրաց գնդեր կը հասկընան և այնպէս կը թարգմանեն. Ս. Ղազարու իտալերէն թարգմանութեան մէջ կ'ըսուի. *alcune schiere*. Լըվայլեան տը Ֆլոռիվալ կը թարգմանէ. «Mais comme *des troupes*, passant le Danube, réduisirent en captivité beaucoup de cantons, pillèrent les îles Cyclades», եայլն: Վ. Լանկլուա կը թարգմանէ. «Cependant, comme *quelques troupes*, en franchissant le Danube, enlevèrent beaucoup de prisonniers dans plusieurs cantons et saccagèrent les îles Cyclades» եայլն: Բայց սխալ է. գոնդք հոս գլխագիր գրելու է, վասն զի Գնդաց կամ Գդաց կամ Գթաց կամ Գոթացւոց ազգը կը նշանակէ, գղ. Goths: Տես նաեւ Գ. գրոյ ԻԹ գլուխը. «Յետ բարեբախտագոյն Վաղեսի պատերազմաւ Գնդացն յաղթութեամբ դարձի». (տպագիրն կ'ուղղէ Գոթացն.) տես յայտնագոյն եւս յԱշխարհագրութեան Խորենացւոյ, էջ 594. «Գերմանիա ... զԴանուբ գետաւ. ունի ազգս եօթն, յորոց մին Գոթք»: Գոնդք իբրեւ Գոթացիք կը յիշուի նաեւ որբոյն Կիւրղի Երուսաղեմացւոյ կոչումն ընծայութեան գրոց մէջ (Վիեննա, 1832) Ժ, էջ 176. «Վկայեն Պարսիկք և Գոնդք* և ամենայն խուժադուժ ազգք հեթանոսաց»:

* Այսպէս կը գրէ Նոր Հայկազեանն ի բառն Գունդ, բայց Վիեննայի տպագիրն ունի Գոթք:

Նոյնպէս յԱգաթանգեղի Պատմութեանն, ուր Ս. Ղազարու տպագրին կը գտնէ «իշխանն գրոց, թագաւորն գրոց», էջ 44 և 47, բարիզեան հին օրինակն ունի «իշխանն գնդոց, թագաւորն գնդոց»։ Յետին դարուց մատենագիր մ'ալ, այն է Մատթէոս Ուռհայեցի, գնդոց կը գրէ իւր Պատմութեան մէջ. «գերի առեալ զամենայն աշխարհն գնդոց». էջ 103. «ժողով արարեալ զամենայն աշխարհն արևմտից և գնդից». էջ 118. «Արար ժողով մեծ և ահագին բազմութիւն զամենայն աշխարհն գնդոց». էջ 237։ — Ըստ այսմ սոյն գրոց Հ գլխուն մէջ ուր կ'ըսուի. «Քանզի անտեղի է մեզ այժմ երկրորդել զառասպելսն յաղագս երազոյն փափաքոյ», գլխագիր գրելու է Փափաքոյ, զի է արևելեան անունն Պապէք, ինչպէս տեղեկացայ Վիկտոր Լանկլուայի Collection des historiens anciens et modernes de l'Arménie գործէն, Հ. Ա. էջ 110, ծանօթութիւն 3. բայց նոյն ինքն Լանկլուա զարմանալի անմտադրութեամբ Խորենացւոյն վերոյիշեալ հատուածը թարգմանած է այսպէս. «Car il serait déplacé de répéter ici les contes relatifs au songe du *désir*». տես և Ղ. Փարպեցւոյ Պատմութեան մէջ Փափագ Ա[illegible]եան, էջ 211, 222։ — Այսր հակառակ Աղրամ բառը որ յատուկ անուն կը կարծուի ԺԵ գլխուն մէջ, գրելու է մանր գրով աղրամ, այսինքն բալասան, ինչպէս նշանակուած է արդէն Խորենացւոյ Պատմութեան Ս. Ղազար տպուած իտալերէն թարգմանութեան մէջ, երես 133։

71. (3) «Զեպիսկոպոսս և զքահանայս հարկաց պարծանաց կապեալ՝ յերկիրն Պարսից տայր տանել». Գ. լզ. պարծանաց կը գրուի նաև Խորենացւոյ փոքրադիր Պատմութեան մէջ (Ս. Ղազար, 1827)։ Ուղղելի պարծանաց։ Տես և ի Թովմա Արծրունի. «Եւ զօրաժողով եղեալ Մուշէի պարծանաց հարկաց արքունի». Բ. գ. էջ 120։

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 11, 21, 32, 34, 35. տես և 14 երորդ և 41 երորդ ուղղութիւնքը։

## ՆՈՐԻՆ ԳԻՐՔ ՊԻՏՈՅԻՑ

72. (1) «Եւ անդ նոյն օրինակ. ի բաց զդառնաշունչն մրրկօք սառնամանիս, որք զխոշորաձայնականն՝ բերեն ախտաժէտութիւնս և զմաղասացն յուզմունս». Է. գ. էջ 491։ Ուղղելի խոշորաձայնական։ Տես ի Ճառս Ոսկեբերանի, էջ 229. «Մի ինչ ինձ խօսք և ձայն ասիցես և քիրտն և աղտ և զայլ ինչ զոր բամբասողքն մարմնոյ խօսին»։

## Ժ. ՓԻԼՈՆ ԵԲՐԱՅԵՑԻ

### ՃԱՌ ՅԱՂԱԳՍ ՅԱՌԱՋԱԽՆԱՄՈՒԹԵԱՆ

73. (1) «Վասն որոյ ամենեցուն անարժանագործացն ի բաց գնալ, մնացեալ լինի սքանչելի և յաւէտ յէշէւ քերթողացն յաղագս աստուածոցն շատխօսութիւնք». Բ. էջ 74։ Թուի ուղղելի յաւէտ յէշէլ։ Տես ի Պատմութեանն Աղեքսանդրի, էջ 163. «Ամենեքին նմա երկիր պագանեն երիցս յաւուր, և ազգայնոցն պսակ յօրօյէշէլ»։

74. (2) «Քանզի Աստուծոյ զայս ասային կազմել, փոխանակ մեղաւորաց տանջանս, որպէս զօրագլխաց և իշխանաց լուրէ և երկաթս». Բ. էջ 115. ի Լուսանցի ձեռագրին գրուած է յուրէ։ Ըստ իս ոչ լուրէ կարդալու է և ոչ յուրէ, այլ սուրէ, այսինքն կապանս։ «Ջաւեստարանն սուրբ՝ յոր երդուաւ Թագաւորն Արշակ՝ կապէր պատէր երկաթի սուրէօք, և խարոլ մատանեաւ կնքեալ՝ ի գանձ տան հրամայէր և տայր հրաման պահել զգուշութեամբ». Փ. Բիւզանդացի, Դ. ժզ. էջ 126։

Տես ուրիշ ուղղութիւն մը էջ 24։

## ՆՈՐԻՆ ՑԱՂԱԳՍ ԲԱՆ ՈՒՆԵԼ ԵՒ ԱՆԱՍՈՒՆ ԿԵՆԴԱՆԵԱՑԴ

75. (1) «Իսկ նա ի վեր համբարձեալ կարի յոյժ զագին վիշապակն՝ ի վերայ շարժէ զայն, պատրելով, զի իբր առ հակառակակայ կենդանի պատրեալ ձգեսցի, և յերեսն ի գուճ իջեալ յարձակի ի վերայ». էջ 151։ Հ. Մկրտիչ Աւգերեան կը թարգմանէ լատիներէն. «Ipse dein *super faciem* pronus serpebat totus humiliatus»։ Ուղղելի է յերեսն. Երեսք կ՚ըսուին անասնոց առաջին ոտքերն կամ սրունքն։ Ցէջ 135 կ՚ըսուի. «Երեսօքն գնդի խաղայր»։ Նոյնպէս յէջ 137. «Զառաջինն ամենեքին միանգամայն փեղքն յերես անդր ի գուճ իջեալ՝ նահատակադրին երկիր պագին». լատիներէն կը թարգմանուի. «Primum omnes simul elephantes *facie* tenus genuflectentes adorarunt agonothetam». Կ՚երեւի թէ հոս ալ Երես հասկցուած է Երեսք բառն։

## ԺԱ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱԼԵՔՍԱՆԴՐԻ

Ցէջ 162 ուր կ՚ըսուի, «Եւ մեք տարւոյ տարւոյ առնեմք կացուրդս, տօնս ամենաժողովս, ձիապանութիւնս զենլով Արամազդայ եւ Պոսիդոնի եւ Հեփեստեայ», ի ծանօթութեան դրուած է. «ամենայն օրինակք Պիսիդոնի. եդաւ ըստ յունին»։ Թուի թէ Պիսիդոն՝ յունարէն Պոսիդոն անուան հայեցի ձեւն է, եւ ըստ այնմ կրնայ ուղիղ համարուիլ. Նախնիք ուրիշ տեղեր ալ Պիսիդոն կ՚ըսեն. ահաւասիկ քանի մի վկայութիւնք. «Զհեփեստեայ կաղութիւնն ի հուր եւ զՑերեայն յօդս եւ զԱպողոնեայն յաբեգակն եւ զԱրտեմեայն ի լուսին եւ զՊիսիդոնեայն ի ծով». Վարք Հարանց, Հ. Ա. էջ 68. — «Ապողոն, Պիսիդոն եւ Արտեմիս եւ Ափրոդիտէս». Վկայաբանութիւնք Սրբոց, (Ս. Ղազար, 1874) Հ. Ա. էջ 567. — «Երկիր ի մեծէն Ապողոնէ եւ ի դիցն Հերակլէ . . . եւ ի ծովապետէն Պիսիդոնէ». անդ. էջ 712. — «Նա եւ անհաղնութիւնք աշխարհապարունակ երկրապարփակ տիեզերաաաստ պտուտկացն Պիսիդոնի». Գր. Նարեկացի, Պատ.

խաչին Ապարանից, էջ 373. — «Յորժամ ջուր դէնիզդէնգեչեալ անձն ընդունէր». Վկայաբանութիւնք սրբոց, Հ. Ա. էջ 424։

76. (1) «Եւ զձեզ պախարակեմ որ դիւրաւ զլսելիսդ է ղուլաք դութ այլոց երբեմն փառաբանութեանց և շողոմողաց». էջ 22։ Ուղղելի է ղուլ դութ, այսինքն գործածութեան տալ, փոխ տալ. գղ. Prêter l'oreille։ — Նոյնպէս ի վարս Հարանց, Հ. Ա. էջ 19. «Այնուհետեւ ընդ կարգօք կրօնիւք զանձն է գօյր օրթաքներ և ժուժկալութեամբ զինքն կրթէր». կարդա է գօր օրթաքէր, այսինքն կը գործածէր. քիչ մը ետքը յէջ 50 կ'ըսէ. «Քանզի բազում կրօնիւքն և փոյթ վարուքն զանձն է հէր օրթաքնէր»։ Տես և 42 երորդ ուղղութիւնը։

77. (2) «Եւ անդուստ զօր ժողովեալ (Աղեքսանդրոս) բազմութիւն իբր բիւրս եօթն և տասն, և որ հառալ էր կէբաթոնն որ կոչի Տաւրոս, հարեալ զնիզակն մեծապէս յերկիր ասաց. Եթէ ոք հզօրագոյն ի Հելլենացւոց կամ ի խուժադուժ ազգաց կամ յայլոց թագաւորաց բարձցէ զնիզակս զայս, անձին չար նշանակէ. քանզի քաղաքն նորա ի հիմանց բարձեալ լիցի». էջ 59. ի ծանօթութեան կ'ըսուի թէ ուրիշ օրինակի մէջ գրուած է «որ հէառլ էր կէբաթոնն կոչի», և թէ այս հատուածս յոյն և լատին օրինակաց մէջ չի գտնուիր։ Ներելի՞ է կարծել որ հէառլէրկէբաթոն Տաւրոս լերին (որ հայերէն անուամբ կ'ըսուի Նաւէ Ցուլ) ածականն ըլլայ, իբր յունարէն հիւբէրկէրաթոն, այսինքն անդր-եղջերայէն, հիւբէրեղջերայէն, (հիւբէր՝ անդր, գեր, ի վեր քան, կէրաս՝ եղջիւր)։

78. (3) «Եւ սոցա բազմութեամբ և արիութեամբ և կամօք յաղահօֆա ցուցեալ դադարեցուցի զհեւրոպայ իրսն». էջ 75։ Ուղղելի յաղահօֆայացուցեալ։ Տես և ի ճառին փիլոնի յղ. Յաւաջախնամութեան, Բ. էջ 71. «Որպէս զի արդ ահա դադարեալ յաղահօֆայացէ»։

79. (4) «Քանզի մայրն նորա Ողոմպիադա բազում անգամ գրեաց առ նա վասն Անտիպատրեայ, և դժուարեալ յոյժ խոտորեալ անուրջէր, զի մայր էր Աղեքսանդրի». էջ 172: Ուղղելի խոթեալ անուրջէր: «վասն մարդկանն որ խոթեն անուրջէն զամուսնութիւն». Եւս. Եկեղ. Պատմ. Գ. Լ. էջ 208. — «կամ թէ գուցէ և զՊաւղոսեան եւս խոթէ և անուրջէ դուք». անդ. — «Բայց դու որ զբժիշկս խոթեալ անուրջեցեր, թէ չիք իմ ի նոցանէ գտեալ զառողջութիւն». Եզն. Բ. էջ 304:

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 13, 32:

## ԺԲ. ԵՂԻՇԷ ՎԱՐԴԱՊԵՏ

### ՃԱՌ Ի ԽԱՉԵԼՈՒԹԻՒՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

80. (1) «Որպէս իգական ցանկութիւն հեղեղ և տապալի ի տենչանս կերակրոց». էջ 280: Ուղղելի յեղեղ, ինչպէս կ՚ըսէ յաջորդ էջը. «Ամենայն մասամբք զգայութեանցն յեղեղեալ էին ի ցանկութիւն»: Տես և ի Պատմութեանն Վարդանայ պատերազմին. «ի ձեռն նորա առաւել եւս ի նոյն յեղեղաւ տապալեցան». Դ. էջ 72. տես և ի Բարսղի վեցօրեայն, Բ. էջ 25. «խոստորնակ խորհրդովք յեղեղաւ տապալել կամին զբանս աստուածեղէն գրոց»:

## ԺԳ. ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Այս գրոց առաջին տպագրութեան 122 երեսը գրուած Կոթէշ բառն ըսկէշ ուղղեալ է յերկրորդ տպագրին, էջ 211. «Քանզի յայն կողմանէ առաւելապէս երեւէր Կոթէշ (կ՚ուղղուի ըսկէշ) գնդին, Սիւնի զօրուն, եւ այլ զօրաւոր արանց նշանք դրօշիցն». Ինծի կ՚երեւի թէ հոս խօսքը Կատչաց զօրաց վրայ է, անոր համար չեմ կարծեր որ արդարանայ ըսկէշ ուղղութիւնն: Տես եւ յէջ 369. «Զգունդն Կոթշոց որ զայն տեղօքն էին». եւ յէջ 391. «Զնշանս հզօրագոյն արանց, զոր յառաջագոյն տեղեաց

ակք՝, զարանց պարսկաց եւ զհասբաց եւ զգնդին Սիւնեաց»։— Ցէջ 575 կը կարդանք. «Եւ եկեալ քաջն ի գունդն Հայոց պատմեաց նոցա թէ Գունդ բազում է, բայց յոլովք ի նոսա անպիտանք են եւ Թերբթաթաղ Խշաքորեան». այս վերջին երկու բառերը, որ գրեալ են ի գրչագիրս Փարպեցւոյն Պատմութեան՝ Թերբթաթաղէ— շաքորեան կամ Թերբթաթաղ Խ—շաքորեան, ուղղեալ են յերկրորդ տպագրին Թերբթաթաղ Խշաքորեան ըստ իմ առաջարկութեանս։ Նոր Հայկազեանն կը գրէ. «Թեքրթաթաղ Խ—շաքորեան, կամ Թեքրթաթաղէ— շաքորեան. բառ անյայտ. գուցէ որպէս ի պրս. Թաքրնեան, որ է Սարդ. ծագեալ ի Թերթնեն, սարդխատայն, եւայլն». Ես առաջարկած էի ուղղել Թեքրթաթաղ Խշաքորեան, վասն զի Թերբթաթաղ կամ որ նոյն է անչուշտ՝ Թրբթաթաղ, կը գտնուի եւ ի Պատմութեան Սիւնեաց Ստեփաննոսի Օրբելեան, (տպ. Էմին, Մոսկուա, 1861) Գլ. կէ. էջ 322. «Ցորում եւ գրեալ էին զպատճառ աքսորման կաթողիկոսին ումպէտ՝ բանիւք բաղբաղեալ հայթայթանս փաստաբանութեանց իբր Թրբթաթաղ յաղթիւսաց». իսկ Խշաքորեան է յոգնակի Խշաքոր բառին, որ կը գտնուի եւ յայլ գիրս նախնեաց. Եան՝ Փարպեցւոյն սիրական յոգնականակերտ վերջաւորութիւնն է. տես ի Պատմութեանն Թղթեան, Մոգեան, Հացկափոկեան, Գործեան բառերը, եւ ի Թղթին առ Վահան Մամիկոնեան՝ Աքեղեան։

82. (1) Սկսեալ 7 երեսէն մինչեւ 14 երեսը խառնակ է կարգ բանից, ինչպէս նաեւ կ՚ակնարկուի ի ծանօթութեան, էջ 7. «Գ և Դ հատուածք անյարիրք լինուին ի կարգի, յորում կան պակաս կամ աւելի բանք, կամ տեղափոխելիք». նոյնպէս յայլում ծանօթութեան, էջ 14. «Եւ այս բան անյարիր կայ առաջնոյն»։ Ես առ այժմ այսչափ կրնամ ուղղել. յետ բանին, էջ 14, «քանզի են ոմանք ի Ցոյնս, այլ մանաւանդ առաւել յԱսորիս», դարձիր յէջ 7 և կցէ «բազումք սպրդեցին գալ յայսպիսի յայրատութիւնս . . . գիտնոցն բանք, և անմտացն շաղփաղփութիւնք». իսկ յետ բանին, էջ 8, «որպէս զի զհոգեւորացն զբարի վարսն լուեալ բազմութեան ժողովրդոցն, նմանօղք լինել ցան-

կատացին մարդիկ ճգնութեանց նոցա», անցիր յէջ 14 և կցէ «և քաջքն լսելով զայլոցն զգործսն . . . ի բարի նախանձն կրթեալք՝ ջանասցին լաւանալ»։

83. (2) «Զերկնաթռիչ ըմանողութեան յաւիտենից բարու-թեանցն ընտրեալ հետեւողք»․ էջ 15։ Թուի ուղղելի ըն-նողութեան, ինչպէս կ'ըսէ ի թղթին առ Վահան Մամիկոնեան, էջ 583․ «Որք ընդ նոյն շաւիղ առողջմտութեանն հետեւեալ վար-դապետեցին»։

84. (3) «Վախճանեցաւ յանկողնի իւրում խաղաղական հանդէսիւ»․ էջ 49։ Թուի ուղղելի հանդերձիւ, ինչպէս կ'ըսէ ուրիշ երկու տեղ․ «Վախճանեցաւ խաղաղական հանդերձ-ի գաւառին Բագրեւանդայ»․ էջ 103․ — «Վախճանի խաղա-ղական հանդերձանօք և ոչ սրով»․ անդ․ էջ 97։ Տես և ի գիրս Գիտոյից, Է․ ա․ էջ 482․ «Անչարչարելի և խաղաղական հանդերձանօք՝ իւրովք հարազատ ժառանգօքն ընկալեալ զզար-մանալի ծածկոյթ թաղմանն»։

85. (4) «Քանզի ոչ բոլորեցունց դիպի ժողովրդականութեան վիճոյն, այլ ըստ ժամանակի որպէս և բաշխէ վերին տեսչու-թիւնն»․ էջ 206։ Թուի ուղղելի ժողովրդականութեան վիճոյն, ինչպէս կ'ըսէ ուրիշ երկու տեղ․ «Ոչ . . շնորհիւր ի ժամուն վիճոյ ժողովրդականութեան . . քաջի զօրավարին Հայոց Վահանայ Մա-միկոնէի»․ էջ 412․ — «Մեռանել ի վերայ ուխտի սրբոյ, վի-ճակ է ժողովրդականութեան»․ էջ 461։

86. (5) «Զոր լուեալ արքային Յազկերտի ընտրողութեան լաւ արանց ի գնդէն Պարսից»․ էջ 214–215։ Ուղղելի ընտրողութեան։ Նոյնպէս և Փ․ Բիւզանդացւոյ Պատմութեան մէջ, Ե․ լէ․ էջ 239․ «Մակայն Թագաւորին Պարսից բազում տրտմու-թիւն լինէր յաղագս իւրոյ զօրացն ընտրողութիւն», կարդա ըն-տրողութիւն։

87. (6) «Լուեալ ի հարցանելոյ տուրքն, ճանապարհին ուշադրէին». էջ 225. ուղղելի լռեալ։ Նոյնպէս յէջ 339. «Ցապաղեալ կայէր, և լուեալ թագուցանէր զարժան պատիւ տալ նոցա». ուղղելի լռեալ։ Նոյնպէս և ի թղթին առ Վահան Մամիկոնեան, էջ 601. «Ցորժամ քարոզն լուեալ ազդակէ, և որ կամին առնել՝ ի կարգեալ տեղիսն մնասցէ». ուղղելի լռել։

88. (7) «Եւ ո՛չ ևս մի ըստ միոջէ հարկաւորեցիմք առնել և կամ թուել զանզգայութիւնդ ձեր». էջ 238 – 239։ Թուի ուղղելի ո՞չ, ինչպէս նմանօրինակ տեղեր կ'ըսեն ուրիշ նախնիք. «Եւ ո՞չ ևս մի ըստ միոջէ թուեցից». Պիտ. Ը. Ե. էջ 524. – «Եւ ո՞չ ևս մի ըստ միոջէ . . . թուել պիտի». Փիլ. Նախ. Բ. էջ 74. – «Եւ ո՞չ մի մի թուիցեմ». Եղշ. Բ. 29. – «Եւ ո՞չ մի մի թուիցեմ յանուանէ». Թ. Արծր. Գ. Ժ. էջ 202։

89. (8) «Ըստ որոյ արժանի պարապեալ պարահին դմա չարաչար հատուցմունք և մահք». էջ 240։ Ուղղելի պարապեալ պահին, ինչպէս կ'ըսէ ուրիշ տեղ. «Պարապեալ պահն մշտնջենաւոր և անանց գեհեններին». էջ 255։ Տես և յԵղիշէի Պատմութեանն, Ը. էջ 259. «Զէ լուեալ քո վասն հանդերձեալ դատաստանն Տեառն մերոյ և կամ վասն մերոյ հրաշակերտ շինուածոցն, որք մեզ կան պահին ի սկզբանէ պատրաստութիւնքն»։ Նոյնպէս ի Վկայաբանութիւնս Սրբոց, Հ. Ա. էջ 576. «իսկ ձեզ և աստուածոց ձերոց նիւթեալ պահէ հուրն յաւիտենական, որ պարապեալ պահէ սատանայի և զօրաց նորա». – «կաց և ճողոպրեաց ի տանջանաց որ կան և պահին քեզ». անդ. էջ 93. – «Հասին երանելի յուսոյն, որ կայ պահէ սիրողացն Աստուծոյ». Ցոհ. ԿԹ. էջ 183։ Իսկ պահեւ գրուած փոխանակ պահելոյ տես 11 երորդ ուղղութիւնը։

90. (9) «իբրև տեսանէին զՄամիկոնեանն Վահան այնպէս երեւելի յաճմունս բարւոյ համակեալ, նեղեալ խամ-

րեյին և ծնկեալք Թարշամեսին». էջ 353։ կարելի՞ է կարդալ նէրկնալ, այսինքն թօշնած, ցամքած, վատած. նէրկնել, խամրել, ծնկել, նուրշնել, նշանակութեամբ մերձաւոր բառեր են։ Գաղղիերէն լեզուի մէջ կ'ըսուի Devenir maigre de la prospérité d'autrui, այսինքն ուրիշի յաջողութիւնը տեսնելով նախանձէ նիհարնալ, հաշիլ մաշիլ։

91. (10) «Երթեալ բնակէր ի գիւղն Շաէպյ». էջ 460։ Ուղղելի բնակէր։ — Նոյնպէս ի Սեբէոսի Պատմութեանն, էջ 105. «Եւ բնակեալ ի վերայ գետեզերն՝ ապստամբս սփռեցաւ ընդ արեւմուտս». բնակեալ կը դրուի նաեւ Պ. Քերովբէ Պատկանեանի նոր տպագրութեան մէջ, երես 66։ կարդա բնակեալ։

92. (11) «Թէ այս երից բանից պատասխանի առնէ ինձ (Արեաց տէրն) որպէս ես կամիմ և ամենեքեան սոքա որ աստէն իսկ են, և չարէ զայս երիս խնդիրս տալ մեզ գրով և կնքով թագաւորին, զամենայն զոր ինչ ասէք՝ զպատեհն և զարժանն առնեմք». էջ 491։ Ուղղելի չարէ, ինչպէս կ'ըսէ յէջ 494. «Ապ » եթէ զայս երիս խնդիրս ոչ չարէ տալ մեզ»։

93. (12) «Քանզի ցանկան կռուելով սակաւուք ընդ բազումս, և մեծամեծ զայդպիսի պատասնի առնելով և աշխատ ունելով». էջ 506։ Ուղղելի ցանկ կան։ «Դուք էք որ ցանկ կայիք ընդ իս ի փորձութիւնս իմ». Ղուկ. իբ. 28։

94. (13) «Վասն որոյ բարձեալ էր յաշխարհէն Հայոց և կորուսեալ վաստակք և միտք, քաջութիւն, տոհմականութիւն, արդարութիւն, և ի մէջ անցեալ փերբեւերումն պէտքն այդր ամենայնի». էջ 512—513։ Թուի ընթեռնուն։

95. (14) «Հաւացեալ և. սերպուհն Վանանդացի Վրէն,

գործ երեւեցուցեալ քաղձանայր» . էջ 526 ։ Թուի ուղղելի գործ երեւելի ցուցեալ. տես գործ ցուցանել ուրիշ երկու տեղ. «Ի կըռուի վտառակ և գործ ցուցանելոյ դտեալ է» . էջ 531 . «Բայց կամէի այսպէս թէ սակաւ մի գործ ցուցանէի» . էջ 535 . իսկ երեւելի գործ տես յէջ 531 . «Աստացեն զմիոյ ուրուք ի դոցանէ չերեւելի գործ ինչ զոր Նոցա արարեալ է» ։

Տես ուրիշ ուղղութիւն մը էջ 32 . տես և 14 երորդ և 41 երորդ ուղղութիւնները ։

## ՆՈՐԻՆ ԹՈՒՂԹ ԱՌ ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

96. (1) «Այնուհետեւ ի շալակս իւրեանց առաւել քան ի տեղիդ փութային համբերել» . էջ 594 ։ Ուղղելի համբառնել ։

97. (2) «Արդ աղէ ասացեն, յաղագս ո՞յր շնորհեալ պարգեւէի վարդապետութեան բանս . – սաղին . ո՞չ ապաքէն վասն ունկնդրացն «խորժ» լսողաց և խնդրուածոյ» . էջ 601 ։ Ամբողջ պարբերութիւնը կարծեմ այսպէս ուղղելու է . «Յաղագս ո՞յր շնորհեալ պարգեւի վարդապետութեան բան սաղին . ո՞չ ապաքէն վասն ունկնդրացն ախորժալսողաց և խնդրուածոյ» ։ — և — կը շփոթին երբեմն ի ձեռագիրս . տես ի վեր անդր յէջ 72 Մ . Խորենացւոյ Պատմութեան «ընդ խոխոմաչէք» և Նեղս» հատուածը, որ պիտի ըլլայ «ընդ խոխոմս չէք և Նեղս» . տես և 78 երորդ ուղղութիւնը, յորում «յաղահող ցուցեալ դադարեցուցի» կը սրբագրուի «յաղահողացուցեալ դադարեցուցի» ։ Ախորժալսողաց կ'ըլնէ Ախորժալուր բառէն, զոր գործածած է Ղ . Փարպեցի իւր Պատմութեան մէջ, երես 289 . «Եւ ընկալեալ ի յախորժալուր ի տուչէն զգիւտ մաղթանօք խնդրոյն իւրոյ» ։ Այսպէս և Հեշտալուր բառէն ունիմք Հեշտալսողաց . «Ջան ունիմք աչաց գեղեցկատեսութեան, ականջաց հեշտալսողաց» . Լամբր . մեկն . Առակաց . – «Պայծառադունութիւնք և ականջաց հեշտալսողաց» . Յ . Երզնկացի, մեկն . տաժն խորանաց ։

98. (3) «Խայփայտէ ի կոր կործանեցան, և այնուհետև սկսան յղանալ զոխակալութիւնն և ծնանել զնախանձ». էջ 604։ Ուղղելի խանփայտէ։

## ԺԴ. ՍԵԲԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ Ի ՀԵՐԱԿԼՆ

99. (1) «Որք համարձակեալ պատերազմեցան իսկ, և այրեցին զպատուական տեղիս զայս. հաճեցաւ Աստուծոյ մարդասիրութիւնն զնոսա տարացուցանել ի քաղաքէն սրբոյ իւրմէ յԵրուսաղեմէ». էջ 133. տարացուցանել կը գրուի նոյնպէս Գ. Քերովբէ Պատկանեանի Նոր տպագրութեան մէջ, երես 84։ կարդա ատարացուցանել, այսինքն օտարացուցանել։

100. (2) «Մեք մարդիկ եմք տգէտ և տխմար, ոչ լեզու գիտեմք և ոչ դպրութիւն. բայց եթէ նախ ուսանիմք և ի վերայ հասանեմք. այլ զբարերար հրամանաւ բուժելով իշխէ». էջ 223. բուժելով կը գրուի նոյնպէս Գ. Քերովբէ Պատկանեանի Նոր տպագրութեանն մէջ, երես 142։ Ուղղելի բուժօղ կամ «բուժօղ»։ Տես Գր. Աստուածաբանի ի Մակաբայեցիս ճառին մէջ. «Ո՞վ դահիճք, ընդէ՞ր հեղգայք, հի՞մ յապաղէք, վասն է՞ր զքաղցր հրամանդ ողորմէք. ո՞ւր սուրքն, ո՞ւր տապակ»։ Տես և յԱղօթագիրս Սարկաւագ վարդապետի, Սոփերք Հայկականք, (Ս. Ղազար, 1854) ԺԷ. էջ 6. «Զաստուածային հրամանս քո . . . ողորմելով քամահէր»։

Տես ուրիշ ուղղութիւն մը էջ 10. տես և 44 երորդ և 91 երորդ ուղղութիւնքը։

## ԺԵ. ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ա. Գրոց է գլխուն մէջ, երես 54, կը կարդանք. «Եւ Սահակայ յղեալ առ Սմբատ, մի՛ կալ մնալ ի լերինն, այլ փու-

Թուի ելանել դառնալ անդրէն ի Հերեւն չէր անդր, զի ոչ ելանէ, ասէ, Երուանդ զօրու ի սահմանս Մարաց»։ Բոլորովին խանգարեալ է ընթերցուածն, զոր այսպէս կ'ուղղէ Հ. Սուքիաս Պարոնեան. «Ելանել դառնալ անդրէն ի Հեր եւ ի Զարաւանդ»։

101. (1) «Ոչ կարացէ խոտորել ի դաղձնիս զոգի սրբոյն, զզգեցեալն Հոգւոյն սրբոյ վերբեկութեամբ». Գ. բ. էջ 144։ Ուղղելի Հոգւոյն սրբոյ վերբեկութեամբ։ Տես Կիւրղի Ղուկասու Աւետարանին մեկնութեան մէջ. «կուսութեամբ յղութիւն կրել՝ Հոգւոյն սրբոյ վերբեկութեամբն». տես և Նանայ ասորւոյ Յովհաննու մեկնութեան մէջ. «Հոգւոյն վերբեկութեամբ»։ Վերբեկութիւն կը նշանակէ՝ ի վերայ կամ ի վերուստ եկաւորութիւն Հոգւոյն սրբոյ. իսկ Նոր Հայկազեան և Առձեռն բառգիրք Վերբեկութիւն կարդալով, անստոյգ բառ կը համարին, և կը մեկնեն երկբայանօք «զրահաւորութիւն, սպառազինութիւն, զրահ հագնիլը». կամ «զառիկութիւն, իբր օծումն զառիկաւ», կը յաւելու Նոր Հայկազեանն։

102. (2) «Որպէս ասէ Պօղոս առ Տիմոթէոս. Մի ամօթ համարիցիս զվկայութիւն Տեառն մերոյ. և Դաւիթ, խօսէի զվկայութիւնս քո առաջի թագաւորաց և ոչ ամաչէի. և Փրկիչն, Եթէ ոք ամօթ համարեսցի զբանս իմ, աստանօր չմնայեալ բանիւս։ Եւ մեք ի ճեպելն փութասցուք եայլն». Գ. է. էջ 186։ Ուղղելի է թէ կէտադրութիւնն և թէ ընթերցուածն չմնայեալ բառին. «Եւ Փրկիչն, Եթէ ոք ամօթ համարեսցի զբանս իմ։ Աստանօր չմնայ ասելով բանիւս, և մեք ի ճեպելն փութասցուք»։

Տես ուրիշ ուղղութիւնները էջ 5, 20։

## ԺԶ. ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

103. (1) «Իսկ սուրբն Ղիգինոս աղաչէր զնա (զանդա-

մալըյծն) և ասէր · Մի, տէր իմ, մի խօսիր զայդպիսի բանս · աղէ ասա ինձ, ո՞ տրտմեցոյց զքեզ, և ես խնդրեցից զվրէժ ։ Եւ ամենևին անդամալոյծն ոչ կամեցաւ և ասէ · Ոչ կամիմ ամենևին զքո զայդ ողոք բանսդ, տար ընկէ զիս ի վաճառափողոցին ուր գտերն զիս ։ իսկ Ղեոնդիոս ասէ · Աղօթեմ քո, ոչ ինչ մեղայ, տէր իմ» · Հ · Ա · էջ 225 ։ Կարելի է արդեօք կարդալ աղօթեմ քո ։ Աղօթեմ կը նշանակէ ըստ Նոր Հայկազեանին՝ ի պատիւ երեսաց քոց, ի սէր քո, ի շնորհս քո, զոր օրինակ · «Աղօթեմ ի սէր քո արարի զԹիտն · աղօթեմ չինեմ զԵրուսաղէմ և զՍամարիա» ։ Ինձի կը թուի թէ Հարանց վարուց օրինակին մէջ (համարելով թէ աղօթ եմ քո վրիպակ ընթերցուած ըլլայ) աղօթեմ քո աղաչողական նշանակութիւն մ'ունի, իբր գ. գ. de grâce, je vous en prie · և ասոր նման է Եփրեմայ Թագաւորութեանց մեկնութեան մէջ դրուած գեն քո մակբայն կամ ձայնարկութիւնն · «իսկ Աքաբ, վասն զի կարծեաց եթէ զայս ևեթ կալաւ յանձին (Միքիա) ասել հաւանութեամբ ներքինւոյն՝ որ չոգաւն զնմանէն, մատեաւ երդմնեցուցանել զնա բազում անգամ առ ի հաճել զմիտսն Յովսափատու · Գեն քո, ասէ, փարելի քո · մի զայլ ինչ ասեր, այլ զճշմարիտն՝ որ արդարն է» · էջ 445 ։ Տես և 45 երրորդ ուղղութիւնը ։

104· (2) «Դարձեալ մինչդեռ երթայաք մեք առ ոմն ծեր, մերձ էր արեւն ի հոշպել, և աղօթս արարեալ ծերոյն՝ ասաց · Աղաչեմ զքեզ, Տէր, կացցէ արեգակն ի տեղւոջն մինչեւ ժամանեցից առ ծառայն քո ։ Եւ եղեւ այնպէս» · Հ · Բ · էջ 381 ։ Թուի ուղղելի հոշել, ինչպէս կ'ըսուի ի պատմութեան Ասանեթայ երկու տեղ · «Եւ մնաց Ասանէթ միայն հանդերձ եօթն կուսանօքն, և ծանրանայր և լայր մինչեւ ի հոշել արեւուն . . . և դարձեալ անկաւ ի վերայ երեսաց իւրոց մինչեւ ցերեկոյն մերձ ի հոշել արեւուն» ։

Տես ուրիշ ուղղութիւնները յէջ 5, 19, 26 · տես և 76 երրորդ ուղղութիւնը ։

## ԺԷ. ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

105. (1) *«Բայց յորմէհետէ մուծին յեկեղեցիս մեր Սե+ա-րոյէ+ և Պիհռոնացիք, և արդարութեան օրէնքն յանիրաւութիւն դարձաւ, և յարգի եղեւ արծաթսիրութիւն քան զաստուածսիրութիւն, և մամոնայն քան զՔրիստոս». ԺԲ. էջ* 53։ *Ուղղելի է Սե+ոտոյէ+. այն է բանն Գրիգորի Աստուածաբանի ի ճառին որ ի սուրբ Աթանաս. «Իսկ պարզութիւն և ազգակցութիւն բանին՝ բարեպաշտութիւն թուէր. բայց յորմէհետէ Սե+ոտոյէ+ և Պիւռոնեանցիք և ընդդիմադիր լեզուն՝ իբրեւ հիւանդութիւն դժնդակ և չարաչար յեկեղեցիս մեր ի ներքս անկեալ ապականեցան, և շատախօսութիւն՝ ուսումն կարծեցաւ, և զոր ասեն յաղագս Աթենացւոց դիրք Գործոց Առաքելոց՝ Ցոչինչ այլ պարապէին բայց ասել և լսել նորագոյն»։ Եվարիստ Բրիւտոմ Հայագէտ Գաղղիացին, որ յամին* 1864 *գաղղիերէն թարգմանութիւն մը հրատարակած է ի Բարիզ Լաստիվերտցւոյ Պատմութեան, չի կրնար հասկնալ թէ ինչ անուն է Սե+ուրոյէ+։*

*Տես ուրիշ ուղղութիւն մը յէջ* 19։

## ԺԸ. ՄԽԻԹԱՐ ԳՈՇ

### ԱՌԱԿՔ

ՃԿԲ *առակն նման է ամենեւին Պոգգաչչիոյի Տամնօրէին* (Decamerone) Ա *օրուան* Ե *վիպին։ Լսենք նախ Մխիթար Գոշի առակը, յետոյ Պոգգաչչիոյի վէպը։*

*«Որդի թագաւորին Յունաց խնդրէր կին. եւ զոր հայր իւր կամէր, եւ այնմ ոչ հաւանէր առնուլ, թէ յամենայն թագաւորութեան խնդրեսցես՝ զի բնաւ չքնաղագեղ իցէ։ Եւ հօրն յայտնանէ նեղեալ, կոչէ զդասս իմաստասիրաց հաւանեցուցանել զպատանին. եւ նոքա բանիւք իմաստութեամբ ոչ կա-*

բայցին ։ Եւ հնարին ամենայն կերպիւ ըստ առաքինութեան պատրաստելոյ՝ ի զանազան արկանել անօթս ; ոսկեղէնս եւ արծաթեղէնս, փայտեղէնս եւ քարեղէնս, եւ յայլս այսպիսիս. եւ ի ժամ ճաշոյ մատուցանեն նմա, եւ յամենեցունց հարկեն առնուլ ճաշակ. եւ ի ճաշակելն ասաց. Մի է ամենեցուն համ, ընդէ՞ր ոչ զանազանս պատրաստեցէք կերակուրս ։ Ասեն իմաստունքն. Օրինակ այդ քեզ իցէ. մի է բնաւ յամենեսեան խորհուրդ ; նոյնպէս մի է բնաւ կազմած մարմնոյ կանանց, ճաշակ ախտայից ։ Եւ այսու հաւանի պատանին ։

»Զգաստասցէք դաստիարակս յանդիմանէ. զի ուշէառ կանանց ի զանազան կազմածս մի է ։ եւ վասն որդեծնութեան տուեալ է, եւ ոչ է անօթ ցանկութեան» ։

Ահաւասիկ Պոգգաչչիոյի վէպն.

«Մարգրիտն Մոնֆէրրադոյի, այր անուանի քաջ եւ Եկեղեցւոյ վառանկիր *; անցեր էր յանկարծ ծովն՝ զինուորեալ քրիստոնէից յոլովաձեռն բանակաւ ։ Անգամ մը խօսք բացուելով իր քաջութեան վրայ յարքունիս Ֆարանսա Փիլիպպոսի՝ Գաղղիոյ թագաւորին՝ որ եւ ինքն նոյն ուղեւորութեան կը պատրաստուէր, ձիաւորին ** մէկն ըսաւ թէ աշխարհիս ներքեւ մարգրիտին եւ մարգրիտուհւոյն նման լծակիցք չէին գտնուեր, վասն զի որչափ որ մարգրիտն անուանի էր ի ձիաւորս՝ իւր մեծամեծ ձիրքերով, նոյնչափ ալ մարգրիտուհին գեղեցիկ եւ ընտիր էր քան զամենայն կանայս աշխարհի ։ Այս խօսքերս այնպիսի տպաւորութիւն ըրին Գաղղիոյ Թագաւորին մտաց վրայ, որ առանց երբեք մարգրիտուհին տեսած ըլլալու, իսկոյն յափշտակուեցաւ անոր սիրովն, եւ որոշեց որ նաւ մտնելու համար Ճենովա ուղեւորի, որպէս զի Մոնֆէրրադոյէն անցնիլը յարմար առիթ մ'ըլլայ մարգրիտուհին երթալ տեսնելու. այնպէս կը կարծէր թէ մարգրիտին տուար երկիր գտնուելուն պատ-

* Եկեղեցւոյ վառակիր, իտ. Gonfaloniere della Chiesa, կ'ըսուէին Հռովմայ պապերուն և Գերմանիոյ կայսերաց կուսակալուն ժամանակ՝ իտալիոյ քաղաքներուն մէջ պապին կողմանէ կարգեալ պաշտօնեայքն կամ քաղաքապետք իշխանքն ։

** Ձիաւոր հոս հասարակ հեծեալ չէ նշանակեր, այլ միջին դասու ազնուական, իտ. Cavaliere և գղ. Chevalier բառովը ։

ճաշաւ, կրնար իւր ցանկութիւնը յագեցնել. ինչպէս մտածեց, նոյնպէս ալ ի գործ դրաւ: Իրմէ առաջ յուղարկեց իւր մարդիկը, եւ միայն քանի մը ազնուական հետն առնելով վերջապէս ինքն ալ ճամբայ ինկաւ. երբ օրուան մը միջոց մնաց մարգիզին տունը հասնելու, մարդ յղեց տիկնոջը ըսելու որ երկրորդ օրը ճաշի իրեն սպասէ: Հանճարեղ եւ խոհեմ կինը պատասխանեց ուրախութեամբ որ իրեն համար մեծ շնորհ կը համարէր Թագաւորին այցելութիւնը եւ թէ հազար բարի էր իւր գալուստը: Յետոյ սկսաւ մտածել թէ ինչ պիտի նշանակէր որ այնպիսի մեծ Թագաւոր մը ուզենայ գալ զինքը տեսնել իւր ամուսնոյն բացակայութեանը ժամանակ, եւ գտաւ որ անշուշտ իւր գեղեցկութեանն համբաւէն գրգեալ էր: Սակայն ինչպէս որ կը վայելէ ազնուական կնոջ մը, ամենայն պատրաստութիւն տեսաւ Թագաւորը արժանապէս ընդունելու. կանչեց իւր մարդիկը, եւ անոնց խորհրդով ամէն պէտք եղածը պատուիրեց. միայն հացկերութիւն եւ կերակրոց հանդերձանքը ուզեց որ ինքն անձամբ կարգադրէ: Անմիջապէս ժողվել տըւաւ որչափ հաւ որ կը գտնուէր այն տեղը, եւ յանձնեց իւր խոհարարաց որ միայն հաւերէն կերակուրներ պատրաստեն Թագաւորին: Երկրորդ օրը եկաւ Թագաւորը, եւ մեծ հանդիսով եւ փառաւորութեամբ ընդունուեցաւ տիկինէն: Թագաւորը շատ աւելի գեղեցիկ, ազնուաբարոյ եւ բարեկիրթ գտաւ զմարգիզուհին քան ինչ որ երեւակայեր էր ձիաւորին խօսքերէն. սքանչացաւ սխրացաւ, եւ մեծապէս գովեց զինքը. իսկ իւր ցանկութիւնն հետզհետէ կը բորբոքէր, քանի որ կը տեսնէր թէ մարգիզուհին իւր կարծածէն գերազանց էր: Յետ քիչ մը հանդիստ առնելու սենեակներուն մէջ, որ այնպիսի Թագաւոր մը հիւրընկալելու համար ամենայն շքեղութեամբ զարդարեալ էին, երբ որ ճաշելու ժամն եկաւ՝ Թագաւորն եւ մարգիզուհին նստան ի մի սեղան, իսկ այլք յայլ եւ այլ սեղանս՝ իւրաքանչիւր ըստ իւրում աստիճանի: Կերակրոց ազնըւութիւնն, գինիներու պատուականութիւնն, եւ ասոնցմէ զատ՝ չքնաղ մարգիզուհւոյն տեսութիւնն, Թագաւորին մեծ հաճոյք կը պատճառէին: Բայց քանի մը խորտիկ ետեւէ ետեւ բերուելէն վերջը, Թագաւորը սկսաւ զարմանքով դիտել որ այլ եւ այլ կերպերով եփուած ամէն կերակուրներն ալ հաւե-

ղէն էին։ Գիտէր որ տեսակ տեսակ որսեր կը գտնուէին այն երկրին մէջ, եւ ինքն ալ իւր գալուստը առաջուց իմացուցած ըլլալով, մարգիզուհին կրնար ուրիշ որսի կերակուրներ պատրաստել. Թէպէտ եւ շատ զարմացաւ այս նորօրինակ ընդունելութեան վրայ, բայց ուզեց որ միայն հաւերուն վրայ խօսք բանայ մարգիզուհւոյն հետ, եւ ժպտուն երեսով մը դառնալով դէպ իրեն, «Տիկին, ըսաւ, այս երկրիս մէջ միայն հաւ կը ծնանի եւ աքաղաղ ամենեւին չի՞ ծնանիր»։ Մարգիզուհին հասկնալով Թագաւորին միտքը եւ տեսնելով որ յարմար առիթ էր իւր դիտաւորութիւնն ալ Թագաւորին հասկցնելու, մէկէն ի մէկ համարձակութեամբ պատասխան տուաւ իրեն. «Ոչ, տէր արքայ. բայց տեղւոյս կիները, թէպէտ եւ հագուստով կամ աստիճանաւ կրնան քիչ մը տարբերիլ ուրիշ երկիրներու կիներէն, սակայն իրենց շէնքն մի եւ նոյն է»։ Աս որ լսեց Թագաւորը իմացաւ հաւերէն խորտիկներուն պատճառը եւ այս խօսքերուս ծածուկ զօրութիւնը. տեսաւ որ անօտի էր այսպիսի կնոջ մը հետ խօսքը երկնցնելը, եւ թէ բռնութեամբ վարուիլը բոլորովին անտեղի բան էր. իւր պատուոյն արատ չբերելու համար ուրիշ բան չէր մնար իրեն բայց եթէ իմաստութեամբ մարել այն կրակը որ անզգուշաբար վառուած էր իւր սրտին մէջ։ Առանց այլ եւս կատակաբանել ուզելու եւ վախնալով մարգիզուհւոյն տալիք պատասխաններէն, յուսահատութեամբ ճաշեց, եւ ճաշը աւարտելուն պէս՝ որպէս զի իւր անպատեհ այցելութիւնը պարտըկէ առանց յապաղմանց ճամբայ իյնալով շնորհակալ եղաւ մարգիզուհւոյն հիւրամեծարութեանը, վերջին բարեւները տուաւ իրեն եւ մեկնեցաւ ի Ճենովա»։

Անշուշտ Մխիթար Գօշի առակն եւ Պոգգաչչիոյի վէպն նոյն աղբիւրէն կը բղխին. այս աղբիւրս հետաքննելի է։

106. (1) «Ժողովեալ երբեմն աստեղաց՝ ասեն ի նոցանէ ծերագոյնքն. Մեք բազումք եմք, զիա՞րդ զտիւ և զգիշեր ոչ լուսաւորեմք նման արեգական և լուսնի։ Ասէ ոմն. Զի ոչ միաբանութեամբ վարիմք։ Եւ խոնարհեալ միաբանութեամբ նախ հերքել զարեգակն, և ի ծագել լուսնի պար-

երկաթագործին կը նախանձին հիւսն և հողագործ. եթէ երկաթագործ ըլլար, հողագործն ինչու պիտի նախանձէր. աւել֊լի յայտնի է քիչ մը վարը բառերէն. «բայց դարբնութիւն կանխաւ ցուցաւ . . . և զի զիւր առնէ զգործի (երկա֊թագործն)՝ և նովաւ զհիւսան և զմշակի»։

Տես ուրիշ ուղղութիւն մը էջ 15։

## ԺԲ. ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ

### ՋԵՐՄԱՆՑ ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ

(Միջին հայերէն)

Ը գլխուն մէջ կը կարդանք, էջ 15. «Եւ իւր նշանն այս է որ մարդն ինքն ընդ ինքն զրուցէ, ցնորի եւ ռետորէ». Նոյն֊պէս Ժ գլխուն մէջ, էջ 20. «Այս այն ջերմն որ ի ցնորու֊թենէ եւ ի ռետորաբանից եւ ի բազում հոգոյ ընծայլի»։ Երկու անգամ ալ տպագիրն կ'ուղղէ ռետորէ եւ ռետորաբանից, չեմ գիտեր ինչ պատճառաւ. Աստուածաշունչն Երզնկացւոյ Տաղերուն մէջ եւս երկու կը գրուի ռետոր.

«Է՛ գերի սիրտ լի արեամբ, քանի կենաս հըրովն ի վառ,
Կամ վանց այս սուտ կենցաղոյս քանի կենաս դուն ռետոր».
«Դու էր կաս յանգիրչայ խիստ ռետոր ողորմելի,
Կամ ի ծովուս միջին դու նաւ ուղեւ անշարժելի»։ —

«Զի սոց են եւ ի մօտ այդ ջերմերդ՝ որ ի գեկն փոխին, որ է հալեւմաշ». Ժ. էջ 19. կ'ուղղուի յոց. ինձի կը թուի թէ պահելի է ձեռագրին սոց ընթերցուածն, որ կը նշանակէ պատ֊րաստ, կամ գղ. disposé. Հերացին ըսել կ'ուզէ թէ «այդ ջեր֊մերդ պատրաստականութիւն կամ տրամադրութիւն (disposi-tion) ունին հալեւմաշի փոխուելու»։ Տես նաեւ ի գլ. ԻԱ. էջ 40. «Եւ այլ գիտացիր որ այս ցեղ հալեւմաշ ջերմանս պատճառն այնոր հանդիպի որ մարմինն սոց լինի եւ պատճառա֊յոյդ». Նոյնպէս ի գլուխ ԻԲ. էջ 43. «Մարմինն չէ սուրբ, եւ լինի յինքն նիւթեր սոց որ այլ ջերմն կարէ ընծայել»։ Ա՛յլ է

յոյք որ ի գլուխ ԻԸ. էջ 79. «Եւ իւր սատածումն յոյք եւ ի մօտ է ի ծաղկին սատածումն ամենայն դիմօք». հոս յոյք նոյն նշանակութիւնն ունի ինչ որ յոյք Նման բառին մէջ: — «Տաքութիւնն միացեալ եւ յերաշ լինի ի մարմինն». ԻԱ. էջ 38. այսինքն միօրինակ, չարունակ. տպագիրն ի զուր կ'ուղղէ յերաշ. տես եւ յէջ 36. «Եւ եթէ այրեցող ջերմ ունի եւ ի յերաշ (տըպածն՝ յերաշն) տաքութիւն». նոյնպէս եւ ի գլուխ ԻԶ. էջ 70. «Իւր նշանն այն է, որ իւր ջերմն համապազ եւ յերաշ (տպածն՝ յերաշն) լինի»: — «Զի երակաց մարմինն պինտ լինի. ֆաւէլ հետ օրաց որ եփէ բնութիւնն եւ արձակէ». ԻԳ. էջ 59. կ'ուղղուի ֆոչէլ ոչ ի դէպ. ֆաւէլ Սասրին հայերէնի մէջ ատէպ գործածուած բառ մ'է, որ մերթ կը նշանակէ ընէլ—, մերթ միայն ըլէ: Այս ֆաւէլ բառն է որ սխալմամբ ֆոյլէլ գրուած է ի գլուխն Զ. էջ 10. «Ապա սա չէ պարտ չտապել, եւ ձիթերոյն զնորա գլուխն եւ զմարմինն օծանել. ֆոյլէլ (կարդա՝ ֆաւէլ) յետ այն որ խաղաղել լինի ջերմն»: — «Ի հիւանդին ֆաֆըն չերեւնայ նիհարութիւն եւ ոչ բարակութիւն». ԼԳ. էջ 94. կ'ուղղուի ֆոչէն, բայց չյարմարիր. քննելի է նշանակութիւն ֆաֆը բառին: — «Այլ պատեհ է որ ի ֆամէ եւ յանգաւ բժշկեն զ[illegible] ջերմն». ԼԴ. էջ 95. ուղղեալ է ի ֆամէ. բայց այս բառս ուրիշ ամէն տեղ ֆէով կը գրուի. ի ֆամէ, որ եւ ի ֆամ, Սասրին հայերէնի մէջ կը նշանակէ մեղմով, համդարտ համդարտ, կամաց կամաց. տես յաւաջիկայդ եւ ի սկիզբն քննութեան Վաստակոց գրոց, էջ 96: Հ. Արսէն Այտընեան իւր Արդի հայերէն լեզուի քերականութեան 126 երեսին մէջ կը գրէ. «ի ֆամ. անշուշտ նաեւ՝ ի ֆամոյ, ի ֆամոց. ուստի հիմնականը՝ կամաց». չեմ գիտեր թէ բազմահմուտն Այտընեան ուր գտած է այդ ի ֆամէ ուղղագրութիւնը. ես միշտ ֆէով տեսած եմ ի ձեռագիրս ի ֆամէ կամ ի ֆամ: — «Ա՛ռ .. չոր թուզ, եւ ճակընդղի ջուր, եւ հոյն ֆօրաշ, եւ շաքար, եւ շիրիկ ձէթ. զայս զամէնս եփէ, եւ հուկնայ դիր զերդ իւր սասմն է». Խ. էջ 117. կ'ուղղուի հոյն ֆոչաշ, իբրեւ հացի փոր, հացի միջուկ. բայց անյարմար է. հոյն ֆօրաշ կը յիշուի հին արուեստաբանութեան մը մէջ. «Յաղագս բորակի: Բորակն ազգեր են եւ գուներ. ֆօրաշն հոյն. սպիտակ հաց երէ եւ սուրնի պինդ.

եւ այլ ազգ մի այլ կայ որ է կարմիր, եւ լինի ի հողն Խօրասանէն. եւ այլ ազգ մի այլ՝ որ է սպիտակ բորակ ոսկերչի, եւ գտանուս զինքն ի քարաչէն պատերն, եւ է գոհարճըլէն» ։

109. (1) «Եւ երբ զձեռդ ի վերայ մարմնոյն դնես, մինչեւ ըսընայ, ապա յարձակի և բացուի գաղտ շնչահանքն, և ելանէ խուլմէն մասն ինչ շոգի» . Է. էջ 12 ։ Ուղղելի ըսը-նայ, այսինքն՝ տաքնայ ։ Տես և ի գլուխն ԽԵ. էջ 133 . «Զհի-ւանդն ծածկէ և զջուրն, որ ի ջրին շոգւոյն և ի տաքու-թենէն մարմինն ըսընայ չոյտ և քրտնի» ։

110. (2) «Մեծ իմաստասէրն Բազարատ ասէ, թէ սօտա-վօրտին հոգւոյն ահով է» . Ժ. էջ 18 . «Եւս առաւել պատ-ճառ այս լինի՝ որպէս սուգն և հոգսն և սօտավօրտութեանն, ահն և երկիւղն, ցանկութիւնն և ղիպն» . ԻԱ. էջ 35 ։ Ուղ-ղելի սօտավօրտին կամ սօտավտին, սօտավօրտութեան կամ սօտավտութեան . ուրիշ տեղ կը գրուի Սօտավտային, Սօտավտութեան, Սօտավտին ։ ԺԳ դարու մէջ գրուած բժշկարան մը կ՚ըսէ .«Եփ վախէ մարդ՝ երակն փոխի և սրանայ, և եփ սօտավտի՝ երակն թան-ձրնայ և յիրար գայ» ։ Գալով նշանակութեանը, թուի թէ Սօտավտին է հոգ ընել, տրտմիլ, և Սօտավտութեան՝ հոգ, անձ-կութիւն, մտմտուք ։

111. (3) «Ա՛ռ յունապ քսան հատ, և ողօրան յիսուն հատ . . . ա՛ռ չոր մանուշակ և ողօրան» . ԻԳ. էջ 52 . — «Ա՛ռ . . . չամիչ ի հատճէն հանած, և ողօրան» . էջ 54 . — «Ա՛ռ . . . սալորի չիր քսան հատ, ողօրան երեսուն հատ» . էջ 146 ։ Ուղղելի է ողօրան, այն է պարսկերէնն օֆֆիօրան, զոր այսպէս կը ստուգաբանէ և կը մեկնէ Տիրացու Գէորգ Գալատացի իւր Պարսկերէն-Հայերէն բառարանին մէջ (Կոստանդնուպոլիս, 1826) . «Մէֆֆիօրան . ստուգաբանի օէկ-ֆիօրան, այսինքն չան տոտն . է դեղ իմն անուշահոտ, գոլով սորա միրգ ինչ որ լինի ի չափ չորոյ, և ունի ի միջի իւրում նիւթ ինչ ան-

ցաք ճշմարտել ի Թարգմանչէն. եւ որք ճշմարտեն՝ Թող գրեսն». ՄԿԴ. էջ 169։ Գրքին վերջը գրուած բառարանին մէջ կ'ըսուի. «Պուտըռուճ. զորոյ զինչն եւ զհայ անունն ոչ կարացաք, ասէ, ստուգել, Թարգմանիչ մեր. այլ զի ընդ անանխոյ յիշէ, որպէս եւ բնագիրն միայն զանանուխ յիշէ, Mentha, եւ ըստ մերումս՝ անօգուտ ասէ զայն, յայտ է յազգէ անանխոյ լինել»։ Իսկ իմ ճշմարտածս այս է, զոր եւ կը գրեմ անհաւասալիկ։ Պուտըռուճ, կամ հայերէն տառադարձութեամբ Բատրուճ, է արաբական* անուն գաղղիերէն Pouliot կոչուած տնկոյն, որու համար կ'ըսէ Լիթրէ իւր ընդարձակ բառարանին մէջ. «plante aromatique, du genre des menthes, *mentha pulegium*, *L*», այսինքն՝ հոտաւէտ տունկ յազգէ անանխոյ։ Ի հաստատութիւն այս իմ կարծեացս յիշեմ հետեւեալ վկայութիւնները. ա. Ի բառս Գաղիանոսի, (որոց վրայ խօսեցայ Բառաքննութեանս ծկիզբը, Գլ. Ա. յօդ. բ. էջ 25) կը գըրուի. «Բատրուճ. դաղձն կամ անանուխ»։ Բ. Ամիրտովլաթ Ամասիացի բժիշկն իւր Անգիտաց անպէտ** մակագրեալ ամենապիտանի գրոց մէջ կ'ըսէ երեք տեղ. «Ավլիմին Հելենացոց բառովն պատրուճն է». — «Ջում, որ է հաւաքն. ինքն պատրուճն է». — «Պատրուճ, որ հաւաք ասեն. ինքն ըռահան մն է, որ տերեւն լայն է, եւ լաւն այն է որ տերեւն կապուտ լինի . . . Իպն Պայտարն ասէ Թէ այսոր Թուրքերէն Թարայի խորասանի կու ասէ»։ Գ. Հին ձեռագրի մը մէջ, յորում հաւաքեալ են անուանք զանազան տնկոց, գտած եմ. «Հարակ. դաղձն»։ Այս հաքոչ, կամ ինչպէս Ամիրտովլաթ Ամասիացի կը գրէ՝ հաւաք, արաբերէն հալաք բառն ըլլալով, որ է պարսկերէն փութէնճ կամ ֆուտընէնճ, տաճկերէն ֆիլիֆօյէան. եւ դաղ-

* Ֆր. Ճօնսըն իւր Պարսկերէն — Արաբերէն — Անգղիերէն ընդարձակ բառարանոց մէջ, [Francis Johnson, A Dictionary persian, arabic, and english. London, 1852,] կը յիշէ զՊատրուճ [Badruj] իբրեւ պարսիկ բառ, և կը մեկնէ. «a fragrant kind of herb», այսինքն՝ տեսակ մը անուշահոտ խոտ։

** Շնորհակալութեամբ կը ծանուցանեմ որ Բառաքննութեանս մէջ Ամիրտովլաթի Անգիտաց անպէտէն բերած վկայութիւններս քաղեցի այն ձեռագրէն զոր ինձի փոխ տուաւ Մեծ. Սերովբէ Էֆէնտի Ալիշան, Հայ Հառաջադիմութեան քաջածանօթ և նշանաւոր գրամոլներէն։

ղիերէն Pouliot տնկոյն անունն․ Ինքնին կը հետեւի որ պօտ-րօծ եւ Pouliot նոյնանշան բառեր են․ եւ եթէ Աւգերեան եւ Էմինեան Գաղ․ — Հայ․ — Տաճկ․ բառարանաց մէջ փնտռենք Pouliot բառը, կը տեսնենք որ իրօք տաճկերէն ֆօտփէնճ եւ ֆէլէնգօչէ-ն նշանակուած են։ Գալով պօտրօծի, կամ որ նոյն է՝ Pouliot ի հայ անուանն, տեսանք ի վեր անդր որ Բօզրօծ եւ Հաբուկ հայերէն Դաղձն կը մեկնուին․ բայց ես կարծեմ թէ ի հայումս Դաղձն կը նշանակէ յաւէտ գք․ Calament ըսուած անուշահոտ տունկը, որ է նոյնպէս յազգէ անանխոյ. «Կաղամինթինէ․ Դաղձն», գրուած է ի բառս Նորին Գաղիանոսի։ Իսկ Pouliot թուի թէ հայերէն կը կոչուի Խոռ, կամ Դաղձն վայրի․ ԺԳ դարու բժշկարան մը կը դրէ․ «Փօտինէճ (պրս․ ֆօտփէնճ), որ է խոռն, եւ ինքն վայրի դաղձն է»․ — «Խոռն․ վայրի դաղձն»․ անդ․ — «Խուռ եւ փողնջ (պրս․ ֆօտփէնճ)․ վայրի դաղձն»․ Հաւաքումն անուանց տնկոց։ Զայս ամենայն կը յանձնեմ ի քննութիւն արեւելագիտաց եւ տնկագիտաց։

112․ (1) «Եւ ապա զտախտակաց միջոցն աղէկ գա՛լ-աֆաթէ կտաւով կամ բրդով, և ապա առ սեւ ձիւթ և կվենւոյ փայտի կամ մարխի աղոցուքով, եռացո զձիւթն և զայն աղոցուքն ի ներքս խառնէ, և զնստուկն աղէկ ծեփեա ի ներսէ»․ ԾԲ․ էջ 41։ Գրքին վերջը դրուած բառարանին մէջ Աֆաթէ կը մեկնուի «խնուլ, գոցել զծակտիս»։ Կարելի՞ է արդեօք կարդալ մէկ բառ գալաֆաթել, հրամայական գալաֆաթէ՛, և ստուգաբանել արաբացի գալաֆա կամ գալաֆաթ բառէն, ուսկից կը ծագին գք․ Calfater և Calfeutrer բայերն․ արաբերէն գալաֆա բառին բուն նշանակութիւնն է ըստ Լիտրէի «introduire de l'étoupe dans les fentes d'un navire», այսինքն՝ նաւուն ծերպերուն մէջ խծուծ մտցընել կամ դնել, որու նման է Վաստակոց գրոց ըսածն ալ․ «Եւ ապա զտախտակաց միջոցն աղէկ գալաֆաթէ՛ կտաւով կամ բրդով»։ Նոյն գրոց մէջ կ'ըսուի ուրիշ տեղ․ «Դու քաղեա և դիր ի ճառայ, և զբերանքն գալը»․ ԽԲ․ էջ 37․ — «Լից ի փարչ մի և ջուր ի վերայ, և գալ պինդ զբերանն»․ ՃԹ․ էջ 77․ — «Գալ

ծեփով զբերանն և պահեա». Մէ. էջ 128. — «Եւ պըսմով (կամ պլամով) կամ այլազգ չոր փչով զբերանն կուլ». Մի. էջ 136. այս. ամէն վկայութեանց մէջ կուլ կը նշանակէ «(ամանին բերանը) ծածկէ». մինչդեռ կուլափել (եթէ ուղիղ է այսպէս կարդալ) կը նշանակէ՝ տախտակներու միջոցները կամ ծերպերը կտաւով կամ բրդով գոցել։

113. (2) «Նոյնպէս և քուլ ու նօսր և աւազոտ գետինն. չէ պարտ տնկել այլն». Մէ. էջ 46։ Ուղղելի է թէ քուլ ու ընթերցուածն և թէ կիտադրութիւնն. «Նոյնպէս և ք չր, նօսր և աւազոտ գետինն չէ պարտ տնկել»։ Տես և յաջորդ էջը, ուր կ'ըսէ. «Եւ այն այգին որ ք չր և ի նօսր գետին լինի դրած»։

114. (3) «Թեթեւ ծածկեա (զտունկն), որ արեգական ջերմութիւնն իջանէ ի տակն և քոնեցընէ զինքն». Կբ. էջ 54։ Թուի քոնեցընէ, ինչպէս կ'ըսէ ի դուռն ՄՀԸ, էջ 178. «Առնուն զուռն ի տակուցն հանդերձ հեննայովն, և տանին ի մաշարայ մի, կուռ հետ իրերաց տնկեն, և անդ քոնեցընեն և տակուեցնեն»։

115. (4) «Բայց եթէ ի ցրտայլին տեղեան եւս թեթեւացուցանէ ոչ զտունկն ի քաղմաքուր որթոյն՝ լաւ է». Հէ. էջ 63։ Թուի քաղմաքուղի, ինչպէս կ'ըսէ ի դուռն ՄԻԸ, էջ 142. «Գեղեցկատեսիլ և քաղմաքուղի տայ զպտուղն»։ Տես և ի դուռն ԾԺԲ, էջ 83, քինեքուղի, և ի դուռն ՄՀԳ, էջ 175, «բարեքուղի պտուղ»։

116. (5) «Ա՛ռ անուշ գինի եօթանասուն մասն, և յիստակ մեղր հարիւր մասն, և մուրփալաղէն քսան և հինգ մասն, յերկար խառնեա և եփ ... ... ..., և առկաւ մի աւուրէն հինաք ած յամէն ամանն տակաւ մի, և ձիւթեա զբերանն». ԾՂ. էջ 121. «Եւ ապա ի նոր ձիւթած ... ...,

է կանէր լից և զբերանն ձիւթեա աղէկ և կալ»․ ՄԴ․ էջ 126։ Կոն, կանէր կը մեկնուի գրքին վերջը դրուած փոքրիկ բառարանին մէջ «աման աղի և այլ նոյնպիսի իրաց»։ Կարելի՞ է արդեօք ձանր աղէ կանէր և ձաղ ան է կանէր դրուածն կարդալ մէկ բառ ձաղարէկներ, ձաղանէկներ․ այս ընթերցուածով կը ծնանի նոր բառ մը ձաղարէկան, տեսակ մը աման, որոյ ծագումն ինծի անծանօթ է։

117․ (6) «Բայց երբ հոտես զծառսն՝ աթէշկէշ կալ կամ խարիչ, և զաւելի ակներն և զհոտած տեղիսն խարեա, որ այլ ակն չհանէ, և զամէն ուժն ի պատրոյսն տայ»․ ՄԻԵ․ էջ 139։ Գրքին վերջը աթէշկէշ կը մեկնուի․ «երկաթեղէն հրացեալ կամ ցոլացուցիչ ջերմութեան գործի (իբրեւ կիզիչ ապակի), որով խարեն զաւելի ակներն և զհոտեալ տեղիս ունկոց․ կոչի և խարիչ»։ Ուղղելի է աթէշ կէշ, այսինքն տաք ակիչ։ Տես և ի դուռն ԹԺԵ, էջ 213․ «Աթէշ մի տաքացո և պախրէի ճրագու կաթեցո ի վերայ»։

118․ (7) «Ի միջոցս ծառոցն երակ երակ անուշահոտ ծաղկունս սերմանել, վարդենի, մանուշակ, զաֆրան, ձֆուր, ապուզան»․ ՄԻԸ․ էջ 142։ Ի ծանօթութեան կ'ըսուի․ «միւս օրինակք սնբուր, անծանօթ ի մէնջ»։ Հարազատ ընթերցուածն է սնբուր, այսինքն պարսկերէն սնբուր, որու համար կ'ըսէ Տիրացու Գէորգ իւր Պարսկերէն-Հայերէն բառարանին մէջ․ «Մէնբուր․ է տեսակ իմն ծաղկան․ արբ․ սնպուր»․ իսկ արաբերէն սնպուր մանուշակ կամ շահոքրամ կը մեկնուի Հ․ Յակոբոս Պօղաճեանի Տաճկերէն-Հայերէն բառարանին մէջ, (Վիեննա, երկրորդ տպ․ 1858)։

119․ (8) «Եւ բազում անգամ լից զփոսերդ խոտմշով, և բուրնցո, որ աղէկ այրի»․ ՄՀԷ․ էջ 178։ Գրքին վերջը դրուած փոքրիկ բառարանին մէջ ուղղական կը դրուի խոտմոշ, բայց կ'երեւի թէ է խոտմոշն․ տես ի դուռն ՃԳ,

*էջ* 78. *«Տես թէ ի սահմանս անդեացն չոր խոտմուշէ (տալ. խոտ մուշէ) կենայ, կամ շամբ, կամ խարձ, յայն պահն վառեա կրակ»։ Խոտմուշէ կը նշանակէ խուիւ. տճ. չալը չըրփը։*

120. (9) *«Իւ սմբակն լայն քան զաուաջինան և դրուցահայեաց, որ երբ քայլէ՝ ի դուրս ոլորի անդամն և ոչ ի ներքս, որ գիրեար ծեծէ կոճքն». ՄՂԴ. էջ* 199. *ի ծանօթութեան կ'ըսուի թէ ուրիշ օրինակք ունին ծեծէ։ Ըստ իս ծեծէ է ուղիղ ընթերցուածն, ինչպէս կը դրուի նաեւ ի Գրաստու բժշկարանին հրատարակելոյ ի Բողճալըղը* 1867 *տարւոյն, էջ* 357. *«Իւ ոտն (ձիոյն) հեռու ի ձվոցն և արձակ, որ կոճքն զիրար չծեծէ»։*

---

# ՄԱՍՆ Բ

## ՈՒՂՂՈՒԹԻՒՆՔ ՆՇԱՆԱԿՈՒԹԵԱՆ

## ՔԱՆԻ ՄԻ ՀԱՅԵՐԷՆ ԲԱՌԵՐՈՒ

*Բառաքննութեանս երկրորդ մասին մէջ կ'ուզեմ փոքր ճաշակ մը տալ իմ Հայերէն լեզուի ընդարձակ բառարանիս, որոյ հիմունքը ձգած եմ տասն տարիէ ի վեր, բայց թէ առաստաղը երբ պիտի դնեմ՝ Աստուծոյ միայն է գիտելի։ Հաւաքել ամենայն հայ բառ, ոճ և դարձուած, և արձանագրել ըստ դարս դարս, սկսեալ ի Ե դարէն մինչեւ ԺԷ ին վերջը, — խուզարկել իւրաքանչիւր բառի ծագումը և ստուգաբանութիւնը, — որոշ որոշ սահմաններով ճշդել նշանակութիւնները և պէս պէս առմունքները, — ահաւասիկ երկու խօսքով իմ աշխատութեանս նկարագիրը։ Ցիրաւի այսպիսի գործ մը առաւել պատկանաւոր և անկ էր Հայկական կաճառի. բայց ո՞ւր է այդ կաճառն. ո՞ւր են այն գրագիտաց կամ ուսումնականաց ժողովներն, յորս զանազան կարծեաց կամ զանազան սկզբանց տէր անձինք գումարեալք յանուն հայութեան, յանուն դպրութեանց և ուսմանց, ձեռն ի ձեռն խառնեն, իրարու օգնեն և իրարմէ լուսաւորին։*

*Ներուի ինձ քանի բառից նշանակութիւնք հետազօտել հինգ Հայերէն բառարաններու մէջ և քանիին համար ալ ներկայացնել իմ դիտողութիւնքս։ Բառարաններուն անուանքն են. ա. Գանձ Հայոց լեզուին կամ Բառարան Ստեփանեան Հայերէն-Լատիներէն, յօրինեալ ի Ստեփանոս վարդապետէ Ռօշքայ կամենիցացւոյ՝ ի կատարած ԺԷ դարուն կամ ի սկիզբն ԺԸ ին. այս բառագիրքս ցարդ անտիպ մնացած է։ բ. Բառգիրք Հայկազեան լեզուի, յօրինեալ*

ի Մխիթարայ Աբբայէ և յաշակերտաց նորին, և հրատարակեալ յերկուս հատորս ի Վենետիկ ի տպարանէ Անտոնի Պորթոլի յամին 1749 և 1769։ Գ. Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի, հոյակապ գործ Աւետիքեան - Սիւրմէլեան - Աւգերեան վարդապետաց, տպեալ ի Ս. Ղազար յամին 1836 - 1837։ Դ. Բառգիրք Հայերէն - իտալերէն, յօրինեալ ի Հ. Մանուէլէ Ջախջախեան և տպեալ ի Ս. Ղազար յամին 1837։ Ե. Առձեռն Բառարան Հայկազնեան լեզուի, յօրինեալ ի Հ. Մկրտչէ Աւգերեան, (մի յերից հեղինակաց Նոր Հայկազեանին,) և տպեալ ի Ս. Ղազար յամին 1846, որոյ երկրորդ տպագրութիւնն հանդերձ յաւելուածովք և ուղղութեամբք հրատարակեցաւ յամին 1865։

Այս ամէն դիտողութիւններս կը թողում ի դատաստան հմտից։ Անշուշտ ինձի ախորժելի է որ ինչպէս Գաղղիերէն-Հայերէն բառարանիս Յայտարարութեան մէջ Քէչէլ բառի ուղիղ նշանակութիւնը ցոյց տուի և իմ կարծիքս հաստատեց գիտուն * մը, նոյնպէս ալ առաջիկայ ամէն կարծիքներս վաւերական գիտնոց վճռով. բայց եթէ ուրեք կը սխալիմ, շնորհակալ կ'ըլլամ անոնց որ իմ սխալս կ'ուղղեն, վասն զի առանց սուտ համեստութեան կրնամ ըսել որ չգիտցածիս թիւն յոյժ առաւել է քան թէ գիտցածիս։ Եթէ Նոր ժամանակներուս առաջին հայերէնագէտն՝ մեծանունն Հ. Արսէն Բագրատունի՝ իւր եօթանասնամեայ հասակին մէջ կը խոստովանէր թէ «Ամէն օր հայերէն լեզուի մէջ նոր բան մը կ'ուսանիմ», ես ի՞նչ պէտք է ըսեմ։ Մինչդեռ այլոց առիթ կ'ընծայեմ իրենց տաղանդը ի հրապարակ հանելու, ես գոհ եմ եթէ և իմ աղքատիկ լումաներս յիշող և յարգող գտնուի։

* Այն է գերապատիւ Վահան վարդապետ Բաստամեանց, վանահայր Ս. Գայիանեան վանից. տես յառաջիկայդ ի բառն Քէչէլ։

Ասոնք են այն քսան բառերը զորս կը քննեմ ի ստորեւ մի ըստ միոջէ։

1. Աղբղբուկ
2. Ամար
3. Ամբեւտ
4. Աստախոտոս
5. Արօսի
6. Բաշխ
7. Բաստեռն
8. Բլիթէն
9. Գետնախնձոր
10. Ջոյդոստատ
11. Թաթառ
12. Թոնձ
13. Խարի
14. Կոյշ
15. Հօրորդութիւն
16. Շաղանակ
17. Ուռամիջակ
18. Տատան առնեմ
19. Տլպ
20. Քերքէշ

1. Աղբղբուկ։ Ստեփանոս Կամենիցացի կը գրէ. «Աղբղբուկ, ծղէ, կոռ. խոտ անուշահոտ պարտիզաց, որ և վայրի նարդոս ասի. լտ. Phu, Valeriana. գաղ. բժ.» – Նոր Հայկազեանն. «Աղբղբուկ կամ Աղբաղբուկ. բառ անյայտ առ Գաղիանոսի, իբր աղտ պղնձոյ և այլոց իրաց. դէրդ, տօրտու, կէսաֆէ, որպէս և Աղբըղբըկն կոչեն, իբր անուն խոտոյ»։ – Հ. Մանուէլ Ջախջախեան. «Աղբղբուկ կամ Աղբաղբուկ. բառ ոմանց խոտ ինչ անուշահոտ. իտ. Valeriana, Fu. (երկբայօրէն) եւս՝ կղկղանք պղնձոյ և այլոց հրահալից. իտ. Scoria di rame, feccia de' metali»։ Նոյն Ջախջախեանն իւր Իտալերէն-Հայերէն ընդարձակ բառարանին մէջ (Վենետիկ, 1804) կը գրէ. «Fu, Valeriana. խոտ ինչ. ըստ ոմանց կոչի Աղբղբուկ»։ – Առձեռն բառարանի երկրորդ տպագրութիւնն. «Աղբղբուկ. 1. հանքերու աղտ, դիրտ. տօրտու, կէսաֆէ. 2. բժշկական արմատ մը՝ ծաղիկն անուշահոտ. կէտի օտու»։ – Իսկ Վրուրի Որմզդանայ Բուրաստանաց մէջ, Ա. տող 27, Աղբղբուկ գործածուած է իբրեւ հաւու ծիրտ.

«Դու զքամածոյ չանչն ի յանկեան ուրեք մրթերըս բացօթեայ, խառն ի խուռն ընդ «աղբղբուկս» վառեկի դէզ առ ի փուտ»։

Ըստ իս՝ կը սխալին Աւբուբուկ բառը աղտ, գիրտ կամ ծիրտ հասկցողները. Աւբուբուկ բուսոյ մ'անուն է, և ոչ այլ ինչ: Գաղիանոսի բառերուն մէջ գրուածն այս է. «Եւխսբու. Աւբուբուկ». Նոյն տեղը կը գրուի դարձեալ. «Ալ չփոյ. Աւբեւբեկի հոտոց. ապամ կոմանճի»: Եւխսբու ձայնին մօտ կայ յունարէն ἰβίσκος, լտ. Hibiscum, որ է գղ. Guimauve, հայերէն Տուղտ, տճ. խիւլխաթմի: Կայ նաեւ հայերէն Բուղբուկ կամ Բուղբոկ տունկ, որ ձայնիւ նման է Աւբուբուկ բառի. Նոր Հայկազեանն ի բառն Տուղտ կը յիշէ վկայութիւն մը ի բժշկարանէ, յորում կ'ըսուի. «Բաղբակ. տուղտ. հաթմի»: Այս հաթմի բառս է արաբերէն խաթմի, այսինքն տճ. խիւլխաթմի:

2. Ամուր: Ստեփանոս կամենիցացի կը գրէ. «Ամուր. հաւ ջրային գորշագոյն, սակաւ ինչ մեծագոյն քան զաղաւնին. լտ. Fulica, Larus. Մագ. քեր. «Որպէս ոչ եղելոյ լուղակաց, զամար հաւն կոչեն ամառ»: —Նոր Հայկազեանն. «Ամուր. անյայտ բառ, զոր ընթեռնու ի Մագիստրոսի քերականին Ստեփանոս Լեհացի* և մեկնէ՛, հաւ ջրային գորշագոյն փոքր ինչ մեծ քան զաղաւնին. (որպէս ճայ ծովու. մուրնի.) այլ ինքն դնէ ի լտ. Fulica, Larus. որոց առաջինն կոչի յոմանց ումկ. կեչկեր, ըստ Մենինսքեայ՝ ճուճըր»: — Հ. Ման. Ջախջախեան. «Ամուր. հաւ ջրային գորշագոյն՝ փոքր ինչ մեծ քան զաղաւնին. իտ. Folaga»: —Առձեռն բառարանն՝ երկբայանօք. «Ամուր. տեսակ մը հաւ կամ ջրային թռչուն մը»:

Ըստ իս՝ Ամուր ոչ է հաւ ջրային կամ թռչուն, այլ տեսակ մը ձուկ: Ստեփանոսի կամենիցացւոյ ի Մագիստրոսի քերականէն յիշած վկայութիւնը այսպէս կը գրուի ի սոյն օրինակս Մագիստրոսի. «Ոչ ունելով նոցա (Ցունաց) ճէ՝ յորջորջեն զճուռակն ծուռակ, որպէս ոչ եղելոյ լօղականացն որ ի մերում գաւառիս, նովին ձայնիւ կոչեն ամուրն՝ ամառ»: Հոս հաւ բառի յիշատակութիւն չըլլուիր, և

* Այն ինքն է Ստեփանոս կամենիցացի:

խօսքը պարզապէս ըղձականաց՝ այսինքն ձկանց՝ վրայ է. «Ցոյնք ՚ի գետը չուեննալով, կ'ըսէ Մագիստրոս, փոխանակ ճուառակի կը հնչեն ծուռակ. նոյնպէս մեր երկրին մէջ գտնուած ձկները իրենց չուեննալնուն համար, նոյն բառով ամառ կը կոչեն (աշուն) ամառ ձուկը (որ հայերէն ըսել կ'արտասանուի)»: Մինչեւ հիմա Վենետիկոյ լճին մէջ կը գտնուի Աշում անունով ձուկ մը. տես Հ. Ղեւ. Ալիշան, Տեղագիր Հայոց մեծաց, էջ 19:

3. Ամբեր: Նոր Հայկազեանն կը գրէ. «բառ անստոյգ. գի կամ է յն. էմբրիօն, որ է Սաղմն, և կամ թերեւս խլուրդ. «Որ յորովայնի մեռանի, ընդ այն համարէ թէ զամբերն ոք սպանանիցէ. քանզի ամբերն կոյր է, և ոչ գիտէ որպէս սպանանի». Կիւրեղ Աղեքսանդրացի, մեկն. Բ Օրինաց»: – Հ. Ման. Ջախջախեան չի յիշեր զԱմբեր, այլ կը դնէ երկբայանօք. «Ամբոյր. յովազ կամ միեղջերու. իտ. Pantera, Liocorno»: – Առձեռն Բառարանն կը գրէ նոյնպէս երկբայանօք. «Ամբեր. սաղմ կամ խլուրդ». «Ամբոյռ կամ Ամբոյր. յովազ կամ միեղջերու կենդանին»:

Ըստ իս՝ Ամբեր կը նշանակէ խլուրդ, գղ. Taupe, տճ. քէօր սըչանը: Նոր Հայկազեանն միայն Կիւրղի Աղեքսանդրացւոյ Բ Օրինաց մեկնութենէն վկայութիւն մէջ կը բերէ. բայց ես գտած եմ այս բառս նաեւ Գաղիանոսի բառերուն մէջ, յորս կը գրուի. «Ասփաղկէ. Ամբոյր». Ասփաղկէ է յոյն բառն ասփա՛լաքս, այսինքն՝ խլուրդ: Մինչեւ հիմա խառնշփոթեցինք Ամպար կ'ըսեն խլրդին: իսկ Ամբոյր յովազի կամ միեղջերւոյ նշանակութեամբ անծանօթ է ինձ:

4. Աստախոզոս: Նոր Հայկազեանն այս բառս կը յիշէ Մխիթար Հերացւոյ Ջերմանց մխիթարութենէն և նոյն կը համարի Աստակոս բառին հետ, որ է յունարէն աստակօ՛ս, տճ. ըսթաքօզ, գղ. Homard: Նոյնպէս Առձեռն Բառարանն իբրեւ նոյնանշան կը դնէ Աստակոս, Աստախոս, Աստախոզոս, այսինքն տճ. ըսթաքօզ:

5. Արօսէ։ Նոր Հայկազեանն կը գրէ. «Արօսէ. յունարէն օէ՛. լտ. Sorbus. յունարէն դա օա. լտ. Sorbum. ծառ և պտուղ. տճ. իւվէզ. Գաղիանոս»։ — Առձեռն Բառարանն. «Արօսէ. սին ծառն և պտուղը. տճ. իւվէզ, իւվէզ աղաճը»։

Բառ իս՝ Արօսէ է նոյն ընդ Արօս, և կը նշանակէ գղ. Outarde ըսուած մեծ ջրային հաւը։ Գաղիանոսի բառերուն մէջ գրուածն այս է. «Ոտի. Արօսէ». Ոտի է յն. օտէս, գղ. Outarde. իսկ Նոր Հայկազեանն կ'իմանայ յն. օէ՛, որ է տճ. իւվէզ աղաճը, գղ. Sorbier կամ Cormier։ Այս թիւր իմացուածքէն՝ Արօսէ, թռչնոյ անուն, առած է նշանակութիւն իւվէզի ծառի։ — Նոր Հայկազեանն Արօս բառի մի միայն վկայութիւն կը բերէ ի նախնեաց, այն է ի պատմութենէն Մատթէի Ուռհայեցւոյ. «Յայսմ ամի եղեւ պատերազմ թռչնոց ի գաւառն Մելտենոյ. ժողովեցան արագիլք և կռունկք և արօս և կռուեցան ընդ միմեանս, և կռունկն յաղթեաց զարագիլն, որ բնաջինջ արար զնոսա և ուր ուրեք մնացին». տպ. Երուսաղէմի, էջ 446։ Յիշեմ ուրիշ քանի մի վկայութիւններ ալ. «Ջօրէն արօսին, քանզի նորա յորժամ մերձ ելոյ հուպ յըմբռնումն բազէի, ի գունս կոյս եղեալ զծիրան ծորեալ դիմացն ուղղակի ճահեցուցանէ, և ինքն թռուցեալ մնայ կենդանի». Գր. Մագիստրոս, թուղթ ԿԱ. — «Կիլիկիա . . ունի . . և հաւ՝ սիրամարգ, սալամ, կաքաւ և տուռէճ, արօս և արագիլ». Թովմա վարդապետ, Նկարագիր Կիլիկիոյ. —

«Արօսն էր մեծ զերթ ոչխար,
Ջօրն ի դաշտերըն շուրջ կուգայր». Բառարան Հայ-Լտ.

Ստեփանոսի կամենիցացւոյ։ —

«Մեծամեծք խորհուրդ արին, բերին ըզպագն ընդ արօսին,
Մանրամասն կտրատեցին և զճընճըղկան փորըն լըցին».

Տաղ ուրախութեան, Արեւելք առաջին. —

«Հուպարայ, որ թուրքերէն այս թռչնոյս Բօյլ կ'ասէ,

և ոմանք ըն կուասեն ; և յարապերէն հէպօն կ'ասէ, և հայե֊րէն Արօս, և ինքն թռչուն մն է որ միսն սագուն մսին և բա֊թու մսին ի մէջն է»․ Ամիրտովլաթ, Անգիտաց անպէտ։ Տես Aubère ի Յաւելուածն (Supplément) Լիտրէի Գաղղիե֊րէն բառարանին, յորում արաբերէն հօպէրա, բառն կը մեկնուի գղ․ Outarde։

6․ Բոշխ։ Նոր Հայկազեանն կը գրէ․ «Բոշխ․ որպէս Աքալար․ յն․ ա'կարէ․ ակար․ մանր ճճի․ կամ որդն մոմոյ, պանրոյ, և մորթոյ մարմնոց մարդկան․ Գաղիանոս»։ — Նոյնպէս Հ․ Ման․ Ջախջախեան Բոշխ բառը կ'իմանայ իբր լտ․ Acarus, մանր ճճի կամ որդ․ նոյնպէս և Առձեռն Բա֊ռարանն։ Հ․ Սրապիոն Էմինեան ալ գղ․ Blatte, Charançon և Mite բառերուն դիմաց, որ որդ կամ ուտիճ կը նշանա֊կեն, կը դնէ Բոշխ։

Ըստ իս՝ Բոշխ ոչ է յունարէն ա'կարէ և լտ․ Acarus ըսուած որդն կամ ճճին, այլ լտ․ Acorum կամ Acorus, իտ․ A'coro, տճ․ եկիր օթու կոչուած ջրային բոյսն, որ պարս֊կերէն կ'ըսուի վաճ կամ վաճ, և ուսկից մեր բժշկապետքն առած կ'ըսեն Բոշխ կամ Բոշխփոկ, Բոշղփոկ։ Գաղիանոսի բառերուն մէջ գրուած է․ «Ակարոն․ Բոշխ է»․ փոխանակ այս Ակարոնը Ակորոն կարդալու և իմանալու լտ․ Acorum բոյսը, վերոյիշեալ բառարանք կ'իմանան այն որդը կամ ճճին որ յն․ կ'ըսուի ա'կարէ և լտ․ Acarus։ Ահաւասիկ Բոշխփոկի քանի մի վկայութիւնք․ «Ոճճ․ Բոշխփոկ»․ Բժշկա֊րան ԺԳ դարու․ — «Վաչ․ Բոշխփոկ»․ Բժշկարան․ — «Վաճ, որ է ակէր»․ Հին բառգիրք․ — «Բոշղփոկն, որ է վաճն, որ է ակէրն․ ինքն սպիտակ և թեթեւ տակ է․ ի ջրին մէջն կու բուսնի․ լաւն այն է որ ի լի լինի, և անուշահոտ լինի․․․։ Ասէ Պատեհին թէ փռանկն այսոր ակորոյ ասէ, և հռոմն ղրուն ասէ, և պարսկերէն ակէր ասէ և յասփ ըւ ղրդհ ասեն»․ Ամիրտովլաթ, Անգիտաց անպէտ․ — «Ոճ, որ է ակէրն, որ է վաճն»․ անդ։ Ընդհանրապէս Ամիրտովլաթի գրոց մէջ

Թաղշյան կը գրուի, ինչպէս կը գրէ և Նոր Հայկազեանն. բայց ըստ ընտրելագոյն ձեռագրաց գրելի է Թաշխան:

7. Թախտրևան. Մխիթարեան կամենիցացին կը գրէ. «Թախտրևան, տաճ. Ցանաց. է փոքրիկ կառ ծածկեալ ի վերաւոր, որ ի վերայ երկուց ջորւոց ուսանք դնեն. լտ. Basterna, Lectica. Պատ. Հայ. իրեն. և. «Նախնեաց վերջքն թախտրեւանք երրեակք չքնաղ են»: —Քերթողական բառագրքաց մէջ ալ կը գրուի. «Թախտրևան. դեսպակ կամ կառպառ». (լտ. Cuba կը նշանակէ գդ. Litière, դահաւորակ, ֆրանս. րէնէն): —Նոր Հայկազեանն չի յիշեր զայս բառ ի կարգին, այլ ի բառն նաւասատ խանդակապեալ գրութեանցն թախտրեան: —Հ. Մանու. Ջախջախեան. «Թախտրևան, կանկառ և փափուկ նստարան. տճ. սէտիր. ֆր. Canapè, Sofà». որմէ կ'առնու նաև Առձեռն Բառարանն: Հ. Սրապիոն Էմինեան գդ. Sofa բառին առջեւ կը դնէ. «բազմոց արեւելեան, թախտրևան. (սէտիր)»: Եւ Պօլիս հրատարակեալ Մեղու լրագրի 1859 տարւոյն 21 էջը թախտրևան կը գրուի նոյնպէս իբրեւ տճ. սէտիր. իսկ Հ. Արսէն Բագրատունի Միլտոնի Դրախտ կորուսելոյ թարգմանութեան մէջ, Դ. տող 305, թախտրևան կը գործածէ իբրեւ բազմոց կամ գդ. Tapis.

«Մինչ ինքեանք ի կողմ եղեալ ողն առնուին առ ի հանգիստ ի փափկիկ սիզաբուսակ ծաղկանըկար ի թախտրեւանս»:

Ըստ իս՝ Թախտրևան կը նշանակէ տեսակ մը դահաւորակ կամ դեսպակ Դ. դարու, որու կը լծուէին ջորիներ, լտ. Basterna. (տես Anthony Rich *, Dictionnaire des Antiquités romaines et grecques). Այսպէս կ'իմանան և Մխիթարեան կամենիցացի և Քերթողական բառգիրքն, որոնց մեկնու-

*Ահաւասիկ Անթոնի Ռիչի խօսքերն. «Basterna; sorte de palanquin, destiné particulièrement aux femmes. C'était une voiture fermée, traînée par deux mulets, un devant et l'autre derrière, attachés chacun à des brancards séparés».

Առձեռն Բառարան Նասըր կը մեկնէ. Հ. Սրապիոն Էմինեան ալ գղ. Cal, Cor, Durillon, Oignon բառերուն առջեւ կը դնէ. «Բլէպին. (Նասըր)»։

Ըստ իս՝ Բլէպին է գղ. Fenugrec կոչուած տունկն, որ Հայերէն կ'ըսուի նաեւ Բլպենջ, Հացհամեմ։ Գաղիանոսի բառերուն մէջ կը գրուի. «Տեղիս. Բլէպին»։ Տեղիս է յն. տէ՛լէս և լտ. Telis կոչուած տնկոյն անունն, որու գղ. կ'ըսեն Fenugrec. բայց Նոր Հայկազեանն կը սխալի կարծելով թէ Տեղիս ըլլայ յն. տէ՛լօ, որ է գղ. Callosité, այսինքն կոշտացեալ կամ բրտացեալ մասունք մարմնոյ։ Բլպենջ կը յիշուի Ամիրտովլաթի Անգիտաց անպէտ գրոց մէջ. «Բլպենջ, որ է հացհամեմն, որ է հապալթ ըլ սավտան»։ — Իսկ տճ. Նասըր բառի համար ունինք գաւառական կանկրուկ։

9. Գետնախնձոր։ Ստեփանոս կամենիցացի կը գրէ. «Գետնախնձոր. խոտ որ զհոտ խնծորոյ ունի. լտ. Unedo, Tuber, Arbutum, Chamaemelon. Գաղիանոսի բառք»։ — Մխիթար Աբբահօր աշակերտաց բառարանն, Հ. Բ. էջ 106. «Գետնախնձոր. պտուղ ինչ ուտելի խորտաբորտ խնձորանման բուսեալ յարմատս տղտանման բուսոյ իրիք որ յաճախ լինի ի կողմանս Արզրումոյ. ռմկ. գետնախնձոր. և տճ. եէր էլմասը. ի հին բժշկարանս»։ Թուի թէ հոս Գետնախնձոր հասկցուած է գղ. Topinambour տունկն։ — Իսկ Նոր Հայկազեանն, Ջախջախեան և Առձեռն Բառարանն երկու նշանակութիւն կուտան այս բառիս. 1°. գղ. Pomme de terre, տճ. եէր էլմասը. 2°. գղ. Camomille, տճ. փափաթեա։

Ըստ իս՝ Գետնախնձոր, որ է բառական թարգմանութիւն յն. խամէ՛մէլօն բառին, (խամէ՝ գետին, մէլօն՝ խնձոր,) կը նշանակէ միայն գղ. Camomille ըսուած ծաղիկը, զոր հայերէն կը կոչենք նաեւ խնձորխոտ կամ Երիցուկ. Ցոյնք գետնէ խնձոր անուանած են երիցուկը՝ իւր ծաղկանց խնձորի հոտ ունենալուն պատճառաւ. գղ. Camomille բառն ալ յն. խամէ՛մէլօն է։ Գաղիանոսի բառերուն մէջ ուր գրուած է. «Քամեմելոն.

գետնախնձոր», Camomille տունկը հասմիկալու է, և ոչ թէ Pomme de terre, որ Ամերիկայի յատուկ բոյս մ՚է, Եւրոպայի ԺԶ դարու մէջ մտած է, և կարծեմ թէ Գաղիանոսի ան֊ծանօթ էր և թէ իւր հայ թարգմանչին. Pomme de terreի կրնանք ըսել գետնախնձոր, բայց նոր առմամբ. Հետևաբար այն բառարանք որ միայն նախնեաց բառերը և բառից նշանակութիւնքը կը յիշատակեն, պէտք չէ որ դնեն բառի մը այժմեան առումը, որմէ շփոթութիւնք կրնան առաջ գալ, ինչպէս որ Հրացան ածականէն ետքը չեն դներ Հրացան գլանական, իբր գ. գ. Fusil, տճ. Թիւֆէկ, եայլն եայլն։

10. Զօյգասպաս։ Ստեփաննոս Կամենիցացի կը գրէ. «Զօյգասպաս. Ցունաց բառ. կշռապետ. առ հինսն էր, որ նախ քան զդրամիլն արծաթեայ և ոսկեայ դրամոցն, զպղինձ ի թոշակ զինուորաց կշռէր, և հայէր զի մի խաբէութիւն ինչ ի դրամս լինէր. լտ. Libripens, Zygostata. Մ. Խորեն. Բ. կ. «Ընդ այն ժամանակս առաքեաց (Ադրիանոս) զօր ծանր զկողմամբք Ասորեստանեաց, և մերոյն Արտաշիսի հրամայեաց երթալ ի Պարսս հանդերձ իւրովք զօյգասպասօք. զորոյ պէտս քարտուղարութեամբ լեալ ոյս այր, որ զայս պատմութիւնս ետ մեզ, հանդիպեալ Արտաշիսի ի Մարս, ի Յոհունդ անուանեալ տեղւոջ»։ — Նոր Հայկազեանն կը գրէ. «Զօյգասպաս. բառ անյայտ. Թուի Զոյգ ոստանիկաց, կամ զոյգ ուսուցեալ ի գործ պատերազմի. այսինքն՝ Նիզակակից, հեծեալ, ասպետ, ազատորեար, համհարզ, համահարզ. եւլն»։ — Հ. Մին. Զախջախեան. «Զօյգասպաս. Թուի զոյգ ոստանիկաց, կամ ազատորեար, գունդ ազատաց, ասպետաց. իտ. Corpo de' nobili, corpo di guardia reale»։ — Իսկ Աւձեան Բառարանն. «Զօյգասպաս. պատերազմակից»։ — Հ. Արսէն Բագրատունի իւր Գաղղիերէն քերականութեան մէջ (Ս. Ղազար, 1821) երես 99, Aide de camp բառի առջեւ կը դնէ Զօյգասպաս, (որմէ կ՚առնու նաեւ Ա. Գալֆա իւր Հայերէն-Գաղղիերէն բառարանին մէջ,)

և ի Հայկ Դիւցազներգութեան եւս, Զ. տող 743, Զոյգոս-տատ գործածած է նոյնպիսի մտքով.
«Ելցես ապա, Մանաւազ, վաղիւ վաղ քաջ ընդ առաւօտս ի տուն նորա զհետ նորին քոյովդ արի զոյգոստատօք»: ·

Ըստ իս՝ ուղիղ է Ստեփանոսի կամենիցացւոյ տուած մեկնութիւնն, և սխալ միւս երեք բառարանացը: Զիւկոս-տատ* է բառ յոյն զիւգօստա՛տէ կամ զիւգօստատէս, որ կը նշանա-կէ՝ կշռող, զիւգօ՛ բառէն որ է կշիռ: Նոյն է և լտ. Zygostata, Zygostates, զոր այսպէս կը մեկնէ Տիւ Գանժ իւր Մի-ջին և Ստորին Լատիներէնի բառարանին մէջ (Glossarium mediae et infimae latinitatis). «magistratus per singulas civitates a Juliano constitutus qui exortas de solidis controversias dirimeret»: Իսկ Վիկտոր Լանկլուա Խորենացւոյն վերոյիշեալ հատուածը այսպէս կը թարգմանէ. «Adrien ordonna à notre Ardaschès d'aller en Perse avec *les nobles de sa garde*», և ի ծանօթութեան կ՚ըսէ. «Le mot *Zioukosdad*, qui ne se rencontre que dans Moïse de Khorène, n'a pas de signification bien précise»:

11. Թոնառ: Մխիթար Աբբահօր աշակերտաց բառարանն կը գրէ, Հ. Բ. էջ 142. «Թոնառ. կնճիթ ամպոց որ իբրեւ զբազուկ երկայնացեալ յերկնից՝ առնու ի ծովէ կամ ի գե-տոց զջուր իբրեւ թաթիւ. տե՛ս. ամպի խօրթում. ըստ այնմ ի գիրս Սարգսի ի ձեռագիրն. Եւ հանէր իբր թոնառով իմն ջուր ի ծովէն»: —Նոր Հայկազեանն. «Թոնառ. ըստ եւս թոն առ, ըստ Գ. Թագ. ժը. 4. կամ Թոնիկ, նոյ, ով. որ կարծի նշանակել զվայրիջեալ թաթաձեւ կնճիթ ամպոյ. «Ահա ամպ փոքրիկ ի վերայ ծովուն, և հանէր իբր թոնառով իմն ջուր ի ծովէն». Սարգիս, մեկն. Ցակ. ԺԱ. ռմկ. խօրթո-մով. բայց գուցէ գրելի էր թոնով իմն, որ միաբանի ընդ

* Այս է հարազատ ընթերցուածն ըստ ընտրելագոյն օրինակաց Խորե-նացւոյ Պատմութեան, համեմատ ուղղագրութեան յոյն բառին, և ոչ թէ Զոյգոստատ:

պատմութեան գրոց» ։ — Հ. Ման. Ջախջախեան կը դնէ իբր նորահնար բառ. «թուֆան. կնճիթ ամպոյ ի ձեւ թաթի իջեալ յերկիր կամ ի ջուրս. տճ. խօրթում. իտ. Tromba di nuvola, Turbine, Vortice d'aria» ։ Նոյնպէս Առձեռն Բառարանն կը գրէ թուֆան կամ թուֆէն, և կը մեկնէ խօրթում ։ Հ. Սրապիոն Էմինեանն ալ գ.գ. Siphon և Trombe բառերու առջեւ կը գրէ թուֆէն ։

Ըստ իս՝ չիք բառ թուֆան, որով և ոչ խօրթումի նշանակութիւն, իբր գ.գ. Trombe ։ Սարգսի օրինակին մէջ գրուած գործիական տուֆանով բառին ուղղականն կամ թուֆէն է կամ թուֆան, իսկ նշանակութիւնն հետազօտելի ։ Այս տուֆանով գործիականն, յար և նման Սարգսի ըստածին «տուֆանով իմն», կը գտնուի նաեւ «Աս որս անպատում է բանն զոր եցոյց տեսողն» կանոնագլխին մէջ. «Եւ այրն փառաւորեալ ի ներքոյ միջնաթեւին տուֆանովքն իմն առնոյր զհրատն չագրուովքն» . տես Բազմավէպ 1862 ամին, էջ 10 ։

12. թունչ ։ Նոր Հայկազեանն կը գրէ . «թունչ . ազգ ժժմակի կամ խեցեմորթի . Թերեւս իբր Թոնծ անդամօք . «Եւ նշանակ խեցեմորթացդ կատարելագոյն է , որոց մարմինն ուտելի է . դարանամուտ լինի երկուք պատենիւք . միոյն ի միոջէ կողմանէ , և միւսոյն ի միոջէ՝ որք զնովաւ անկեալ պնդեն պատեանքն ։ Արդ զսոսա վասն զի քակել անհնար էր , որ ասին տունչ+* դիւրահնարաբար կլանեն յառաջագոյն , զի կոկորդին ջերմութեամբ հալեսցի՝ որ զպատեանսն պնդապահէ սինձն , և սակաւ (կարգա տակաւ) թուլացեալ արձակեսցին աղխքն . յայնժամ ի դուրս ընկեցեալ ի ձեռն ընդարձակութեան՝ զուտելին ի ներքս կորզեալ մատուցանեն անձանց» . փիլոն , յղ . բան ունել և անասունս կենդանեացդ , էջ 139-140 . ի լուսանցին նշանակեալ պեղուկն+ բառի համար ալ կ'ըսէ Նոր Հայկազեանն . «Թերեւս իբր պեղազոսեանք ,

* Ի լուսանցի փիլոնի ձեռագրին թունչ+ բառն կը մեկնուի Պեղուկն+ ։

ծածկեալք կամ պատկառք»։ – Հ. Ման. Ջախջախեան. «Թռչ. ազգ. ինչ ծածկեալ խեցեմորթիւք. կոչի և Պելեկանոս. Sorta di conchiglia marina»։ – Ա. Ձեռն. Բառագրութ. «Թռչ. ծովու ճճուակ կամ խեցեմորթ մի»։

Ըստ իս՝ Բոնջ է յն. πελεκᾶνος և գղ. Pélican կոչուած թռչունն, որ ի մեզ կ՚ըսուի և Հաւալուսն կամ Փարաւհաւ։ Յայտնի է ի յաջորդ վկայութենէ Գէորգեայ Պիսիդեան վեցօրէին, յորում ինչ որ կ՚ըսէ Փիլոն Բոնջի համար՝ նոյնը կ՚ըսէ Պիսիդէս Փորձնոսու համար (յոյն բնագիրն կը դնէ πελεκᾶνος). և փիլոնի ձեռագրին լուսանցին մէջ ալ երբեւ մեկնութիւն Բոնջ բառի նշանակեալ Պելլիկանն աւելի բան չէ բայց եթէ հայ տառադարձութիւն յունարէն πελεκᾶνοսի.

«Ո՞վ բանայ զբերան փորձնոսուցն
Փոխանակ սուսերի աքանչելի ինձ գործեալ երկայն տեգս,
Բացեալ զնոսա ամենակեր բերան
Անյագաբար յափշտակիչ ձկանց։
Դժրեն իմաստութեամբ զգաղտակուքսն
Յորժամ յիւրեանց խեցեղէն տփան ամփոփին,
Ստուգեալ ճարտարութեամբ բանան զնոսա.
Քանզի փակեալ գոլով խեցեղէն թերթիցն
Եւ անհնարին առ ի բանալ,
Կլանեն զնոսա ի խարոյկ որովայնին,
Եւ լուծումն կրեալ կարծրութեանն նոցա
Ի ջերմութենէն թուլացուցեալ վաղվաղակի
Ի բաց փսխեն, եւ մերկ գտեալ զկապս նոցա
Յափշտակեն զմարմինն, ոչ ունելով նոցա զխեցեղէն զգեստն».
յոյն բնագիրն Պիսիդեայ Վեցօրէին, տող 1098–1112։

Տես Բոնջը, ազգ ջրային թռչնոյ, և ի Պատմութեանն Ղ. փարպեցւոյ, էջ 26. «Ա.Ա. և գլխատուղակ մամռախնդիր խօզակեր մեծանձունք և յաղթամարմինք հաւքն, փորն և Բոնջըն և սագն, և կամ այլ բազում և անհամար ցամաքայնոցն և ջրայնոցն ջոկք թռչնոցն»։ Թերեւս այս Բոնջը ուղիղ ընթերցուածն ըլլայ Բոնջ կամ Բոնջ։

տոլվաթ Ամասիացի հետեւեալ պատուական տեղեկութիւնը կուտայ մեզ իւր Անգիտաց Անպէտ մատեննին մէջ. «Ջաբարեհ, որ Հայերն կուլ կու ասեն, և Թուրքն ճոմբուլ ըստըրօէ ասէ. ինքն ազգի ազգի է, տաք է և չոր է յերկրորդ տարաճան. օգտէ տայուսայլապին և մազ կու բուսցնէ, և այրող է, և զտողան ի փորուն կու ձգէ, և զգոզն և զկանաց արուննն կու յորդորէ, և զքարն ի բշտէն կու հալէ. և օգտէ անկան, և զշտկներն կու լուցնէ, և զպեղծ ըղունկն կու հանէ, և օգտէ պխակին և հերքուննին և բորին. և զան ուուեցն որ սարատան ասեն՝ հալէ, և թէ օծեն՝ օգտէ յերղնիտայի, և զիր չարութիւնն տանի կաթն և վարդի ձէթն, և իր փոխանն պալատուրն է։ Իպն Պայտարն ասէ. Թէ քացխով խառնեն և ի յանձն օծեն՝ զոջիլն սպաննէ, և թէ հոռոմ ձիթով խառնեն և զան հոռոմ ձէթն օծեն տայուսայլապին՝ օգտէ մազ կու բուսցնէ. և օգտէ պարասին. և թէ ի ձէթն ձգեն և մէկ շաբաթ յարեւն դնեն և յետեւ ի յականջն կաթեցնեն որ ցաւ ունի՝ օգտէ և զցաւն տանի և զխլութիւնն այլ տանի. և թէ ի պախրու մսին ի չուրվան խառնեն և տան ան մարդոյն որ կատղած շուն լինի խածել որ խմէ՝ օգտէ։ Եւ այսոր կերպն այս է որ ինքն սեւգլուխ որդկներ է, որ վերեւն կարմիր և մէջն սեւ լինի. և զան ի հոռոմ ձէթն դնեն և ի յարեւն կախեն վեց ամիս կեննայ. և զան եղն քալ գլխուն օծեն՝ օգտէ. և եթէ զան մէկայլն այն մարդն խմէ որ ի բուշան ցաւ ունի՝ օգտէ. և զիր չարութիւնն տանի սամթին ջուրն և արդար եղն որ ի վերայ խմեն օգտէ։ Ասէ Պատեհին թէ ինքն կենդանի է, և ի ճանճէն մեծ է, մեղուի չափ կայ, և կարմիր է, և բարակ է, սեւ կէտեր կայ ի վերայ, և ինքն սպաննող է. և ի Համատանա բոլորն շատ կու լինի. ամէն մէկն քան մեղու մն է, և ի շպրըմին վերայ կու նստի, և իր կերակուրն շիպրըմն է. և յանապատն ի դաշտերն շատ կու լինի. և թէ ուզես որ ի գործ արկանես, դիր զինքն ի նոր պուտուկ մն, և զբերանն կապէ քթանէ լաթով, և զքացխին

գլուխն յինքն բանէ որ մտնու ի մէջն և գլուխակն բանէ և ապա ի գործ արկ. և լաւն այն է որ ոսկեգոյն լինայ. տաք է և չոր է»։

Արաբերէն լեզուի մէջ քննելով տուրէր, տուրանրեհ կամ ղուրուրեհ բառը, կրնայ ստուգուիլ հայերէն կու ըսուած որ-դին նշանակութիւնն։

15. Հօրորդաբնեան։ Նոր Հայկազեանն կը մեկնէ զայս բառ. «ընտանութիւն սիրոյ ի մէջ մեծի ուրուք և փոքու՝ իբրեւ ընդ հայր և ընդ զաւակ. տե՛ս. պողոսեանք օգոստինոս հիպոնը. Այդ քո հօրորդաբնեանդ չվայելէ. Զաքարիա Ծործորեցի»։ Նոյնպէս Առձեռն Բառարանն կը մեկնէ. «ընտանի սէր»։

Ըստ իս՝ Հօրորդաբնեան Ստորին հայերէնի մէջ կը նշանա-կէ ազնուականութիւն. «Այդ քո հօրորդաբնեանդ չվայելէ», ըսել է՝ ատի քու ազնուականութեանդ չի վայլեր։ Կայ և Հօրորդէ, այսինքն ազնուական, զոր չի յիշեր Նոր Հայկա-զեանն. «Եւ բազում հօրորդէ+ և մեծազգիք եկին ընդ նո-րա ի Հռովմայ». Մատթէոս Ուռհայեցի, (տպ. Երուսա-ղէմ, 1869) էջ 460։ Մինչեւ հիմա Պոլսոյ աշխարհաբարին մէջ կը գործածուի «Հօրորդի զաւակ է», այսինքն մարդու զաւակ է, ազնուական ծնունդ ունի, հասարակ տնէ չէ։

16. Շագանակ։ Ստեփանոս կամենիցացի կը յիշէ զայս բառ յԱշխարհագրութենէ Մովսիսի Խորենացւոյ, բայց չի դներ նշանակութիւնը. յայտնի է որ տե՛ս. քեռբանէ չի հաս-կընար, վասն զի առանձինն կը յիշատակէ իւր բառարա-նին մէջ կաստանոյ՝ պտուղ, կաստանենի՝ ծառ, և կաստանոց՝ կաս-տանենեաց ծառաստան. Ահաւասիկ վկայութիւնքն. «կաս-տանոյ. ծանօթ պտուղն, զոր արեւելեանք շահպալութ կո-չեն, մեք՝ կաստանեայ. ամենայն լեզուաւ բաց յեբրայեցւոցն կաստանեայ ասի. լտ. Castanea, Balanus. Բժշկ. «Մի կերի-ցէ զկաստանեայ մաղասոտն». – «կաստանենի. ծառ յորմէ կաս-տանեայ պտուղն ելանէ. լտ. Castanea. Քաղ. «Ընդ ծմակաւ

կասկենւոյն ծառոց»։ — «Կասկենոյ. անտառ կասկենեաց, տնկեստան. լտ. Castanetum. Ցաղ. ծի կասկենւոյն երիթեալ խաղան, իբր»։ — Մխիթար Աբբահօր աշակերտաց բառարանն կը գրէ, Հ. Ա. էջ 782. «Շագանակ. է ազգ ինչ կաղնոյ պտղոյն կարծրակեղեւ պտղով, պատեալ թփշոտ կեղեւանօք, որ արտաքուստ ի փշալից պատեանս իբրեւ ի փոքրիկ տուփս։ Զաս այլազգական բառիւ կոչեմք Շահպալուտ. ռմկ. քէսթանէ. Խորեն. յԱշխարհագրութեան»։ — Նոր Հայկազեան և Հ. Մատ. Ջախջախեան երկբայանօք կը գրեն այս բառիս ընթերցուածը, Շագանակ, Շաղգանակ, Շաղկանակ, և կարծեօք միայն ռմ. քէսթանէ բառին նշանակութիւնը կուտան. առաջինն միայնութիւն կը բերէ Խորենացւոյն Աշխարհագրութենէն. «Կորճայք... ունի ղաւիկ, և ի մրգոց շագանակ»։ բայց Ս. Ղազարու տպագիրն, էջ 608, կը դնէ շահնդակ, և ի ծանօթութեան կ'ըսէ. «Հին տպագիրն շագանակ. երկու օրինակք շաղդանակ. միւս եւս մեկնութեամբ աշահդանակ, այսինքն քանաքար ծառոյ սերմն»։ — Աւձեան Բառարանի երկրորդ տպագրութիւնն կը դնէ. «Շագանակ. կաստանա կամ անոր նման պտուղ. ռմ. քէսթանէ.» — «Շահնդակ. պտուղ մը»։ Իմ խուզարկութեանցս համեմատ՝ Շագանակ բառն քէսթանէի նշանակութեամբ հարիւր երեսուն տարիէ ի վեր միայն գտած է մեր այժմեան հայերէնին մէջ, շնորհիւ Մխիթար Աբբահօր աշակերտաց Հայկազեան բառարանին (տպ. յամին 1749), որոյ տուած բացատրութիւնը անեանք վերադրյն։ Շագանակէն չինուած ենք նաեւ Շագանակենի, Շագանակագոյն, և թէ ի խօսս թէ ի գիրս առ հասարակ կը գործածենք այս երեք բառերը, զորս նուիրագործած են իրենց գրուածոց մէջ առաջին կարգի հեղինակք, օրինակ իմն Հ. Արսէն Բագրատունի ի թարգմանութեան Մշակականաց Վիրգիլեայ, Բ. տող 15.

«Իսկ ոմանք յառնեն կանգնին ի սերմանէն առկախելոց,
Զերդ երկնուղէշ շագանակ, և ի մայրիս յաղթ փառաւոր
Ցերեւեալն Արամազդեայ շուն և կաղնիք հելլէն դաղիր»։

Նոյնպէս Գեր. Եդուարդ Հիւրմիւզեան ի Թարգմանութեան Տեղեմաքայ, Ժբ. էջ 366. «Պատրաստէ պանիր, շագանակ և միրգ դալար իբր այն ինչ ի ծառոց կթեալ»։

Ըստ իս՝ անվաւեր է թէ Շագանակ ընթերցուածն և թէ քէսթանէի նշանակութիւնն։ Հարազատ բառն ի վերոգրեալ վկայութեան Աշխարհագրութեան Խորենացւոյն ըստ ընտրելագոյն ձեռագրաց Թուփ Շահդանակ կամ Շահդենակ, որոյ մերձաւոր է ձայնիւ, և թերևս նշանակութեամբ, պարսկերէն շահդանէ կոչուած պտուղն։ Քէսթանէի համար Սոորին հայերէնի մէջ սովորական եղած է ընել օտար բառով Շահպալուտ, կամ Կաստանայ՝ ինչպէս տեսանք ի վեր անդր ի վկայութիւնս Ստեփանոսի կամենիցացւոյ, որ ունի նաև Կաստանենէ, Կաստանոց. Նոյնպէս ի գիրս Վաստակոց կը գտնենք Կաստանայ, և ծառն՝ Կաստանայէ կամ Կաստանէ. «Վասն որ զԿաստանայն պահես». Մի. էջ 136. – «կաղնին և Կաստանայէն (խնդրեն) զանձրևային (վայրս)». անդ. Գ. էջ 4. – «Հնդի այսոքիկ են լաւ, ընկուզենի, նշենի, Կաստանէ, դեղձի». անդ. Միը. էջ 143։ կրնանք համարձակ գործածել Կաստանայ և Կաստանայէ կամ Կաստանենէ բառերը, որ կը ծագին Թեսաղիոյ և Պոնտոսի Կաստանոն և Կաստանիա քաղաքաց անուններէն*, քէսթանէի ծառեր առատ գտնուելով այս քաղաքներուս մօտ։ Արդէն հայ լեզուի մէջ ունինք ուրիշ բառեր որ յատուկ անուններէ յառաջ եկած են, ինչպէս փասեան՝ փասիս գետէն, թասուն (գինի)՝ թասոս կղզիէն, Շերամ կամ Շերաս՝ հին Սերաց ազգէն, և այլն. բայց քէսթանէն հայեցի անուն մ՚ալ ունի, այն է՝ Մաշկամիրգ, իբր մաշկով պատած միրգ։ ԲԱշխարհագրութեան Խորենացւոյն կը կարդանք. «Տուրուբերան . . . ունի և դաղպէն և մեղր և մաշկամիրգ և սպիտակ (կամ պխտակ) նաւթ և երկաթ». էջ 608. ուրիշ օրինակ մը, որ կը գտնուի ի մատենադարանի Բ. Բ. Մխիթարեան Հարց Վենետկոյ,

* Տես Châtaigne ի Գաղղիերէն բառարանն Լիդրէի։

այսպէս կը գրէ. «Գաւառն (ի Տուրուբերան) պատակ և կառ-
ուցանում որ է Մուշխոմերտ (կարդա Մուշկոմերտ), և մեղր անոյշ
քան զամենայն երկրի, և երկաթ»: Մինչեւ այսօր խորըՀըր-
դեցիք Մաշմոտ անունը կու տան ֆէօնանէ պտղոյն. իսկ Պոն-
տացիք, եթէ Հաւաստի է առած տեղեկութիւնս, ուղիղ
եւս կ՚արտասանեն Մուշկմէրէ: Անշուշտ մեր նախնիք ծառին
Համար ալ ըսած են Մուշկոմէրէ, ինչպէս արդէն ունինք
Հնամոմէթէ:

17. Ոսամէջով: Նոր Հայկազեանն կը մեկնէ զայս բառ.
որոյ ուղքն նմանակիք են միջակ. միջասաՀման ըստ ան-
դամոց ձեռաց և ոտից. կամ պարարակ միջով.

«Այն ճորան ճոխ էր եւ ճապուկ,
Ոսամէջով հաստաբազուկ,
Լայնաթիկունք խարտեշագեղ».

Գր. Նարեկացի, Տաղ Ծայլին, էջ 473:

իսկ Առձեռն Բառարանն կը մեկնէ. «միջակ Հասակով»:

Ըստ իս՝ Ոսամէջով կը նշանակէ՝ ուռուոյ պէս բարակ կամ
ճկուն մէջք ունեցող: Հետագայ վկայութիւնք կարծեմ
բաւականապէս կ՚արդարացնեն իմ կարծիքս.

«Ով ոսս մէջնոցդ գիրկ ածէ
կանաչ մեայ քան զնըշտարենին».

Յով. կթ. Թուլկուրանցի, Տաղ սիրոյ.

«Քո մէջքդ է բարակ քան զոսկի վարոց».

Գր. կթ. Աղթամարցի, Տաղ սիրոյ.

«Մէջքոսնեղ է ոսկի ու սալվի չինար».

Ղազար, Տաղ սիրոյ.

«Գրկեմ զայն ոսկի մէջքոսնեղ որ հագեր ես չար կապանի».

Տաղ սիրոյ.

18. Տափան տանել: Այս բառս կը յիշուի միայն Առձեռն

Բառարանի երկրորդ տպագրութեան մէջ. և կը մեկնուի ճօճել, այսինքն դղ. se Balancer, տափընծալ խաղալ։

Ըստ իս՝ Տափան առնէմ, բայց Ստորին Հայերէնի, որ կը գտնուի Մխիթար Հերացւոյ Ջերմանց մխիթարութեան մէջ, խԱ. էջ 125, «Եւ յայն երկու օրն որ հանգիստ լինի, ի ձի հեծնելն և զտափան առնէլն՝ մի արգիլեր», կը նշանակէ շարժում ընել, քալել, պըտըտիլ, faire de l'exercice, ինչպէս կ'ըսեն Գաղղիացիք։ Մխիթար Հերացւոյ բժշկարանին ուրիշ ձեռագրի մը մէջ սոյն հատուածս կը գրուի. «Եւ յայն երկու օրն որ զնուպան չունենա, ի ձի հեծնել և տափնցել՝ մեծ օգուտ է»։ Ստորին Հայերէնի մէջ Տափնցել կը նշանակէ պըտըտիլ, ժուռ գալ. իսկ Տափնցեցնել՝ պըտըտցընել, ժուռ ածել։

19. Տեղ։ Նոր Հայկազեանն կը յիշէ զայս բառ յեփրեմի մեկնութենէն Աւետարանի և կը մեկնէ «կնիք կուսութեան». իսկ Առձեռն Բառարանի երկրորդ տպագրութիւնն կը մեկնէ ոչ միայն «կնիք կուսութեան (դղ. Hymen)», այլ և «բոլոր իգական անդամը (դղ. Vulve)»։

Ըստ իս՝ Եփրեմայ Աւետարանի մեկնութեան մէջ, կամ թէ աւելի ճիշդ խօսելով՝ «ի Մարգարիտն յայտնութիւն» ճառին մէջ, Հ. Բ. էջ 351–358, Տեղ բառն կը նշանակէ խեցեմորթներու, ոստրէներու, գաղտակրերու խեցին կամ պատեանն. ընթերցողն կրնայ տեսնել զայս հետագայ օրինակներէն. «կոյնքն բարբառեսցին զծնունդն մարգարտին. ասացէ զյղացումն տեղոն. տեղոն եղիցին վարդապետք՝ որ ի ջուրսն են՝ մարդկան, որք կարծեցին յերկինս բնակել. (էջ 351) . . . մարգարիտս քար է ի մարմնոյ ծնեալ, զի ի տարենէջ ելեալ երեւի. (էջ 352) . . . ոչ ցանկալից եղեւ տեղն յղացեալ զմարգարիտն, բայց միայն զգայութիւն յաւելուածոյ իմացաւ. և Մարիամ առանց ցանկութեան ծընաւ զՔրիստոս . . . Թագեաւ իբրեւ յարգանդի ի խորշ տղին, և իբրեւ բնութեամբ աղդեցաւ առ ի կատարելու-

*թիւն հաստակին* . (էջ 353) . . . *վասն որոյ ի ներկայ զօրու-թենէն կոյս իբրեւ փէղթ ծնաւ բնութեամբ, և իբրեւ կին ոչ ամենեւիմբ չարչարեցաւ ։ Դարձեալ միակցութիւնն եկեալ բնութեանն, որպէս փէղթ ստորէիցս, ի կուսական կարգն* . (էջ 355) . . . *որպէս փէղթ կոնքացն յառաջ բե-րելով զմարգարիտն* . (էջ 356) . . . . ։ *Հայեցարուք ի մար-գարիտն և մի մոլորիք . . . փէղթն ջրով, և ձեւն ջրով ա-ճեն . ոչ կիզուն փայլատակունքն զփղոցն մարմինն ։ Զիա՞րդ ի գոյութիւն եկին միութեամբ հուրն և ջուրն . եկեղց փղոցն անշէջ պահեաց զթոյլ բնութիւնն* . (էջ 357) . . . *փէղթն յայտնեցան, զի ոչ ի ձեռն կանացի անդամոց յղացաւ . զի ամենայն մարմին եբաց զերկու փէղն, և ոչ ետուն մարմնա-կան կարգքն . փէղթ անհոգութեամբ արձակ ունելով զմար-մին՝ յանկարծակի ի փայլակմանէն լցան* . (էջ 358) . . . *փոփէնէցն փէղթն բանան, բայց մարգարիտն չափ անքակ է . . անհաւասիկ փոփէանէն և մարգարիտն, զորս միաբան էած Քրիստոս ի ձեռն շնորհին»* . էջ 358 ։ *իսկ ի Պիսիդեայ Վե-ցօրէին կը գրուի Տէէ նոյնպիսի իմաստով* .

*«Դժրեն իմաստութեամբ զգաղտակութն*

*Ցորժամ յիւրեանց խեցեղէն փէփն ամփոփին»* .

*տես ամբողջ վկայութիւնը ի բառն* թոնյ, էջ 116 ։

20 . Քէրթէլ ։ *Ստեփանոս Կամենիցացի կը գրէ . «Քէրթէլ, թէլէ, շու . որ զանուշահոտ արմատս ունի, բայց կծուս . ի ճախինս լինի, դեղ է սրտի . լտ .* Acorum, Acorus . *Գաղիա-նոսի բառք ։ Սխալ են որ զկեղն թէրթէլ մեկնեն, զի թէրթէլէ-բայ է» ։ – Նոր Հայկազեանն . «Քէրթէլ, խոտ և արմատ բը-ժշկական . յն . ա՛կորոն . լտ .* Acorum, Acorus . *տճ . էկիր օթու . Գաղիանոս»* ։ *Նոյնպէս Հ . Ման . Ջախջախեան և Առձեռն Բառարանն* էկիր օթու *կը մեկնեն ։ Հ . Սրապիոն Էմինեան ալ գր .* Iris des marais *Ջրային բոյսը կ'անուանէ «Սուտ թէրթէլ . (դէր նէմ էկիր օթու ւէլէյէ)»* ։

*Ըստ իս՝ կը սխալին ամենայն բառարանք .* Քէրթէլ *է*

տեսակ մը վէրք կամ կեղ երեսաց և գլխու, յն. ախօ՛ռ, լտ. Achores, իտ. A'cori, գղ. Achores, տճ. բուֆլու: Գաղղիանոսի բառերուն մէջ կը գրուի «Աքորոմ (կարդա՝ Աքորոս,» և Տ կը չփոթէին ի ձեռագիրս, ինչպէս ընդարձակօրէն խօսեցայ Բառաքննութեանս սկիզբը, Գլ. Ա. յօդ. ա. էջ 11). Քերթեղն». Ստեփանոս Կամենիցացի, և ըստ նմանէ՝ Նոր Հայկազեանն և միւս բառարանք փոխանակ իմանալու լտ. Achores կոչուած կեղը, կ՚իմանան լտ. Acorum կամ Acorus բոյսը, որով Քերթեղ և Բուշխ կամ Բուշխարակ կ՚ըլլան նոյնանշան: Քերթեղ կը գտնուի նաեւ ի գիրս Երեմիա Մեղրեցւոյ. «կեղ և խաղաւարտն. քերթեղ խոցն է, որ եռացուցանէ և մորմոքեցուցանէ զմարմինն»: Կան դարձեալ Քերթեղէմ և Քերթեղոտէմ բայք. «կեղն քերթեղէաւ մորթոյ երեսաց, ձեռաց և ոտից». Վարդան, Մեկնութիւն Ելից. — «վեցերորդ հարուած էր կեղն և խաղաւարտն, զի քերթեղէր զմորթն, և խաղաւարտն մորմոքէր զմարմինս նոցա». այս վկայութիւնս կը գտնուի Ստեփանոսի Կամենիցացւոյ բառարանին մէջ: — «Հրց. Պաղպաջն (այսինքն՝ Զի՞նչ է պաղպաջն): Պտս. Սպիտակագոյն քերթեղոտած, ոչ հաւասար բոլոր և ոչ երկայն, կունճկընջոտ». Վանական վարդապետ, Հարցմունք:

Քերթեղ բառի նշանակութիւնը արդէն ուղղած էի Գաղղիերէն-Հայերէն Բառարանիս Ցայտարարութեան մէջ: Գերապատիւ Վահան վարդապետ Բաստամեան, վանահայր Ս. Գայիանեան վանից, որ կարդացեր էր իմ Ցայտարարութիւնս Տփխիսու Մշակ լրագրին մէջ, ուրախակցութեան ազնիւ նամակ մը գրեց ինձ 1879 յունիս 29 թըւականաւ, յորում կ՚ըսէ. «իմ անկեղծ համակրութիւնս յայտնելուց յետոյ՝ աւելորդ չեմ համարում հաղորդել Ձեզ և մի փոքրիկ տեղեկութիւն, որ գուցէ հետաքրքրողական լինի Ձեզ համար: Ձեր Ցայտարարութեան մէջ յիշած էք ի մէջի այլոց և Քերթեղ բառը, որ նշանակում է, որպէս Դուք բացատրում էք, մի տեսակ վէրք կամ կեղ

երեսի, գլխի, և այլն։ Այդ բացատրութիւնը շատ ուղիղ է և ճիշդ, վասն զի ճերճեշ բառը մինչեւ այժմ գործածվում է Տփխիսի Հայերի և մանաւանդ Վրացիների մէջ նոյն նշանակութեամբ, հասկանալով աւելի այն սպիտակ և չոր թեփը կամ բարակ կաշին, որ պոկվում է երեսից մանր մէրքերից յետոյ և մանաւանդ արեգակի այրածից յետոյ. որը օրինակ ասում են. «Արեգակից երեսս ճերճեշ է ըրնել, երեսիցս ճերճեշ է վեր կենում» և այլն։ Իսկ Վրացիք բառի վերջը աւելացնում են մի ի, ճերճեշի, և գործածում են նոյն մտքով, որպէս և Հայերը։

---

# ՑԱՒԵԼՈՒԱԾ

Այգոտղան ծաղիկ. էջ 3։ — Մխիթար Գօշի վկայութենէն գիտէինք միայն որ Այգոտղան լեռնական ծաղիկ մ'է. բայց Դաւիթ Սալաձորեցի սարկաւագն իւր Ծաղկանց Տաղին մէջ, (զոր հաղորդեց ինծ ազնուութեամբ Հ. Սահակեան Վ. Եազըճեան,) կը սորվեցընէ մեզի որ Այգոտղան ծաղիկն գեղեցիկ կապոյտ գունով է եւ սակաւահոտ.

«Ան ուբեան ծաղիկ մի կայ,
Խակի վար չի գար լեռներուն,
Վառ կապուտ է, հոտն է սակաւ,
Ի սահմանդ եղեր է խընկոտուն (?)».

յօրինակին գրեալ էր մի բառ Անուբեան, բայց յայտնի վրիպակ է, վասն զի նոյն Տաղին մէջ կ'ըսուի ուրիշ երեք տեղ. «Այն պայծառ ծաղիկն որ կայ». — «Այն սուտամբար ծաղիկն որ կայ». — «Այն համասփիւռ ծաղիկն որ կայ»։

Ընդ բնաւ. էջ 27–28։ — Անհատական վեցերորդ վկայութիւն մի եզակի ընդ բնաւ-ի յՈսկեբերանի Եփեսացւոց Թղթոյն մեկնութենէն, Ը. էջ 765. «Մանաւանդ թէ ընդ բնաւ իսկ տարածեցան արքունի հրովարտակօքն, եւ փարատեցին զխաւարն որ ընդ համօր տարածեալ մածեալ կայր»։ Թէ՛ այս եւ թէ՛ միւս հինգ վկայութեանց մէջ, զորս յիշած եմ գրուածոյս 28 երեսը, ընդ բնաւ կը նշանակէ՝ ընդ ամենայն տեղիս, գղ. Partout. բայց ընդ բնաւ, միշտ եզակի, կը նշանակէ եւս՝ ընդ ամենայն, ամէնը մէկէն, բոլոր բոլոր, գղ. En tout. անհատական երեք վկայութիւնք այս նշանակութեան. «Ընդ ամենայն քառասուն եւ երեք ողոմպիադք եւ ամք երկու, եւ ընդ բնաւ ամք հարիւր եօթանասուն եւ չորք». Եւս. Քրոնիկոն, Հ. Ա. էջ 337. — «Էին թուով ընդ բնաւ չորեքհարիւր այր». Ղ. Փարպեցի, Պատմ. էջ 371. — «Եւ այլ թուով արք՝ որք ի յազատաց եւ որ իւր իսկ ի Մամիկոնէից տանէն, ընդ բնաւ որպէս թէ քառասնիւք կամ նուազիւք եւս». անդ. էջ 465։

Հ. Արսէն Բագրատունի իւր գրուածոց եւ թարգմանութեանց մէջ ուրեք ուրեք կը գործածէ ընդ բնաւ, օրինակ իմն ի թարգմանութեան Պոսիւէի դամբանականին ի Մարիամ Թերեզա. «Եւ գայլխականն արութիւն ընդ բնաւ տարեալ ածէ զահ եւ զերկիւղ

անուամբն Լուդովիկոսի» · էջ 92 · բնագրին կ՚ըսէ · «Et la hardiesse française porte partout la terreur avec le nom de Louis ·» Անշուշտ Յազդատունին կը յենու ի ծանօթ վկայութիւնն Եզնըկայ: «Ընդ հանուր աշխարհն, եւ ընդ բնաւս սլանան» · բայց ըստ իս ըն-դօրինակութեան սխալ է ընդ բնաւս, յաջորդ սլանան բայի առաջին գիրն « անմտադրութեամբ կրկնուած ըլլալով ընդ բնաւի ծայրը: Եթէ օրէն էր ըսել ընդ բնաւս, ինչո՞ւ Ոսկեբերանի եւ Եւսեբեայ Քրոնիկոնին ոսկեղինիկ Թարգմանութեանց մէջ վեց անգամ գրեալ կը տեսնենք ընդ բնաւ, եւ ոչ մի անգամ ընդ բնաւս: Եթէ ոք ի հայագիտաց հանդիպած է ընտիր նախնեաց ուրիշ մատենագրու-թեանց մէջ յոգնակի ընդ բնաւսի, եւ եթէ չէ հանդիպած՝ հա-մայն եւ այնպէս ուղիղ կը համարի ըսել յոգնականօրէն ընդ բնաւս, ինչպէս նաեւ ընդ հանուրս, (զոր այսօր կը գործածեն ժամանակա-կից գրաբարողք), կը խնդրեմ որ հաղորդէ ինձ իւր կարծիքը եւ փարատէ իմ տարակուսանքս:

երեսի, գլխի, եւայլն: Այդ բացատրութիւնը շատ ուղիղ է և ճիշդ, վասն զի թէրթէշ բառը մինչեւ այժմ գործածվում է Տփխիսի Հայերի և մանաւանդ Վրացիների մէջ նոյն նշանակութեամբ, հասկանալով աւելի այն սպիտակ և չոր թեփը կամ բարակ կաշին, որ պոկվում է երեսից մանր վէրքերից յետոյ և մանաւանդ արեգակի այրածից յետոյ. զոր օրինակ ասում են. «Արեգակից երեսս թէրթէշ է բռնել, երեսիցս թէրթէշ է վեր կենում» եւայլն: Իսկ Վրացիք բառի վերջը աւելացնում են մի ի, թէրթէշի, և գործածում են նոյն մտքով, որպէս և Հայերը»:

# ՑԱՒԵԼՈՒԱԾ

Աստուածեան ծաղիկ. էջ 5։ — Մխիթար Գոշի վկայութեններն գիտէինք միայն որ Աստուածեան լեռնական ծաղիկ մ'է. բայց Դաւիթ Սալաձորեցի սարկաւագն իւր Ծաղկանց Տաղին մէջ, (զոր հաղորդեց ինձ ազնուութեամբ Հ. Ստեփաննոս Վ. Ճաղըճեան,) կը սորվեցընէ մեզի որ Աստուածեան ծաղիկն գեղեցիկ կապոյտ գունով է եւ անուշահոտ.

«Ան ուքօսան ծաղիկ մի կայ,
Խոկի վար չի գար լեռներուն,
Վառ կապուտ է, հոտն է սակաւ,
Ի սահմանդ եղեր է խնկերուն (?)».

յօրինակին գրեալ էր մի բառ Անուքօսան, բայց յայտնի վրիպակ է, վասն զի նոյն Տաղին մէջ կ'ըսուի ուրիշ երեք տեղ. «Այն պատուական ծաղիկն որ կայ». — «Այն սուսամբար ծաղիկն որ կայ». — «Այն համասփիւռ ծաղիկն որ կայ»։

Ընդ բնաւ. էջ 27–28։ — Ահաւասիկ վեցերորդ վկայութիւն մի եզակի ընդ բնաւ-ի յՈսկեբերանի Եփեսացւոց Թղթոյն մեկնութենէն, Ը. էջ 765. «Մանաւանդ թէ ընդ բնաւ իսկ տարածեցան արքունի հրովարտակօքն, եւ փարատեցին զխաւարն որ ընդ համնուր տարածեալ մածեալ կայր»։ Թէ այս եւ թէ միւս հինգ վկայութեանց մէջ, զորս յիշած եմ գրուածոյս 28 երեսը, ընդ բնաւ կը նշանակէ՝ ընդ ամենայն տեղիս, գղ. Partout. բայց ընդ բնաւ, միշտ եզակի, կը նշանակէ եւս՝ ընդ ամենայն, ամէնը մէկէն, բոլոր բոլոր, գղ. En tout. Ահաւասիկ երեք վկայութիւնք այս նշանակութեան. «Ընդ ամենայն քառասուն եւ երեք ողոմպիադք եւ ամք երկու, եւ ընդ բնաւ ամք հարիւր եօթանասուն եւ չորք». Եւս. Քրոնիկոն, Հ. Ա. էջ 557. — «Էին թուով ընդ բնաւ չորեքհարիւր այր». Ղ. Փարպեցի, Պատմ. էջ 571. — «Եւ այլ թուով արք՝ որք ի յազատաց եւ որ իւր իսկ ի Մամիկոնէից տանէն, ընդ բնաւ որպէս թէ քառասնիւք կամ նուազիւք եւս». անդ. էջ 465։

Հ. Արսէն Բագրատունի իւր գրուածոց եւ թարգմանութեանց մէջ ուրեք ուրեք կը գործածէ ընդ բնաւ, օրինակ իմն ի թարգմանութեան Գոսիւէի դամբանականին ի Մարիամ Թերեզա. «Եւ զայլխականն արութիւն ընդ բնաւ տարեալ ածէ զահ եւ զերկիւղ

անուանքն Լուդովիկոսի» . էջ 92 . բնագիրն կ'ըսէ . «Et la hardiesse française porte partout la terreur avec le nom de Louis . » Անշուշտ Բագրատունին կը յենու ի ծանօթ վկայութիւնն Եզնըկայ. «Ընդ հանուր արշաւելին, եւ ընդ բնաւս սլանան». բայց ըստ իս ընդօրինակութեան սխալ է ընդ բնաւս, յաջորդ սլանան բայի առաջին գիրն « անմտադրութեամբ կրկնուած ըլլալով ընդ բնաւի ծայրը: Եթէ օրէն էր ըսել ընդ բնաւս, ինչպէս Ոսկեբերանի եւ Եւսեբեայ Քրոնիկոնին ոսկեղինիկ թարգմանութեանց մէջ վեց անգամ գրեալ կը տեսնենք ընդ բնաւ, եւ ոչ մի անգամ ընդ բնաւս: Եթէ ոք ի հայագիտաց հանդիպած է ընտիր նախնեաց ուրիշ մատենագրութեանց մէջ յոգնակի ընդ բնաւսի, եւ եթէ չէ հանդիպած՝ համայն եւ այնպէս ուղիղ կը համարի ըսել յոգնականօրէն ընդ բնաւս, ինչպէս նաեւ ընդ հանուրս, (զոր սակայն կը գործածեն ժամանակակից գրաբարողք), կը խնդրեմ որ հաղորդէ ինձ իւր կարծիքը եւ փարատէ իմ տարակուսանքս:



